ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԽԴ.

# ԵՐԵՄԻԱ ՉԷԼԷՊԻԻ ՔԷՕՄԻՒՐՃԵԱՆ

# ՍՏԱՄՊՕԼՈՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

---

ՀՐԱՏԱՐԱԿԵՑ ԵՒ ԾԱՆՕԹԱԳՐԵՑ

**ՏՕՔԹ. ՎԱՀՐԱՄ Յ. ԹՈՐԳՈՄԵԱՆ**

Ի ԲԺՇԿԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԷՆ
ՓԱՐԻԶԻ

ՀԱՏՈՐ Գ.



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1938

ԵՐԵՄԻԱ ՉԷԼԷՊԻԻ

ՔԷՕՄԻՒՐՃԵԱՆ

# ՍՏԱՄՊՕԼՈՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

---

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

ՃԽԳ.

# ԵՐԵՄԻԱ ՉԷԼԷՊԻԻ

# ՔԷՕՄԻՒՐՃԵԱՆ

# ՍՏԱՄՊՕԼՈՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ՀԱՏՈՐ Գ.



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1938





ԵՐԵՄԻԱ ՉԷԼԷՊԻԻ

ՔԷՕՄԻՒՐՃԵԱՆ

# ՍՏԱՄՊՕԼՈՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

---

ՀՐԱՏԱՐԱԿԵՑ ԵՒ ԾԱ՛ՆՕԹԱԳՐԵՑ

**ՏՕՔԹ. ՎԱՀՐԱՄ Յ. ԹՈՐԳՈՄԵԱՆ**
Ի ԲԺՇԿԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԷՆ
ՓԱՐԻԶԻ

## ՀԱՏՈՐ Գ.



**ՎԻԵՆՆԱ**
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1938





ԱՆՄՈՌԱՑ ՅԻՇԱՏԱԿԻՆ

ԻՐԵՆՑ ՍԻՐԱՍՈՒՆ ԶԱՒԱԿՆԵՐՈՒՆ

ՎԱՂԱՄԵՌԻԿ

ԱՐԱՄ-ԹՈՐԳՈՄ ԹՈՐԳՈՄԵԱՆԻ

† 9 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1933

ԵՒ

ՍՈՒՐԷՆ-ՓԱՐՈՅՐ ԹՈՐԳՈՄԵԱՆԻ

† 24 ՕԳՈՍՏՈՍ 1937

ԿԸ ՆՈՒԻՐԵՆ՝

ՄՐՏԱԿՆՂԵՔ ՑԱՒԻ ՀՈԾ ԱՐՑՈՒՆՔՆԵՐՈՎ

ՏԻԿԻՆ ԿԱԼԻՆԻԿ

ԵՒ

ՏՕՔԹ. ՎԱՀՐԱՄ ԹՈՐԳՈՄԵԱՆ

## ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

Քառորդ Դար մը եւ աւելի ժամանակ անցած է, երբ առաջին անգամ 1909ին սկսայ՝ «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ հրատարակել Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանի «Ստամպօլոյ Պատմութիւն»ը եւ գաղափարն ունեցայ՝ անոր մասին պատրաստել Ծանօթագրութիւններու շարք մը, որոնք վերջ կը գտնեն ահա այսօր, թէեւ՝ բնա՛ւ եւ բնաւ չէի կարծեր, թէ առաջադրած ծրագրէս աւելի ընդարձակութիւն ունենային անոնք՝ երեք հատոր կազմելու աստիճան:

1933ին աշխատութեանս երկրորդ մասը լրացնելէս յետոյ, որոշած էի ա՛յլ եւս չզբաղիլ Վոսփորի Ասիական եզերքին Ծանօթագրութիւններովը, զի ժամանակս չէր ներեր, եւ այդ մասին հաւաքած տեղեկութիւններուս ծրարիկը չունէի քովս· սակայն՝ նոյն տարին անդրանիկ զաւկիս յեղակարծ մահուան ինձ պատճառած դառնակսկիծ ցաւը, չգիտեմ ի՞նչպէս, սրտիս մէջ արծարծեց յա՛նկարծ, պարտականութեան մէջ չթերանալու ջերմ իղձը եւ ստիպեց զիս խոնարհիլ սուգիս առաջ ու աշխատիլ· ուստի Կ· Պոլիս թողած հաւաքա-

ծոյներս, շնորհիւ անզուգական Եղբօրս՝ Գէորգ Թորգոմեանի ջանքերուն հասան ձեռքս եւ ես անմիջապէս լծուեցայ գործի։

* * *

«Ստամպօլոյ Պատմութիւն»ին հետ՝ Ծանօթագրութիւններուս առաջին մասը երբ 1913ին առանձին Հատորով վիճնեա հրապարակ ելաւ, ողջ էր տակաւին Մօրեղբայրս՝ Նշան Ղուկասեան, որ կը սիրէր կարդալ զայն եւ խորհուրդ կու տար ինձ՝ շարունակել միւս մասերը․ ո՞վ կրնար գուշակել այն ատեն՝ թէ 20 տարի յետոյ այդ Ծանօթագրութիւններուս Բ․ Հատորը իւր յիշատակին նուիրել նշանակուած է եղեր ինձ․ եւ ո՞վ կրնար նաեւ երեւակայել, թէ այս Գ․ Հատորս ալ՝ աւա՜ղ, ինձ ճակատագրուած է եղեր ձօնել անմոռաց յիշատակին իմ սիրասուն, անգին զաւկիս՝ «Արամիս», բարձր կրթութեամբ դաստիարակուած ու լաւագոյն ձիրքերով օժտուած այդ կայտառ, առողջ, ուսումնական զաւկիս, որ փառքս էր, պարծանքս եւ յոյսս, եւ որ իւր 42րդ գարունին մէջ ասուպի մը պէս կ'իյնար, կը մարէր…

Ո՜հ, ո՜րչափ անհմանալի է ու խորհրդաւոր «կեանք» կոչուածը, ո՜րչափ յղի է այն՝ անակնկալ պատահարներով ու դէպքերով…

* * *

Թէեւ խոստացած էի էջմիածնին եւ Երուսաղէմ գտնուած ձեռագիրներու եւ իմ ունեցածիս տարբերութիւնները դնել հատորիս վերջը, բայց ատոնք վերստին աչքէ անցունելով տեսայ, որ կարեւոր բաներ մը չեն ներկայացուներ: Միակ ուշադրութեան արժանին կէտն էր, ինչպէս նշանակած եմ հատոր Բ., էջ 476, Ղալաթիոյ եկեղեցւոյ մասին իմ ձեռագիրիս մէջ գտնուած «յանուն նախնական» ընթերցուածը, որ միւսներուն մէջ է. «յԱնւոյ նախնական». այս իսկ մեծ լուսաբանութիւն մ'է Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ հաստատման համար. որմէ առաջ եղած է հոն Ս. Սարգիս անուն եկեղեցի մը, ինչպէս գրած եմ:

Ինչպէս ընթերցողներս կը տեսնեն, այս Հատորը՝ համաձայն Երեմիա Չէլէպիի շրջագայութեան, կը պարունակէ Վոսփորի Ասիական եզերքին մէկ ծայրէն միւսը, ճամբու վրայ գտնուած Հայ-ազգային յիշատակները, բոլորն ալ՝ գրեթէ մոռցուած, թաղուած, չըսեմ կորած:

Ասոնց ամփոփումը ըրած պահուս, ամենամեծ պակասութիւնը գործած կ'ըլլամ, եթէ իմ երախտագիտական անհուն շնորհակալութիւններս չփութամ հրապարակաւ յայտնել Ս. Երուսաղէմի արժանընտիր Լուսարարապետ եւ ներհուն բանասէր, Գերապատիւ Տէր Մեսրոպ Եպիսկոպոս Նշանեանի, որ, ինչպէս երբեմն, այս անգամ ալ հանեցաւ Ս. Յակոբեանց վանքին մէջ պահուած Երեմիա Չէլէ-

պիի ինքնագիր Օրագրութենէն[1] նորանոր տեղեկութիւններ հաղորդել ինձ, տրամադրելով նաեւ անոր երկու անտիպ ձեռագիր նամակները՝ տողած իր վաղամեռիկ որդւոյն՝ Գրիգոր վարդապետի մահուանը վրայ, նամակներ, զորս կը ներկայացնեմ քիչ անդին, եւ որոնցմով՝ Մեսրոպ Սրբազան գերազնիւ զգացումն ունեցած էր, որդեկորոյս Երեմիայի խօսքերովը՝ որդեկորոյս բժշկիս սրտի կսկիծը եւ մորմոքը պահ մը մեղմել···

Նշանեան Մեսրոպ Սրբազանին հետ պարտաւոր եմ չմոռնալ երբեք իմ Գերայարգելի բարեկամս, բազմահմուտ եւ բազմավաստակ բանասէր Հ· Ներսէս Վ· Ակինեանը, ու երախտապարտ զգացումներս արտայայտել հոս իրեն, որ՝ ո՛չ միայն մեծ հոգածութիւն ու զոհողութիւն ունեցաւ գործիս տպագրութեանը համար, այլ եւ՝ նորագոյն տեղեկութիւններով պատրաստեց Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանի լիակատար մէկ կենսագրութիւնը, անոր առաջին էջերուն վրայ դրոշմելով ողբացեալ հոգեհատոր զաւկիս լուսանկարն ու անունը:

Հ· Ներսէս Ակինեանի այդ նորընծայ Հատորին *ճօնիկը*, ես կը համարիմ վաղամեռ որդւոյս խօսուն Արձանը, որ «*Ոտ ունի կը քալէ աշխարհէ աշխարհ, չի նմանիր քարեղէն արձանին, որ*

[1] Նշանեան Մեսրոպ Արքեպիսկոպոս այժմ մամուլի յանձնած է Երեմիայի Օրագրութիւնը, որով Հայ բանասիրութեան հետաքրքրական էջեր լոյս կ'ընծայէ:

անշարժ իր տեղ մնում է»․ ինչպէս գրած է ինձ էջմիածնէն 1904 Նոյեմբեր 6ին, իր մէկ նամակին մէջ՝ մեծանուն Խրիմեան Հայրիկ, կաթողիկոսն ամենայն Հայոց։

* * *

Եւ ո՞վ կրնար գուշակել իմ սեւ ճակատագիրս, թէ սոյն Յառաջաբանս արտօրալից մելանով մը ստորագրելէս յետոյ, պիտի կորսնցնեմ եղեր կրտսեր զաւակս՝ «Սուրէնս», մեր միակ մխիթարութիւնը, որ իր Եղբօրմէն չորս տարւով փոքր, սա չորս տարի վերջը կ'երթար միանալ անոր։

Միրազօղ Եղբայրներ էին, եղան համասիրտ հողին գիրկը․ երկուքն ալ քառասուն երկու զարուններ միայն ունեցան։

Սրտի կատարեալ գոհունակութիւն ունիմ, որ վերջապէս յաջողեցայ ի կատար ածել աշխատութիւնս՝ թէեւ ուշ, բայց չէ՞ որ յանախ կը յեղյեղենք՝ «Լաւ է անագան, քան ո՛չ երբեք» նշանաւոր խօսքը։

Անշուշտ կատարեալ գործ մը չէ այս ալ, զոր հրապարակ կը հանեմ, այլ՝ կը ներկայացնեմ զայն իր նախորդներուն հետ՝ իբրեւ ուղեցոյց ամէն անոնց, որոնք պիտի ուզէին կ․ Պոլսոյ Հայ գաղութին պատմութիւնը ամբողջացնել, անոր դեռ թաքուն մնացած կողմերը լուսաբանելով։

Իմ խորին եւ անկեղծ շնորհակալութիւններս կը խնդրեմ որ ընդունին այն մեծայարգ

Գրիչները, որոնք Կ. Պոլսոյ Հայ Եկեղեցիներուն մէկ քանի հատին՝ Յոբելինական Դարադարձներու առթիւ շահեկան աշխատութիւններ [2] պատրաստած ժամանակնին, հանած էին թղթատել եւ կարդալ իմ ալ աշխատութիւնը։

Նիւթական եւ բարոյական շա՛տ մեծ գոհողութիւններ պատճառած են ինծ այս Ծանօթագրութիւններու ժողովածոյս, ինչպէս կը վկայեն այս մասին՝ նշանակած բազմաթիւ Յիշատակարաններս, բայց առնք ես լիուլի փոխարինուած ու մեծապէս վարձատրուած պիտի նկատեմ, եթէ ուրիշ աշխատասէր-գրասէրներու դոյզն ծառայութիւն մը կարենան մատուցանել։

---

[2] Առնք են՝

1. «Յիշատակարան Հնգեակ Յոբելեանի, Ս. Խաչ Եկեղեցւոյ Սկիւտարու 1676—1926»։ Գրեց՝ Հմայեակ Քահանայ Էքսէրճեան։ Կ. Պոլիս, Տպ. Սեթեան, 1927։

2. «Երեքդարեան Պատմ. Ս. Հրեշտակապետ Եկեղեցւոյ Պալաթու 1627—1931»։ Գրեց՝ Մելքոն-Աստուր։ Կ. Պոլիս, Տպ. Կիւթէմպէրկ, 1931։

3. «Յիշատակարան 75ամեայ Յոբելեանի Ս. Յարութիւն Եկեղեցւոյ Գում-Գաբուի դրսի 1855—1930»։ Պատրաստեց՝ Յակոբ Վարժապետեան։ Կ. Պոլիս, Տպ. Սեթեան, 1931։

4. «Յիշատակարան Հարիւրամեայ Յոբելեանի Խասգիւղի Ս. Ստեփանոս Եկեղեցւոյ 1831—1931»։ Գրեց՝ Յակոբ Վարժապետեան։ Կ. Պոլիս, Տպ. Սեթեան, 1931։

5. «Հարիւրքսաննեւհինգամեայ Յոբելեան Բերայի Ս. Երրորդութիւն Եկեղեցւոյ 1807—1932»։ Գրեց՝ Մ. Հանէսեան, Կ. Պոլիս, 1932։

6. «Յիշատակարան Հարիւրամեայ Յոբելեանի Ս. Նիկողոս Եկեղեցւոյ Թօփ-Գաբուի 1832—1932»։ Կ. Պոլիս 1932։

7. «Պատմական Յիշատակարան Երեւման Ս. Խաչ Եկեղեցւոյ Գուրու-Չէշմէի, Հարիւրամեայ Յոբելեանի առթիւ 1834—1934»։ Կ. Պոլիս 1934։

Շնորհակալութիւններս Վիեննական պատուական Մխիթարեան Միաբանութեան եւ այն Հայ թերթերուն ու ազնիւ բարեկամներուս, որոնք հաճեցան քաջալեր ըլլալ ինծ ու Երկրորդ Հատորիս հրատարակութեան առթիւ ուղղել գնահատութեան գիրեր։

Բարիզ։

ՏՕՔԹ. ՎԱՀՐԱՄ Յ. ԹՈՐԳՈՄԵԱՆ

---



## ԳՆԱՀԱՏԱԿԱՆՆԵՐ

### Բ. ՀԱՏՈՐԻ ԱՌԻԹՈՎ

*Դոկտ. Վ. Թորգոմեանի այս աշխատասիրութեան Ա. հատորը լոյս տեսած էր 1913ին, արտատպուած Հանդէս Ամսօրեայէն. որ կը պարունակէր իր մէջ Երեմիա Չէլէպիի Ստամպօլոյ պատմութեան բնագիրը, կենսագրութիւնը եւ Ա.—Գ. գլուխներու ծանօթագրութիւնքը: Բ. հատորս շարունակութիւնն է ծանօթագրութիւններուն, ուր նկատի կ'առնուի Բոսփորի Եւրոպական եզերքը միայն, «Ասիական եզերքի վերաբերեալ մասը վերապահելով առանձին հատորի մը» (էջ 714): Այս Բ. հատորն ալ նախնաբար լոյս տեսած է «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ, նոր են միայն քանի մը յաւելուածներ (էջ 804—831) եւ Յատուկ անուանց ցանկը Ա. եւ Բ. հատորներու համար (էջ 833—860):*

*Գործին նպատակն եւ աշխատութեան ծրագիրը ծանօթ է արդէն ուսումնաթերթիս ընթերցողներուն: Առաջնորդ առած իրեն Երեմիա Չէլէպիի նկարագրութիւնը կ'ընթանայ Թորգոմեան անոր հետքերով նկատելու Սուլթաններու մայրաքաղաքին եւ արուարձաններու հայաբնակ վայրերն եւ հայկական յուշարձանները: Թէպէտ Երեմիայի քայլե-*

րուն կը հետեւի, բայց աւելի ընդարձակ է իր պատմական հորիզոնը. կը նայի յուշակերտներուն աւելի բարձր կէտէ մը, կը նկատէ հայ կեանքին անցեալը այն վայրերու վրայ քաներորդ դարու բարձունքէն:

Թէպէտ «Ծանօթագրութիւնք» խորագիրը կը կրեն այս նկատողութիւնները, բայց իսկականին մէջ կը ներկայացնեն Կ. Պոլսոյ եւ շրջակայից հայ մշակոյթի պատմութիւնը:

Բժշկի բազմազբաղ կեանքէն գողցուած ժամերու արդիւնքն են անոնք: Մենք կը հիանանք ոչ միայն ծանօթութեանց բազմատեսակութեան եւ մէն մի կէտին մանրազնին նկարագրութեան վրայ, այլ եւ հեղինակին աշխատասիրութեան եւ ծանօթութիւններ հաւաքելու գեղեցիկ մոլութեան վրայ: Իբրեւ բնիկ Պոլսեցի սիրած է հեղինակը շրջագայիլ հայրենիքի հնավայրերը եւ գրի առնել մէն մի քարի եւ շինուածքի արձանագրութիւնները, վերհանել հայ մշակոյթի պատկառելի դէմքերը: Ուր լուած են քարեայ յիշատակարանները, դիմած է գրաւոր աւանդութեան: Գիտէ շահագործել իր նպատակին համար թէ ձեռագիր եւ թէ տպագիր յիշատակարաններ:

Միայն հնասիրութիւնն չէ որ կը մղէ զինքը գործի, այլ եւ անչափ հայրենասէր է, կ՚ապրի նիւթին մէջ, կը շահագրգռուի պատմական անցեալով, եւ յաճախ զգայուն հայն է, որ կը խօսի իր տողերուն տակ:

Եթէ առ հասարակ ամէնուն համար հետաքրքրական են ծանօթագրութիւններս,

բայց մանաւորապէս պոլսահայուն համար ուրախութիւն պիտի ըլլայ ընկերանալ մտքով Թորգոմեանի պտոյտին թաղէ թաղ, հիմնարկութենէ հիմնարկութիւն եւ լսել անոր պատմական տեղեկութիւնները հայ կեանքի անցեալի մասին:

Աւելի քան քսան տարի ունի իր ետեւը աշխատութիւնս. յընթացս տպագրութեան Ա. եւ Բ. հատորներուն ինկած են հեղինակին ձեռքը նոր նիւթեր, որոնք հարկ դրած են իր վրայ ուղղել նախընթացներն եւ յաւելուածներով ճոխացնել: Այսպիսի ուղղութիւն եւ յաւելում կրած է մանաւորապէս Երեմիայի կենսագրութիւնը: Ընթերցողը աչքի առաջ պէտք է ունենայ միշտ Ա. եւ Բ. հատորները ի մասին:

Հ. Ն. ԱԿԻՆԵԱՆ

Հանդէս Ամսօրեայ,
1933, էջ 632—633:

Քսան տարի առաջ էր որ Տօքթ. Վ. Թորգոմեան 17րդ դարու նշանաւոր գրագէտ Քէօմիւրճեան Երեմիա Չէլէպիի Ստամպօլոյ Պատմութիւնի ձեռագիրը ձեռք անցուցած ըլլալով հրատարակեց Վիեննայի Մխիթարեան վանքի միջոցաւ աւելցնելով իր կողմէն կարգ մը շահեկան ծանօթութիւններ Պոլսահայ կեանքի մասին:

Այս ծանօթագրութիւններու առաջին հատորը հազիւ լոյս տեսած էր երբ ծանօթ դէպքեր աշխարհը տակնուվրայ ընելով մեր բարեկամ պատուական բժիշկն ալ ընդհատել

ստիպուեցաւ իր աշխատութիւնը եւ ահա մասնաւոր հատորով մը, Ծանօթագրութիւններու շարունակութիւնը այժմ ի լոյս կը հանէ Վիեննայի Մխիթարեան Միաբանութեան շնորհիւ:

«Հանդէս Ամսօրեայ»ի մէջ արդէն կարդացած էի իր գրածները, որոնք առանձին հատորի մը մէջ կ'երեւան այսօր երբ իր անդրանիկ զաւակը հողին կը յանձնէր: Մեր խորին ցաւակցութիւնները յայտնելով յարգելի բժշկապետին, կը սիրեմ յուսալ թէ այս հատորը մխիթարութիւն մը կ'ըլլայ Տէր եւ Տիկին Տօքթ. Վ. Թորգոմեանի վշտակոծ սրտերուն, որովհետեւ հայ Ազգ. մատենագրութեան մէջ կարեւոր տեղ մը ունենալու նշանակուած է բժշկին այս գործը որ ընդարձակ աշխատութիւն մըն է: Ան կը պարունակէ Պոլսահայ կեանքի պատմութիւնը իր բոլոր կարեւոր անցուդարձերով: Կը սկսի Թօփ-Գաբու եւ Պալաթի թաղերէն, կ'անցնի Հասքէօյ, Գասըմ-Բաշա եւ Ղալաթիա որուն հին ու նոր պատմութիւնը շատ խղճամիտ ու մանրամասն պրպտումներով գրի առած է:

Առաջին զպրոցը կամ ճիշդը ըսելու համար զպրոց կոչուած բանին սաղմը, զոր Հայը ունեցած է Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչի հովանիին տակ, կը պարտի Մխիթարեան կրկնակ միաբանութեանց հիմնադիր Սեբաստացի Մխիթար Վարդապետին: Այս մեծագործ եկեղեցականը երբ 1700ին երկրորդ անգամ ըլլալով Ղալաթիոյ եկեղեցիին քա-

բողէջ կը կարգուէր, այնտեղ իր շուրջը աշակերտներ հաւաքելով կը սկսէր դասեր տալ, մինչեւ անգամ անոնց ուսմանը հարկաւոր գիրքեր տպագրել. դժբախտաբար երկար չի տեւեր այս կարեւոր ձեռնարկը, կրօնային վէճեր եւ հակառակութիւններ խափան կ՚ըլլան անոր, այնպիսի բուռն սաստկութեամբ, որ տարի մը չանցած Մխիթար կը ստիպուի իր աշակերտներուն հետ Բերա մասնաւոր տուն մը փոխադրուիլ: Ասկէ կը հետեւի՝ թէ ուր որ Հայ եկեղեցի մը կանգնած է հոն սպասաւորող քահանան կամ վարդապետը իրեն սուրբ պարտականութիւն սեպած է, տեղւոյն մանուկները իր քով ժողվել եւ անոնց կարդալ-գրել սորվեցնել: Երեմիա Չէլէպիի ժամանակ Բերայի մէջ Հայ անունը կրող ոեւէ հաստատութիւն մը չի կար, մինչդեռ հիմա անթիւ են անոնք ինչպէս կը կարդանք հատորին մէջ: Մանրամասն տեղեկութիւններ կու տայ Բանկալթիի Ազգ. Գերեզմանոցին վրայ, կը յիշատակէ շատ մը թանկագին տապանագիրներ զորս մեր պատուական բժիշկը անձամբ քաղած է: Կը յիշատակէ Բերայի Ազգ. հաստատութիւնները եւ բոլոր բարեգործական ընկերութիւններն եւ Միութիւնները, որոնք այսօր դժբախտաբար գոյութիւն ունենալէ դադրած են տեղի տալով միայն Աղքատախնամ գործերուն:

Այս ծանօթագրութիւնները կը շարունակուին յետոյ Պէշիքթաշի, Օրթագիւղի եւ

Վոսբորի եւրոպական եզերքին վրայ գտնուած հայ եկեղեցիներու եւ դպրոցներու մասին շատ կարեւոր տեղեկութիւններ տալով։

Տոքթ. Վ. Թորգոմեան Պէօյիւք–Տէրէ եւ Սարը–Եարի վրայ գրելէ վերջ իր հատորը կը վերջացնէ խոստանալով Գ.րդ հատորի մը պահել Վոսբորի ասիական եզերքի ծանօթագրութիւնները։ Ամէն պարագայի մէջ խիստ շահեկան գիրք մըն է եւ արժանի ընթերցանութեան։ Բնաւ պէտք չեմ տեսներ Երեմիա Չէլէպիի մասին խօսիլ, քանի որ գիրքը արդէն ընդարձակ տեղեկութիւններ կու տայ այս մասին, բայց սա միայն ըսեմ թէ Երեմիա Չէլէպիի այս ձեռագիրը ընդօրինակած է իր եղբայրը նահատակ Տէր Կոմիտաս քահանան որ ինչպէս ծանօթ է քանի մը տարիներ առաջ Հռոմայ Պապին օրհնութիւններովը «երանութեան» արժանացաւ իբրեւ Հայ Սուրբ մը, Գօզմա Գարպօնիանօ = Կոմիտաս Քէօմիւրճեան անունով, որովհետեւ անոր գլխատումէն վերջ իր գերեզմանին վրայ հրաշքներ տեղի ունեցեր են եղեր... հոս փակագծի մէջ սա՛ ըսեմ որ Տէր Կոմիտասի գերեզմանը բանալ տրուած եւ անոր ոսկորները բժշկական քննութեան ենթարկուած են։ Այս մասին խիստ հետաքրքրական բժշկական գրութիւն մը ունիմ քովս, զոր յարմար առթիւ մը հրատարակութեան պիտի տամ։

Կը շնորհաւորենք մեր մեծայարգ եւ պատուական բժշկապետը իր այս նոր աշխատութեանը համար եւ կը սպասենք Գ.րդ հա–

տարի հրատարակութեանը որով ամբողջ Պոլսահայ կեանքի մտաւորական ելեւէջներու յիշատակարանը պիտի կազմէ[1] :

Փարիզ :

ՏՕՔԹ. ԱԼԼԱՀՎԷՐՏԻ ՈՐԴԻ

## «ՍՏԱՄՊՕԼՈՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ»

Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանի այս կարեւոր պատմութեան Բ. հատորը վերջապէս լոյս տեսաւ (Վիեննա 1932), շնորհիւ Տօքթ. Վ. Յ. Թորգոմեանի անխոնջ ջանքերուն ու ճոխ ծանօթագրութեանց, որոնք անհրաժեշտ էին այս տեսակ գործի մը համար: (Ա. հատորը՝ նոյն բանասէր բժշկապետին կողմէ հրատարակուած էր 1913ին, դարձեալ Վիեննայի մէջ:)

Բաբգէն Կաթողիկոսի «Յիշատակարան Պասմաճեան Գրիգոր Պատրիարքի» անուն եւ Մեսրոպ եպիսկ. Նշանեանի «Ժամանակագրութիւն Գրիգոր վարդապետին Կամախեցւոյ կամ Դարանեղցւոյ» վերնագիր գործերն, ինչպէս նաեւ Հ. Գրիգորիս Վ. Գալէմքեարեանի «Կենսագրութիւններ երկու հայ պատ-

---

[1] Ինձ հետ 1915ին աքսորի մեկնող՝ սիրելի արուեստակիցս ու վաղեմի բարեկամս (այժմ հանգուցեալ) Տօքթ. Տիգրան Ալլահվէրտիի որդին, Տօքթ. Կ. Ալլահվէրտի, որ ծանօթ է իր բժշկական եւ այլ շահեկան յօդուածներով եւ որ առաջինը եղած է աշխատութեանս գնահատող, թէեւ իր գրութիւնը քիչ մը ուշ հրատարակեց «Կոչնակ»:

ըխարքներու եւ տասն եպիսկոպոսներու» ու «Կենսագրութիւն Սարգիս Արքեպիսկոպոսի Սարաֆեան» տիտղոսը կրող երկու հրատարակութիւնները մեծապէս նպաստած են Կ. Պոլսոյ եւ Փոքր Ասիոյ Հայոց վերջին երեք դարերու պատմութեան:

Տոքթ. Թորգոմեան համբերութիւնն ունեցած է պրպտելու շատ մը հին թերթեր, գրքեր, ձեռագիրներ ու յիշատակարաններ, կազմելու համար այս թանկագին ծանօթագրութիւնները, որոնք կը բռնեն հոս՝ այս Բ. հատորին մէջ՝ 450 երեսներ: Ա. հատորը բռնած էր 400 երես:

Երեմիա Չէլէպիի այս երկասիրութեան նիւթն է, ինչպէս անունէն ալ կ՚երեւայ, Կ. Պոլսոյ հայ գաղութի պատմութիւնն ու մայրաքաղաքին եւ շրջակայից տեղագրութիւնը, զոր կատարած է հեղինակն ամենայն մանրամասնութեամբ ու հմտութեամբ, որոնց վրայ ծանօթագրութեանց ձեւով աւելցուցած է Տոքթ. Թորգոմեան Կ. Պոլսոյ հայ եկեղեցիներու, հայ դպրոցներու, հայ ընկերութիւններու, հայ պատրիարքներու եւ հայ երեւելի անձնաւորութիւններու պատմութիւնը, չմոռնալով հայ տպագրութիւններու եւ զանազան արձանագրութիւններու ընդօրինակութիւնը:

Ահա հոս է բուն արժէքն այս երկու լոյս տեսած հատորներու, որոնց համար սրտանց կը շնորհաւորեմ վաղեմի բարեկամս, եւ կը մաղթեմ խոստացուած Գ. հատորի երեւումը:

Այս հատորը նուիրուած է մեր քիմիաբանութեան սիրելի ուսուցչին՝ Պրոֆ. Նշան Ղուկասեանի անմոռանալի յիշատակին։

Կ. Յ. ԲԱՍՄԱՋԵԱՆ

Լուսարարապետ Սրբոց Աթոռոյն
Երուսաղէմի։

Երուսաղէմ, 9 Մարտ 1934։

Մեծայարգ Տօքթոր Վահրամ Յ. Թորգոմեան։

Մեծայարգ եւ Սիրելի բարեկամ.

Մեծադոյն հաճոյք պատճառեց ինծի ստացումը Ստամպօլոյ Պատմութեան Երկրորդ Մասին, որուն կը սպասէի անձկանօք եւ զոր չէի կրցած ձեռք բերել, հակառակ Վիեննայի Մխիթարեանց երկիցս ըրած ապսպրանքիս։

Մէկ շունչով կարդացի հատորը ծայրէ ի ծայր։ Բառ չեմ գտներ յայտնելու հիացումս Մեծայարգ բանասէրիդ, որ համբերատար ոգւով եւ մանրախոյզ քննութեամբ յաջողած էք այնքան հարուստ տեղեկութիւններով ճոխացնել Ստամպօլոյ Պատմութեան Ծանօթութիւնները, ու տալ կրցած էք տալ ընդարձակ պատմութիւնը Կ. Պոլսոյ Հայ գաղութին։

Մասնաւորապէս պարտք կը զգամ յայտնել խորին շնորհակալութիւն Հատորիդ մէջ Ձեր Գերազնութեան կողմէ ինծի ընծայուած

յոյժ համակրական տողերուն համար, զորս կը համարիմ աւելի ձեր սրտին ազնուութեան նշանակ, քան իմ գոյզն աշխատակցութեան գնահատանք:

Կը շնորհաւորեմ, Սիրելի Տօքթոր, Ձեր այն գեղեցիկ յաջողութիւնը, նոյն ատեն կը խորհիմ թէ որդեկորոյս Հօրդ վշտակոծ սրտին ուրախութիւն չպատճառեց Գիրքիդ հրատարակութիւնը, քանի որ, ինչպէս կը գրէք, Ձեր յաւէտ ողբացեալ սիրասուն եւ վաղամեռիկ զաւկին թաղման օրը անցաւ այն ձեռքերնիդ: Ո՜հ, ի՜նչ դժբախտ զուգադիպութիւն, երբ այն ինչ լոյս ընծայուած ձեր մտաւոր երկանց ծնունդը ձեռքերնիդ կը հասնէր, նոյն օրն իսկ Ձեր սրտին հատորը եւ հարազատ ծնունդը կը թռչէր Ձեր ձեռքէն ու առ յաւէտ կը փակէր աչքերը լոյսին:

Իմացայ ժամանակին սրտակեղեք գոյժը եւ կարի վշտակրեցայ եւ վշտակցեցայ ի հեռուստ վշտահար ծնողիդ: Այն ատեն գրիչս առաջ չգնաց սակայն, մխիթարական երկտող մը ուղղել, խորհելով թէ՝ թերեւս աւելի նորոգած կը լինիմ ձեր վէրքը եւ արծարծած՝ Ձեր հայրական սիրտը տոչորող կրակը: Բայց հիմայ քանի որ առիթը ներկայացաւ, նպատակայարմար կը սեպեմ յիշեցնել սգակիր բարեկամիդ՝ թէ Երեմիա Չէլէպի, որուն վրայ հիացողներէն առաջինն էք Դուք, ինք եւս Ձեզ նման դժբախտ հայր մը եղած է՝ կորսնցնելով իր անդրանիկածին զաւակը, Գրիգորիս վարդապետ Քէօմիւրճեան, երի–

*տասարդ հասակին մէջ: Այս առթիւ Չէլէպի իր բարեկամ երկու հոգեւորականներու, որոնց անունները անծանօթ կը մնան, գրած է զոյգ մը նամակներ: Ատոնց ընդօրինակութիւնը նամակիս հետ արժան համարեցայ ղրկել Ձեզ. կարդացէք զանոնք ուշիւ: Երեմիայի գրչէն ելած այդ զգայուն տողերը Ձեզ նման որդեկորոյս վշտահար հօր մը սրտին զգացումները կը ցոլացնեն. միեւնոյն ժամանակ երեւան կը բերեն հաւատքի գրահով զօտեպնդուած քրիստոնեան, որ, առանց սարսելու բախտին ամենադառն հարուածէն, գիտէ համակերպիլ Նախախնամութեան անհասանելի տնօրէնութեանց ու հպատակիլ Անոր Ամէնօրհնեալ կամքին:*

*Հոգեկան նոյն արիութիւնը եւ Սուրբ Հոգւոյն մխիթարութիւնը կը մաղթեմ Ձեզ եւ Ձերայնոց, Սիրելի Տօքթոր, ու կը մնամ ի բոլոր սրտէ*

*Ձեզ վշտակից*

ՄԵՍՐՈՊ ԵՊՍ. ՆՇԱՆԵԱՆ

*Բրիւքսէլ*, 25 *Հոկտ.* 1933:

*Ազնիւ եւ Սիրելի բարեկամ.*

*Ստացայ Երեմիա Չէլէպիի Բ. հատորն, որուն այնչափ անհամբերութեամբ կը սպասէիք. աւուր գործ է. ես չէի կարծեր թէ այդչափ ընդարձակած էք, եւ դեռ կը պատրաստուիք Գ. հատորը տալ:* «Ստամպօլոյ

Պատմութիւնը» Ձեր հմտալից եւ բովանդակալից ծանօթագրութիւններումն է, որ հասկնալի եւ հետեւաբար աւելի շահեկան կը դառնայ։ Դուք ոչ թէ «Ծանօթագրութիւններ», այլ այդ վերնագրի տակ Պոլսահայ կեանքի հին ու նոր պատմութիւնն էք գրեր, դիւրամատչելի ձեւով, որ մեծապէս գնահատելի է։ Շնորհակալ եմ նոյնպէս Ձեր սիրալիր մակագրութեան համար։

Յարգալից ողջոյններով

Ձերդ Անձնուէր

Ա. ՍԱՐՈՒԽԱՆ[1]

Բարիզ, 4 Նոյ. 1933։

Մեծայարգ Տօքթ. Վ. Թորգոմեան, Բարիզ։

Սիրելի Տօքթոր.

Անկեղծ հաճոյքով կը թղթատեմ ձեր շահեկան հրատարակութիւնը «Ստամպօլոյ Պատմութիւն» Երեմիա Չէլէպիի, զոր ազնուութիւնը ունեցած էք ինծի ղրկելու սրտիս խօսող գեղեցիկ ձօնով մը։

Կը խնդրեմ որ ընդունիք իմ սրտագին շնորհակալութեան հետ, իմ անկեղծ հիացումս ձեր անխոնջ աշխատութեանց համար,

[1] Գրչի Եղբայրս Հանդէս Ամսօրեայի մէջ եւ վաղեմի բարեկամս՝ Տիար Առաքել Սարուխան, որ Հեղինակ է պատմական խիստ արժէքաւոր աշխատութիւններու։

զոր միշտ ի սպաս դրած էք ազգին, որպէս անոր նուիրուած մեծարելի գիտնական մը։

Թո՛ղ ձեր վիրաւոր սիրտը այդ աշխատութեանց մէջ գտնէ սփոփը որուն պէտք ունի ձեր վշտահար հոգին, ապրելու համար եւ ապրեցնելու՝ ձեր կեանքին լոյսերովը՝ գրական ու գիտական գանձերը զոր ձեր հետախոյզ բանասէրի ջանքերովը մութին մէջէն կը հանէք։

Ձերդ անկեղծօրէն

Վ. ՄԱԼԷԶԵԱՆ[1]

ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆ[1] («Անահիտ», Հոկտ.–Դեկտ. 1933, էջ 80—81)։

Վիեննայի Մխիթարեանք հրատարակեր են Երկրորդ Հատորը Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանի «Պատմութիւն Ստամպօլոյ» աշխատասիրութեան հետաքրքրական գործին վրայ Տօքթ. Վահրամ Թորգոմեանի Ծանօթագրութեանց շարքին, որոնք երեւցան նախ «Հանդէս Ամսօրեայ»ին մէջ. Երեմիա Չէլէպին ԺԷ. դարու ամէնէն մեծարժէք հայ մատենագիրներէն մին է եղած, բանաստեղծ, բանասէր, պատմաբան, ազգային գործիչ. ա–

---

[1] Հայ բարեգործական ընդհանուր Միութեան վարիչ պատուիրակ ծանօթ բանասէրն Տիար Վահան Մալէզեան, որուն մեծ Հայրը Մալէզեան Յովսէփ Պատուելին պատանեկութեանս հայերէնի դասատու եղած է։

[1] Ծանօթ Գրագէտ, Բանաստեղծ, եւ ազգային գործիչ։

*նոր աշուղական լեզուով ու ոճով բանաստեղծութիւններէն (որոնց մէջ կան գեղեցիկներ) մէկ քանին հրատարակած եմ, այդ մոռցուած մեծ դէմքին վրայ ուշադրութեան հրաւիրող քանի մը տողով, «*Անահիտ*»ի նախկին շարքի թիւի մը մէջ. ցանկալի կը գտնեմ որ Վենետիկի կամ Վիեննայի Մխիթարեանք, որ այդ բանաստեղծութեանց ձեռագիր հաւաքածուներ ունին, անոնց ամբողջութիւնը հատորի մը մէջ ամփոփեն: Տօքթ. Թորգոմեան շատ օգտակար ու արժէքաւոր գործ մըն է որ կատարած է՝ հրատարակելով Երեմիայի «*Պատմութիւն Ստամպօլոյ*» գրուածքին բնագիրը, որ այդ հին օրերու Պոլսին եւ անոր հայ համայնքին վրայ շահեկան տեղեկութիւններ կը պարունակէ, եւ այդ բնագրին կցել ծանօթագրութեանց ստուար ու կարեւոր շարք մը, որ արդիւնքն է բազմամեայ ու բազմարդիւն կեանքի մը ընթացքին կերտուած երկար ու համբերատար պրպտումներու:*

# ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՔ

## ՍՏԱՄՊՕԼԱՅ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

## ԵՐԵՄԻԱ ՉԷԼԷՊԻԻ ՔԷՕՄԻՒՐՃԵԱՆ

---

### ԳԼՈՒԽ Է.

### ՊԷՅՔՕԶ—ԳԱՆՏԻԼԼԻ—ԳՈՒԶԳՈՒՆՃՈՒՔ

*Այս գլուխը՝ ինչպէս գրած եմ Նախապէս (Հատոր Բ., էջ* 713—714), *Վոսփորի Ասիական եզերքին նկարագրութիւնն է, զոր Երեմիա մանրամասն կերպով կը ծանօթացնէ իր հիւր Վարդապետին. այլ սակայն՝ մի՛ գուցէ ա՛յլ եւս տաղտուկ Անոր պատճառէ, փափկանկատութիւն կ'ունենայ ու կը գրէ հետեւեալը՝*

Տող 1—2.

*«Մի՛ ձանձրանցիս ի պատմելս՝*
*Վարդապետ դու իմ սիրական.*
*Արդ՝ բաւ է անցցուք յայնկողմն՝*
*Որ Անատօլու է անուան»:*

*Կը խնդրէ՝ որ չի ձանձրանայ պատմածներէն ու կը հրաւիրէ զինքը անցնիլ դիմաց՝ Ասիական եզերքը, որուն անունը* «Անատօլու» *է կ'ըսէ:*

*Այս Գլուխին* 3*րդէն մինչեւ* 35*րդ տողե–*

*րուն մէջ Վոսփորի Սեւ Ծովեան Ասիական բերանին մերձ եղած վայրերը Երեմիա իւր սիրական հիւր վարդապետին ցոյց կու տայ յիշեցունելով՝ թէ «Մավրոմօլօզ» վանքը՝ զոր քիչ առաջ այցելած էին, այժմ հանդիպակաց է իրենց* : «Դուն դիտեցիր որ»՝ *կը գրէ* «Բեադըղխանէէն (*Ոսկեղջիւրը*) մինչեւ այս կողմը պարապ տեղ մը չի կար · հիմա ալ պիտի տեսնաս ծաղկազարդ գեղեցիկ պարտէզ ու բուրաստաններ, շքեղ հովոցներ պարունակող գիւղեր, յարազուարճ դարաստաններով շրջապատուած ծովեզերեայ ապարանններ, նաեւ ջրաւէտ դաշտեր, որոնք զարունէն մինչեւ աշուն՝ շարունակ զբօսատեղիներ են, ա՛յնքան հաճոյ ու հաճոյատեսիլ, զորս մարդուս սիրտը եւ աչքը յագուրդ չունենար վայելելով» :

*Երեմիա Չէլէպի այդ տողերուն մէջ պահ մը բանաստեղծական ներշնչում մը կ'ունենայ, երբ կ'ուրուագրէ բոլոր այն ակնապարար տեսարանները, որոնք մի զմիոյ կնի կը պարզուին՝ սկսելով Վոսփորի Սեւ Ծովի բերնէն, եւ ահա ցոյց կու տայ Անատօլուի (Ասիական) կողմը եղած բերդերը, ինչպէս նաեւ դիմացի Եւրոպական (Րումէլի) եղերքինները, բոլորն ալ սպառազինուած խոշոր թնդանօթներով, նեղուցին մուտքը ի հարկին պաշտպանելու համար թշնամիի դէմ* :

*Նախ ցոյց կու տայ* Անատօլու Գավաք *կոչուած գիւղը*, ուր «կը գտնուին՝ *կ'ըսէ*, դարաւոր բարտի ծառեր, ա՛յն աստիճանի հաստ

ու գէր, որ եթէ երեք հոգի ձեռք ձեռքի տա-լով անոնց շուրջը պար բոլորելու ելլան, դար-ձեալ կարելի չըլլար զանոնք գրկել»:

* *
*

*Այս գիւղէն դէպի վար նաւելով, կը դիտէ բոլոր տեղերը, բլուրները, բլրադագաթները, աղօրիքներն եւ այլն, մինչեւ որ կը հասնի* Պէյքօզ, *ուր տեղ հարեւանցի կերպով մը* «Հայեր» *կը յիշէ ըսելով·*

Տող 37—39·

*«Պէկկօզն է եւ դաստայն՝*
*Թէ կամիս ելցուք մեք ընդ այն.*
*Հայք ծանօթք ի ներքս տանին՝*
*Ուր կայ դահ մեծ արքունական.*
*Կոչի նա Թոքաթ պահչէ,*
*Ուր արքայք յորս էրէոյ գընան»:*

«'Պէյքօզ, կոչուած գիւղն է սա»՝ *կ'ըսէ*, «թէ որ կ'ուզես դուրս ելլանք, զի հոն կան գիտածուն Հայեր, որոնք կրնան մեզ տանիլ, պտտցունել ներսերը, Թոքաթ պահչէսի, ըսուած արքունական մեծ պալատը, ուր թագաւորներ կու գան երէ որսալու»:

*Ուստի Երեմիա իր այս տողերով յայտ-նած կ'ըլլայ՝ թէ Պէյքօզ գիւղին մէջ վաղուց Հայեր բնակութիւն հաստատած էին, թէեւ անոնց* «Ս. Նիկողայոս» *Եկեղեցւոյն խօսքը բնա՛ւ չ'ընէր, վասն զի «Ստամպօլոյ Պատմու-թեան» գրուած ատենը, այսինքն* 1661—1684 *թուականներուն, դեռ չէր հաստատուած այն:*

*Պէյքօզի Եկեղեցւոյն յիշատակութիւնը առաջին անգամ կ'ընէ՝ Հ. Ղուկաս Ինճիճեան,*

իր «Ամարանոց Բիւզանդեան» երկին մէջ՝ սապէս[1].

> «Վերջին գիւղ[2] ելից՝ ամարանոցին
> ի ծովեզերեայս՝ Անատօլուին
> Սուրբ Նիկողայոս՝ իւր Եկեղեցին,
> ի բարեչունչ թաղ՝ հայկազուն ազգին»:

Ինճիճեանի այս գործը տպուած ըլլալով 1794ին, վստահապէս կրնանք ընդունիլ, թէ այս աշխատութեան պատրաստութենէն բաւական ժամանակ առաջ շինուած կամ հաստատուած ըլլալու էր արդէն Ս. Նիկողայոս Եկեղեցին: Սարգիս դպիր Սարաֆ Յովհաննէսեան ալ իր Պոլսական ձեռագիր Տեղագրութեանը մէջ՝ զոր աւարտած է 1800ին, կը յիշէ (էջ 255) այդ Եկեղեցին՝ գրելով.

> «Եւ ի չարի սորա է Պէյքօզն բնակեալ ի Հայոց եւ ի տաճկաց, յորում է եւ եկեղեցի մի Հայոց յանուն Սրբոյն Նիկողայոսի, ժամանէր ժողովրդով»:

Պէյքօզի Ս. Նիկողայոսը ճակտին վրայ չունի ո՛չ եւ է Արձանագրութիւն, բայց անպատճառ անոր սկզբնական շինութեան որոշ թուականը պէտք է գտնուի Եկեղեցւոյն Տոմարներուն մէջ, որովհետեւ 1926 Սեպտեմբեր 2ին տօնուեցաւ անոր 150ամեակը, ըստի՝

---

[1] Ամարանոց Բիւզանդեան, Վենետիկ 1794, էջ 215:

[2] Հարկ է գիտնալ, որ Հ. Ղուկաս Ինճիճեան, Երեմիա Չէլէպիի տեղագրութեան հակառակ ուղղութեամբ չարագրած է իւր Վոսփորեան նկարագրութիւնը: Երեմիա Սեւ Ծովէն դէպի Մարմարա Ծովը կ՚իջնայ, մինչ Ինճիճեան Մարմարայէն դէպի Սեւ Ծով կ՚ելլայ, այդ պատճառաւ է որ Պէյքօզը «վերջին գիւղ Ամարանոցի» կ՚անուանէ:

*կրնանք ենթադրել թէ* 1776—1777 *թուականներուն է այն հիմնուած ։*

*Կէս դար յետոյ ,* 1834*ին Աղանի Սահմաննոս Պատրիարքին օրով եւ ձանիկ Ամիրայի ծախքով*[3] *կը վերաշինուի այդ Եկեղեցին , որ իր հարիւրամեակը բոլորեց* 1934*ին ։*

* * *

*Բարեկեցիկ Հայերու ամարանոցն էր Պէյքօզ գիւղը․ կանուխէն վարժարանի պէս բան մը ունեցած է իր ծոցին մէջ , սակայն* 1813*ին Թուղլաճի Մարտիրոս անուն կրթասէր ու բարեգործ անձ մը կը հիմնէ նոր մը*[4]*, որ հետզհետէ հիննալով՝* 1853*ին Թիրեաքեան Պետրոս Աղայի նախաձեռնութեամբ եւ ժողովրդային հանգանակութեամբ կը վերաշինուի այն՝ եւ կը մնայ մինչեւ այսօր , միայն թէ* 1853*էն ի վեր բաւական հինցած ու խարխուլ ըլլալուն՝* 1912*ին նորէն կը շինուի եւ կը կոչուի* «Հայկազեան» *եւ կ՚օժտուի նաեւ ընդարձակ սրահով մը , ուր հետզհետէ տեղի կ՚ունենան դպրոցական սիրուն հանդէսներ , որոնց մէկ նկարագրութիւնը կը կարդայինք* «Ջէզոյ» *թերթին մէջ հետեւեալ կերպով*[5]*․*

---

[3] Մասիս, *Թիւ* 11—60, 1853 *Մայիս* 18․ *եւ* Պատմութիւն Աւետիս Պէրպէրեան, *էջ* 259 *եւ* 488։ *Նաեւ* Տարեցոյց Ս․ Փրկչեան Ազգային Հիւանդանոցին, *Տարի* 1901, *էջ* 200։

[4] Մասիս, *Թիւ* 11—60, 1853 *Մարտ* 18․ *եւ* Տարեցոյց Ս․ Փրկչեան Ազգ․ Հիւանդանոցին, *Տարի* 1901, *էջ* 176։

[5] Ջէզոյ, *Կ․ Պոլիս*, *Թիւ* 34, 6 *Մարտ* 1912։

Դպրոցական Հանդէս Պէյքօզի մէջ:

*Պէյքօզի նորաշէն Հայկազեան վարժարանի ընդարձակ սրահին մէջ անցեալ երկուշաբթի իրիկուն, գիւղացի ազգայիններու ստիպումին վրայ, երկրորդ անգամ ըլլալով տեղի ունեցաւ դպրոցական սիրուն հանդէս մը, առաջնորդութեամբ վարժարանի ժրաջան ուսուցչուհիներուն՝ Օր. Խօժէնի եւ Աննիկ Նշանեան քոյրերու: Հանդէսը բացուեցաւ վարժարանին յատուկ քայլերգով, որմէ ետք յաջորդաբար կատարուեցան հետաքրքրաշարժ արտասանութիւններ, կատակերգութիւններ եւ արտասանութիւններ Թուրքերէն եւ Հայերէն լեզուներով, երգերով եւ նուագով ընդհատուած: Այն դպրոցական հաճելի հանդէսը տեւեց մինչեւ կէս գիշեր շատ յաջող կերպով: Կէս գիշերէն վերջ սկսաւ Տիկնանց Խնամակալութեան կողմէ սարքուած պարահանդէսը, ղեկավարութեամբ Պ. Հայկ Պասմաճեանի: Պարահանդէսը ոգեւորութեամբ եւ կատարեալ կարգապահութեամբ տեւեց մինչեւ լոյս, հակառակ օրուան անյարմարութեան: Յիշեալ հանդէսէն եւ ասկէ առաջուան ներկայացումէն գոյացած հասոյթը կը հասնի 5000 դրշ.ի:*

*Ծանօթագրութիւններուս մէջ ուզեցի զետեղել այդ գրուածը, ցոյց տալու համար, թէ Պէյքօզ՝ այդ գեղեցիկ գիւղը անտարբեր չէ եղած երբեք ազգային մանկուոյն կրթութեանը. հոն կազմուած է երբեմն Դպրոցասէր, Դպրոցախնամ եւ այլն ընկերութիւններ եւ Տիկնանց Խնամակալութիւն մը, որոնք դժբախտաբար երկար կեանք չեն ունեցած:*

* * *

*Պէյքօզ այսօր անշքացած ու աղքատացած, բայց ունի խիստ կարեւոր էջ մը ժամանակակից Հայ Պատմութեան մէջ, այն պատ–*

ճառաւ՝ զի «Ազգային Սահմանադրութեան» տարեդարձի չքեղ հանդէսներուն ժամադրավայրն եղած է հոն թանկագին յիշատակներով:

Ամէն տարի Մայիս 24ին, օրուան Պատրիարքին կամ անոր ներկայացուցիչ՝ բարձրաստիճան Եկեղեցականի մը կողմէ Ս. Նիկողայոս փոքրիկ Եկեղեցւոյն մէջ մեծահանդէս պատարագ կը մատուցուէր ի յարատեւութիւն Սահմանադրութեան: Հայ ժողովուրդը երամովին կ՚երթար հոն ուխտի, եւ յետոյ կարգաւ կը սուրար Հիւնքեար Իսկէլէսի կոչուած մօտակայ ընդարձակ դաշտը, ուր մինչեւ երեկոյ զբօսալից մթնոլորտի մէջ հայրենաշունչ երգերով օդը կը թնդացնէր. այդ առթիւ հայրենասէր գրագէտներ խանդավառ ճառեր կ՚արտասանէին, եւ «Եղբայր եմք»ի սրբազան երգն ալ բոլոր Հայ սրտերը հոն իրարու կը զօդէր: Յիշատակելի են այս առթիւ «Արիք Հայկազունք յառաջ ընթանանք»ը[6], զոր «Մեղու»ի խմբագիր Յ. Գ. Սվաճեան շարադրած էր Ազգային Սահմանադրութեան առաջին Տարեդարձին առթիւ եւ զոր կ՚երգենք ցարդ, նաեւ անմահ բանաստեղծ Մկրտիչ Պէշիկթաշլեանի 1863ին «ի վերահաստատութիւն Ազգ. Սահմանադրութեան» վերնագրով սքանչելի քերդուածը ինչպէս նաեւ Ստ. Փափազեանի եւ Ս. Ֆէլէկեանի յօրինածները[7]:

Տղայ էինք, բայց այսօրուան պէս միտքս

[6] Քնար Հայկական, Մխանարեանց, Տպ. Ս. Պետերբուրգ 1868, էջ 217:

[7] Քնար Հայկական, էջ 219 եւ 220:

է, թէ ի՛նչ հիանալի ու շքեղ պատրաստութիւններ կը տեսնուէին շաբաթներ առաջ այդ նուիրական Հանդէսին փառաւորութեանը համար: Զանազան թաղերու մէջ գտնուած բարենպատակ Ազգային Ընկերութիւններու կողմէ յատուկ շոգենաւներ կը վարձուէին. Կ. Պոլսոյ երկսեռ Հայութիւնը նուագ ու երգով կը լեցուէր անոնց մէջ եւ կ՚երթար դէպի Պէյքօզ:

Ազգ. Սահմանադրութեան տարեդարձի օրը Կ. Պոլսոյ մէջ ընդհանուր եւ համազգային տօնի մը հանգամանքը կը ստանար եւ ամենազգի ժողովուրդներ այր թէ կին՝ Վոսփորի երկու ափերու գլխաւոր նաւամատոյցներուն երկայնքը կը խռնուէին օրն ի բուն, որպէս զի այդ Ամանորեան Հանդէսին գնացող Հայ ժողովուրդին խրախճալից ու դրօշազարդ շոգենաւներով վերադարձը դիտէին...

Աւա՜ղ սակայն, փառացս անցաւորի...

1875ին խումբ մը իմաստուն... գլուխներ խորհեցան Տարեդարձի այդ Հանդիսութիւնները յետ այնորիկ կատարել Եէտիգուլէի Ս. Փրկչեան Ազգ. Հիւանդանոցին դէմի պարտէզը, որպէս զի, այդ կերպով Հիւանդանոցին համար հասոյթի նոր աղբիւր մը ստեղծուէր: Այդ խորհուրդը յղացողները հետզհետէ իրենց նպատակին հասան, սակայն իրողութիւնը ո՛չ միայն յուսացուած արդիւնքը չընծայեց, այլ եւ նախ՝ պատրաստեց տակաւ տակաւ հանդէսներու անշքութիւնը, եւ հուսկ ապա թաղումը Ազգ. Սահմանադրութեան. այս մասին գաղափար մ՚ունենալու համար բաւ է այդ ա–

անձի հրատարակուած հայ թերթերը աչքէ անցնել :

Այս Ծանօթագրութիւններուս սահմանէն դուրս է անշուշտ խօսիլ այդ մասին, բայց կարելի չէր Պէյքօզէն հեռանալ առանց այս հակիրճ յիշատակագրութեանս :

* *
*

Պէյքօզի հետ յիշատակելի է նաեւ Երամեան Աբրահամ բաշայի երբեմնի չքեղ, ընդարձակադոյն պարտէզը, որ գիւղին նաւամատոյցէն մինչեւ Սեւ Ծովի ափերը կը տարածուէր եւ որուն համար Երամեան (Սուլթան Ազիզի այդ յոյժ սիրելին եւ նպաստաւորեալը) ահագնաբեռ դրամ-ոսկի վատնած էր ու կը վատնէր շարունակ, հա՛դիւ չնչին նպաստներ մը երբեմնակի ընելով գիւղին ազքատիկ վարժարանին ու Եկեղեցւոյն, եւ անգամ մ'ալ Ներսէս Պատրիարքին օրով Ազգ. Պատրիարքարանին պարտքերուն համար 1000 ոսկի տալով («Մասիս», Թիւ 1609, Նոյեմբեր 26, 1874) :

Աբրահամ Երամեան, որ Սուլթան Ազիզէն միւշիրութեան էր բարձրացած, չգիտեմ ո՞ր ծառայութեանը համար, իր Պէյքօզեան այդ լայնածաւալ պարտէզը որսի եւ չուայտութեան վայր մը չինած էր, թէ՛ իրեն եւ թէ՛ իր պորտաբոյծ ընակալէզ հացկատակներուն. սակայն Սուլթան Ազիզի մահէն (1876) յետոյ, չկրցաւ երկար վայելել իր այդ բազմածախս Արշակաւանը, զի ուտել-խմելու եւ զրօնելու

համար հոն դացող այլազգի խլուրդներ օրին մէկը Սուլթան Համիտին տեղեկագրեցին, թէ Աբրահամ բաշա դիտմամբ չինել տուած էր այդ անեզր ու անսահման անտառախիտ պարտէզը եւ մէջէն ալ մինչեւ Սեւ Ծով յանգող լայն պողոտայ մը բացած, որպէս զի ապագային Ռուսական բանակի ազատ մուտք նախապատրաստած ըլլայ դէպի Կ. Պոլիս:

Սուլթան Համիտ այլայլած, անմիջապէս չնչին գումարի մը փոխարէն Աբրահամ բաշայի ձեռքէն ստիպմամբ առնել կու տայ այդ պարտէզը, ուր պտտելու համար ժամեր ու ժամեր հարկաւոր էր:

Ա՛հ եթէ Հայ հարուստները գիտնային ժամանակին յօգուտ իրենց Ազգին տրամադրել ու խնայել բախտին բերմամբը՝ անքրտինք վաստկած իրենց մեծարեան գանձերը, ի՛նչ անմահ մեծագործութիւններու հեղինակ չէին կրնար ըլլալ...:

Երամեան միւշիր–բաշան (վէզիր) Պէօյիւքտէրէէն քանի մը ժամ հեռու ալ ունէր ընդարձակ ագարակ մը, որ «Աբրահամ բաշա Ջիֆթլիի» անունով ճանչցուած էր, անի ալ Ճէօն–Թիւրքերը խլեցին ձեռքէն եւ խեղճը կորսնցուց նաեւ Պէօյիւքտէրէի ծովափին վրայ չինել տուած ճոխ ապարանքը ու Բերայի մեծ պողոտային վրայ ունեցած Քլիւպ կոչուած հսկայ շէնքը, որ օտար Դեսպաններու եւ Թուրք երեւելի պաշտօնակալներու խաղատունն էր եւ ժամադրավայրը:

Աբրահամ բաշա որդին էր Եգիպտական

խոփինէրու սեղանաւոր Քարաքէհեա Գէորգ պէյ Երամեանի, որ իր եղբօրը Կարապետ պէյի հետ շինած է Պէօյիւքտէրէի Ս. Հռիփսիմեանց Եկեղեցին (Հատոր Բ., էջ 708):

Աբրահամ բաշա հայերէն գրեթէ չէր գիտեր, բայց 1896ին անդամակցեցաւ Ազգային Վարչութեան Քաղաքական Ժողովին, առանց կարեւոր գործակցութիւն մը ցոյց տալու, բայց եթէ՝ Իզմիրլեան Պատրիարքը հրաժարեցնելու հետամուտ ըլլալէ:

* * *

Պէյքօզի մէկ ըլլակին վրան է Ազգային Գերեզմանատունը, անխնամ վիճակի մէջ, ուր քանի մը շրջած, կոտրտած քարեր իրենց եղծուած տապանագիրներով կը յայտնեն անունները գիւղին անհետացած հին դէմքերուն:

—

Պէյքօզէն մեկնելով Երեմիա իր նաւակը դէպի Մարմարայի ուղղութեամբ թիավարել կու տայ (տող 47) եւ մի առ մի ցոյց կու տայ ճամբուն վրայ գտնուած տեղերը, բոլորն ալ թրքաբնակ, որոնց վրայ խօսել բնա՛ւ չ՚արժեր, որովհետեւ հայկական ո՛ր եւ է բան չի գտնուիր անոնց մէջ: Այսպէս՝ Հանչէրլի Սուլթան, Ինճիրլի քէօյ, Աք պապա, Չըպըքլի, Գանլըճա, Անատօլու Հիսար, Կէօքսիւ եւ ուրիշ աւաններ թուելով, կը հասնի Գանտիլլի (Լապտերակիր) գիւղը, ուր հարկ է մեզ կանգ առնել, թէեւ անոր մասին Երեմիա կը գրէ միայն՝

Տող 74·

*«Այլ յառաջ եւ Գանտիլլի*
*Պաղձան է յոյժ վայելչական»,*

*առանց Հայ անունը յիշելու, զի իւր ատենը հայութիւն չկար դեռ հոն. բայց Սարգիս Դպիր իր Տեղագրութեան մէջ ունի կարճ յիշատակութիւն մը սապէս. «Երրորդ բաղուկ եւ պուռուն է, Գանտիլլի պուռնին, բնակեալ ի Տաճկաց, ի Հայոց եւ ի սակաւ Յունաց»: Ուստի կրնանք ընդունիլ, թէ անցեալ դարուն սկիզբները Հայեր բնակութիւն հաստատած ըլլալու էին հոն. բայց քանի՛ տխուր է այդ մասին եղած աւանդութիւն մը, զոր կը քաղեմ Աւետիս Պէրպէրեանի պատմութենէն*[8]*:*

1819 *Հոկտ.* 2/14*ին երբ Տիւզեան Միքայէլ եւ հօրեղբօրորդին Մկրտիչ, Եէնիգիւղի տուներնուն պատուհաններէն անիրաւաբար կը կախուէին եւ Գրիգոր ու Սարգիս Զէլէպիները միեւնոյն օրը Պապը Հիւմայունին առաջ կը գլխատուէին (տե՛ս Հատոր Ա., էջ* 294)*. Նոյն այդ ողբալի միջոցին էր, որ* «ի Գանտիլլի ի տան Անտօնի Տավուտեան՝ խնջոյս կազմէին Թընկըրեան Յակոբ եւ Յովսէփ, Գըլենեան Գրիգոր եւ այլ հարազատ որդիք Գոլէնեան քահանայից, ընդ մահ պաշտպանաց Աքքայեան ուխտին»[9], *կը գրէ Աւետիս Պէրպէրեան:*

*Անոնք հարկաւ* 1819*էն առաջ ունէին Գանտիլլի մէջ իրենց ամարանոցները: Աւելի վեր–*

---

8 Պատմ. Աւետիս Պէրպէրեան, էջ 103:

9 Revue des deux Mondes, 1830, էջ 415:

*ջերն է, սակայն, որ Հայերու թիւը տակաւ կը չատնայ այդ գիւղին մէջ եւ 1846 Սեպտեմբերին կը հիմնուի հոն* «Ս. Երկոտասան Առաքելոց» *անուն Եկեղեցին*[10], *քովիկն ալ համանուն դպրոց մը: Նոյն տարին է որ կաթոլիկ Հայերն ալ կ'ունենան հոն փոքրիկ մատուռ մը փայտաշէն* Ս. Յովսէփի *նուիրուած, որ կը պահէ ցարդ իր գոյութիւնը:*

*Այս մատուռը իր հրջակայ երկիրով միասին, ըստ Հ. Սահակ Սրապեանի, շնորհուած է եղեր Դաւիթ Կլավանի օտարազգի անձէն, այժմ մեռած:*

* * *

*Գանտիլլիի բարձունքին վրայ է գիւղին Հայ Գերեզմանատունը, ուր թաղուած է* Երեմիա *Եպիսկոպոս մը, որ ունի իր պատմութիւնը, զոր լսած եմ Պարիսի Հայոց Հոգեւոր Հովիւ Տէր Վռամշապուհ Եպիսկոպոս Քիպարեանէ:*

*Երեմիա Եպիսկոպոս Շապին Գարահիսարի առաջնորդ եղած ժամանակը, ժողովուրդէն՝ Հիւսիսեան անուն անձ մը կը սկսի թշնամանալ իրեն, ա՛յն աստիճան, որ օր մը երբ Եպիսկոպոսը քարոզ կը խօսէր, Հիւսիսեան անպատկառօրէն սեղան կը բարձրանայ եւ զայն վար հրելով ա՛յնպիսի անխնայ հարուածներ կու տայ անոր, որ խեղճին ողնայարը կը վիրաւորուի եւ ցմերջ կը մնայ խե-*

---

[10] Պատմ. Ա. Պէրպէրեան, էջ 318, *եւ* Հայաստան, 1846 *Սեպտ.* 22:

ղանդամ։ Այս տխուր արկածէն խորապէս զգացուած՝ Երեմիա Եպիսկոպոս կը դադրի առաջնորդական ո՛ր եւ է պաշտօն ունենալէ, կու գայ Կ. Պոլիս, կը քաշուի Գանտիլլի, եւ հոս կը սկսի կաթնավաճառութիւն ընել. բայց միանգամայն կը հոլուէ գիւղին սակաւաթիւ հայ ժողովուրդը եւ ջանադիր կ'ըլլայ Եկեղեցին հաստատելու։

Գերեզմանատունին մէջ Երեմիայի քնարանը որոշուած է յատուկ չիրիմով, որուն վրայ արձանագրուած է եղեր վերոյիշեալ դէպքը։ Ուզեցի ունենալ անոր Տապանագիրը, բայց գիւղին Քահանայն՝ Տէր Աբրահամ խպէեանի միջոցաւ հաղորդած էր ինծ թէ Երեմիա Եպիսկոպոսի գերեզմանաքարը կոտրտած է ու վրայի գրերն ալ եղծուած, անընթեռնլի եղած են։

Գանտիլլին թողլով՝ Երեմիա Չէլէպի իր նաւագնացութիւնը կը շարունակէ, եւ Գուլէ Պաղչայ, Փափազ Պաղչէսի (այժմ Վանի-քէօյ) նաեւ Չէնկէլ քէօյ, Ստավրօս կոչուած տեղերը հարեւանցի մը նշանակելով կը հասնի «Գուզկունճուք» եւ կը գրէ՝

Տող 89 եւ 90.

*«Միւս եւս՝ մինչեւ հասանիմք՝*
*Գուզկունճուք գիւղն հրէական,*
*Հրեայք են յերկուց կողմանց՝*
*Ի վերայ ծովուն միշտ դիտման»։*

«Քիչ մ'ալ երթանք՝ կը հասնինք Գուզ-կունճուք, որ ծովահայեաց գիւղ մ'է իրէա-

բնակ», *կ'ըսէ Երեմիա, եւ Հայու յիշատակութիւն չ'ընէր, որովհետեւ իր ատենը Հայ բնակչութիւն հոս ալ չկար. սակայն Սարգիս Դպիր իր* Տեղագրութեան *մէջ, այս գիւղի հայութեան մասին ունի կարճ պարբերութիւն մը՝ որ է.* «Եւ յետ սորա է գիւղն Գուզկունճուք, բնակեալ ի Յունաց, ի Հրէից, եւ ի յոյժ սակաւ Հայոց»:

*Իսկ Հ. Ղուկաս իր* «Ամարանոց Բիւզանդեան»*ին մէջ* (էջ 189) *այս գիւղի մասին կը գրէ թէ*

*Տեղի է գիւտի՝ հայկազուն ազգին,*
*Նոր գործարանի՝ ընտիր ներկողին,*
*Նըկարակերտի՝ գործոյ բեհեզին*
*Բոլորից ալոց՝ ընտրելագոյնին»:*

*Ըսել է թէ, Գուզկունճուքի մէջ նախանցեալ դարու վերջերը Հայեր սկսած են բնակիլ, աշխատելու համար անշուշտ՝* տպածոյ ծաղկազարդ բեհեզեայ ընտիր կերպասներու գործարանը, *զոր Հ. Ինճիճեան կը յիշատակէ, եւ որու մասին Սարգիս Դպիր ալ կ'արձանագրէ հետեւեալ խիստ կարեւոր տեղեկութիւնը՝ ըսելով.*

*«Գիւղն (Գուզկունճուք), է տեղի գիւտի նոր գործարանի ծաղկայօրէն տպածոյ՝ նկարակերտից Պասմանց, զոյնզգոյն հնարեալ նրբագոյն եւս՝ ի կեսարացւոյ ումեմնէ ճարտարապետէ չինուածոյ՝ Սարգիս Խալֆա կոչեցելոյ, յոյր սակս կոչի Սէրգիս Խալֆա պասմասի: Եւ սոյն գործարան այժմ փոխեալ է աստի յիւքիւտար, եւ գործեն անդ Թոռունքն նորա՝ ընդ այլ արուեստակիցս նորին արուեստի»:*

*Շատ հետաքրքրական է արդարեւ այն գրուածը, որուն մէջ յիշուած Կեսարացի ճարտարապետ* Սարգիս խալֆան *անկասկած, է այն՝ որ* 1719*ին (տե՛ս Հատոր Ա., էջ* 232) *Գում Գաբուի* Մայր Եկեղեցւոյն, 1727*ին Իւսկիւտարի* Ս. Կարապետին (*Հատոր Բ., էջ* 488) *եւ* 1733*ին ալ* (*Հատոր Բ., էջ* 493) *Ղալաթիոյ* Ս. Լուսաւորիչին *վերաշինութիւններն ըրած է. եւ ունեցած է «Արքունի ճարտարապետ» տիտղոսը:*

*Այս ենթադրութեանս իբրեւ հաստատութիւն կրնայ ծառայել այն կէտը, որով Սարգիս Դպիր կը յայտնէ՝ թէ վերոյիշեալ Գործարանը Գուգկունճուքէն Իւսկիւտար է փոխադրուած, զոր վարած են Սարգիս Խալֆայի թոռները, բայց թէ ո՞ր թուականին, յայտնի չէ:*

*Այս Սարգիս Խալֆայն Իւսկիւտարի Ազգ. Գերեզմանատունին մէջ բանալ տուած է ջրհորներ, որոնց մասին պիտի խօսիմ երբ Իւսկիւտար անցնինք:*



*Բայց ժամանակի ընթացքին մէջ Գուգկունճուքի Հայ բնակչութիւնը հետզհետէ բազմանալով,* 1835*ին ունեցած է իր յատուկ Եկեղեցին* Ս. Լուսաւորիչ *անուն, զոր նախ իր ծախքով փայտաշէն կերտած է՝ արքունի ճարտարապետ Յովհաննէս Ամիրայ Սերվերեան, եւ* 1866*ին Հիմնադրին ժառանգորդները, ուրիշ ազգայիններու օժանդակութեամբ զայն*

*բոլորովին նոր ու քարուկիր շինած են, ինչպէս կ'իմանանք դրանը վերեւը փորագրուած արձանագրութենէն՝ որ է.*

ՏԱՃԱՐ ԱՍՏՈՒԾՈՅ ՅԱՆՈՒՆ ՍՐԲՈՅ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ
ՀԱՍՏԱՏԵԱԼ ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1835
ՅԱՐՔՈՒՆԻ ՃԱՐՏԱՐԱՊԵՏ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՄԻՐԱՅԻ
ՍԵՐՎԵՐԵԱՆ
ԵՒ Ի ՀԻՄԱՆՑ ՆՈՐՈԳԵԱԼ ՋԱՆԻՒՔ ԺԱՌԱՆԳԱՑ
ՀԻՄՆԱԴՐԻՆ, ԱՐԴԵԱՄԲՔ
ԱՋԳԻՍ ԵՒ ՄԱՍՆԱՒՈՐ ՆՊԱՍՏԻՒՔ ՇԱԼՃԵԱՆ
ՊԵՏՐՈՍ ԱՂԱՅԻ
ՅԱՄԻ ՓՐԿՉԻՆ 1861

*Գեղեցիկ ճարտարապետութեամբ շինուած՝ գմբէթաւոր սիրուն Եկեղեցի մ'է «*Ս. Լուսաւորիչ*», ծովեզրին շատ մօտ: Ունի իր յատուկ գանգակատունը, եւեւն ալ Դպրոց-Մանկապարտէզ մը՝ որ կը պահուի ցարդ թէեւ գայթ ի գայթի:*

* * *

*Այս Եկեղեցւոյն Քարոզիչը եղած է երկար ատեն Յովհաննէս վարդապետ, յետոյ Եպիսկոպոս Սեթեան, որուն հետ կը պաշտօնավարէր հոն՝ իր եղբայրը Տէր Գրիգոր Աւագերէց Քահանայն Սեթեան, նաեւ սոր որդին՝ Տէր Կարապետ Սեթեան քաջ շարականագէտը*[11] :

*Սեթեան Եպիսկոպոս՝ Ազգային Սահմանադրութեան* 1860*ի եւ* 1863*ի խմբագրիչ Յանձ-*

[11] Միսակ *համբաւաւոր դերասանը Տէր Կարապետի եղբայրն էր:*

*նաժողովներուն գործօն մասնակցութիւն ունեցած է. վախճանած է 1873 Յունիս 30ին եւ թաղուած Եկեղեցւոյն ձախ կողմի պարտէզը, ունենալով գեղեցիկ շիրիմ մը, որուն Արձանագրութիւնը քաղած եմ անձամբ եւ է հետեւեալը.*

ԱՍՏ ՀԱՆԳՉԻ
ՅՈՒՍՈՎ ԿԵՆԱՑՆ ՅԱՒԻՏԵՆԻՑ
ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՍԵԹԵԱՆ
ՀԱՒԱՏԱՐԻՄ ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՈՅ
ԱՆՁՆԱՆՈՒԷՐ Ի ՍԷՐ ԱԶԳԻՍ
ՆԱՀԱՏԱԿՈՒԹԵԱՄԲ ԻՍԿ ՅԱՔՍՈՐՍ
ԲԱՐԵՄՈՅՆ Ի ՎԱՐՍ ԵՒ ԺԻՐ Ի ԳՈՐԾՍ

ԾՆՈՒՆԴ 1800: ՁԵՌՆԱԴՐ. 1818: ՎԱԽՃԱՆ 1873

*Կը պատմէին՝ թէ Սեթեան Եպիսկոպոս իր վարդապետութեան ժամանակ քիչ մը ատեն կրօնագիտութեան դասատու եղած է Իւսկիւտարի Ս. Խաչ Վարժարանը. կը յիշեմ որ նա յաճախ կու գար Ս. Խաչ Եկեղեցին, քարոզելու եւ պատարագելու: Ներկայ եղած եմ եւ անոր յուղարկաւորութեանը*[12]. *15 տարեկան հազիւ կայի, բայց այսօրուան պէս միտքս է, որ օրուան Պատրիարքը Խրիմեան Հայրիկ նախագահեց տխուր արարողութեան եւ Խորէն Նար-Պէյ Սրբազան յատուկ պատարագմատոյց այդ օրը եւ անձամբ կատարեց օծումը Հանգուցեալ Եպիսկոպոսին ու յետոյ արտասանեց պերճախօս դամբանական մը, ներկայացնելով տիպար եկեղեցականը, թուելով*

---

[12] Մասիս, *Թիւ* 1404, 3 *Յուլիս* 1873:

անոր ընտիր յատկութիւնները, ազգօգուտ ծառայութիւնները եւ լալագին յայտարարելով թէ իր օծակից եղբայրն էր, զոր կը կորսնցնէր վաղաժամ[13]:

Խուռն բազմութիւն մը շրջապատած էր Սեթեան Սրբազանի դագաղը, զոր Քահանաներ ուսամբարձ դուրս հանեցին Եկեղեցիէն եւ մեծաշուք թափորով (որուն կ'ընկերանար գիւղին Ցոյն Մետրապօլիտը իր Քահանաներով), տարին պտտցուցին Գուզկունճուքի գլխաւոր պողոտաներուն վրայ եւ ապա բերին զայն աւանդել իր վերջին Հանգստարանին, զոր յայտնեցի վերեւ:

Սեթեան Սրբազանի մահէն յետոյ, Գուզկունճուքի Եկեղեցին պաշտօնական Քարոզիչ չունեցաւ, եւ 1889—1890 թուականին Խրիմեան Հայրիկ թողլով Ս. Խաչի Քարոզչութիւնը, փոխադրուեցաւ Ս. Լուսաւորիչ, ուր ունէր իր յատուկ ննջարանը Թաղական խորհուրդի սրահին կից խուցի մը մէջ: Այդ տեղ ես զինքը դարմանած եմ ամխներով կուրծքի վերահաս հիւանդութեան մը առթիւ, որ բարեբախտաբար բուժուեցաւ առանց չար հետեւանքի:

Բժշկութեանս առաջին տարիներուն մէջն էի դեռ, կը բնակէի Իսկիւտարի Սելամիէ թաղը, եւ ամէն օր կ'իջնայի Գուզկունճուք Նո–

[13] Այս Եկեղեցականը աքսոր գացած է 1843ին, էսնաֆներու եւ սարաֆներու մէջ ծագած վէճին ժամանակ էսնաֆներու (արհեստաւոր) կողմը բռնած ըլլալուն համար, կը գրէ Մասիս, 3 Յուլիս 1873:

րին Սրբազնութիւնը տեսնալու, պատահեցաւ սակայն՝ որ օր մը չի կրցայ երթալ, որով կը գրէր ինձ հետեւեալը, զոր կը պահեմ իբրեւ մասունք.

Մեծ Տօքտոր Վ. Թորգոմեան

յԻւսքիւտար

Սիրելի Տօքտոր

Այսօր ժամը հինգէն մինչեւ վեց Ձեր այցելութեան կը սպասեմ. եթէ աւելի կանուխ գալու ըլլաք շատ շնորհակալ կը լինիմ:

1890 Դեկտ. 12 Ազօթարար
Գուզկունճուք Հայրիկ

Ինչպէս գիտենք, Խրիմեան Հայրիկ 1891ին Գուզկունճուքէն Երուսաղէմ գնաց Թուրք կառավարութեան աքսորումին վրայ եւ հոնկէ ալ՝ 1893 Օգոստոսին ուղեւորեցաւ Էջմիածին՝ իբրեւ ամենայն Հայոց ազգընտիր կաթողիկոս:

* * *

Մեծանուն բժիշկ Տօքթ. Սանեփան բաշա Ասլանեան երկար տարիներ բնակած է Գուզկունճուք եւ Եկեղեցւոյն թաղական խորհուրդին Ատենապետութիւնը վարած: Սա մեռնելէն առաջ՝ 1901ին, ինձմէ ու սնարը հսկող ուրիշ բժիշկներէ խնդրեց, որ իր մարմինը Գուզկունճուքի Եկեղեցւոյն պարտէզը թաղել տային, բայց Ազգային իշխանութիւնը անոր փառաւոր Դամբարան մը պատրաստեց Շիշլիի Ազգ. Գերեզմանատունը, ուր կը հանգչի նա

իր գործիչ ընկեր–արուեստակիցներուն մօտ. Տօքթ. Սէրվիչէնէ եւ Տօքթ. Ռուսինեանէ ո՛չ շատ հեռի:

* * *

Գուզկունճուքի Եկեղեցւոյն պարտէզին մէջ՝ Սեթեան Սրբազանի շիրմին դէմը կայ Աղբիւր մը, զոր 1910ին շինել տուած է Գ. Մալխասեան, ինչպէս գրած եմ Հայ բժշկական Արձանագրաբանութեանս մէջ[14]:

Այս գիւղին զառ ի վերին վրայ առանձօք կար ազգային վարժարան մը, բաւական համբաւաւոր, ուր թատերական ներկայացումներ ալ երբեմն տեղի կ՚ունենային Սիսակ Ճարտար դերասանապետին առաջնորդութեամբ:

Գուզկունճուքէն մեկնելով ու ծովեզերքն ի վար միշտ քերելով, Երեմիա Չէլէպի իր Հիւրը կը բերէ Իւսկիւտար, զոր մեծ քաղաք վաճառականութեան կ՚անուանէ:

Իր աշխատութեան երդ Գլուխին 96րդ տողէն մինչեւ 132րդը նուիրած է Իւսկիւտարի ծովամերձ մասին մէջ գտնուած հին մզկիթները, իմարէթները, տուներու անդադրում վիճակին մանրամասն նկարագրութեան, բայց յանկարծ ոստում մը կ՚ընէ քաղաքին նաւամատոյցէն դէպի անոր բարձունքը եւ հակիրճ պարբերութիւններով կը յիշատակէ հոն եղած Հայութիւնը եւ Հայ Եկեղեցին:

Չէլէպիի այս ոստումը կը ստիպէ ինձ կանգ առնել այդ բարձունքին վրայ՝ իմ

---

14 Հր. Վենետիկ, 1931, էջ 189:

*ծննդավայրս, եւ Ծանօթագրութիւններուս մէջ համառօտիւ նշանակել այդ տեղի հայ կեանքը, իր Թանկագին յիշատակներով, որոնք Կ. Պոլսոյ հայ գաղութի պատմութեան ամենակարեւոր էջերը կը յօրինեն:*

*Հիասքանչ է Իւսկիւտարի բարձունքը, որ իր կրկնակ բլուրներովը հեռուէն կ՚իշխէ Մարմարա գեղեցիկ ծովին ու չքեղատեսիլ օձապտոյտ Վոսփորին, եւ որ իրաւամբ արժանի եղած է գովքին՝ անմահ բանաստեղծ Մկրտիչ Պէշիկթաշլեանի: Սա իւր Տաղերուն մէջ ունի Օր. Եսթիմէ Օտեանի*[15] *ձօնուած գողտրիկ երգ մը, զոր կը վերջացնէ հետեւեալ կերպով.*

*«Ո՜վ երջանիկ Իւսկիւտար*
*Ըզքեզ ա՛լ Թող չեմ ի տար*
*Ա՛յնպէս քեզի կապուեցայ"*
*Բաժնուելու ճար չի կայ*[16]*»:*

* *
*

---

[15] *Քոյրը մեծանուն Գրիգոր Օտեանի, որ ինչպէս գիտենք՝ Թաղուած է* 1887*ին Բարիզի* Père Lachaise *Գերեզմանատունը, ուր գեղեցիկ շիրիմ մը կը ծածկէ անոր հողակոյտը, կրելով երկլեզուեան սա համեստ արձանագրութիւնը.*

ԳՐԻԳՈՐ ՕՏԵԱՆ
1834—1887
KRIKOR ODIAN
Patriote arménien

1934 *Օգոստոս* 14*ին, քանի մը ազգայիններու հետ ծաղկեպսակ մը տարինք Օտեանի շիրմին վերեւը, առթիւ անոր ծննդեան Հարիւրամեակին* (Կոչնակ, 1934, *Սեպտեմբեր, էջ* 832):

[16] Մատենագրութիւնք Մկրտիչ Պէշիկթաշլեանի, *Բարիզ* 1904, *էջ* 51:

Բայց նախ կարդանք թէ ի՞նչ կը գրէ Երեմիա Չէլէպի․

Տող 133—160․

«Յիշեցէք ի վեր գնաս՝
Մին ժամու Յոյնս 'ւ ի Հայաստան․
Եէնի մահալէ կոչի՝
տաճկօք եւ հայք եզրիւ անկան:
Ուր գոյ մին Եկեղեցի՝
զոր շինեաց վանցի Զաքարիան,
Գիշոյ որդի վարդապետն՝
պատճառ այնմ առաքինութեան:
Անդ հասեալ եւ այնմ վախճանն՝
ի հողվարքն եղեալ ի տապան,
Ապ եւ Պօղոս Թօխաթցին՝
Միթէ տէրն ողորմի նոցայն:
Եէնկի մահալլէս ի վեր՝
Յաջ 'ւ ահեակ բազում այգեստան,
Շատքըն հայոց մինչ մերձ
ի սուլթան Մուրատին Զամլուճան»:

135րդ տողին մէջ Երեմիայի յիշած Եկեղեցին Եէնի մահալլէի (Նոր–Թաղ) Սուրբ Կարապետն է․ բայց գիտենք որ Իւսկիւտարի մէջ կայ նաեւ Սէլամիէ թաղին Ս․ Խաչը, զոր Երեմիա Չէլէպի չի յիշեր, զի Ստամպօլոյ Պատմութիւնը գրած ատենը (1664—1684) շինուած չէր այն դեռ:

* * *

Երեմիա կը համարի թէ վանցի Զաքարիան է շինողը Ս․ Կարապետ Եկեղեցւոյն, մինչ անկէ աւելի առաջ տեղի ունեցած է անոր հիմնարկութիւնը:

Իւսկիւտարի Վալիտէ ճամի, մանաւանդ՝

Ջինիլի ճամի *կոչուած մզկիթները երբ կառուցուեր են, Վանեցի ու Մշեցի շատ մը Հայեր իբրեւ գործաւոր բերուեր են հոն աշխատելու, եւ այդ պատճառաւ դէպի 1606 կամ 1607, դո՛ւցէ եւ աւելի առաջ, հաստատած են փոքրիկ մատուռ մը, ինչպէս կ՚աւանդէ Սարգիս Դպիր Սարաֆ Յովհաննէսեան, որուն այս մասին գրածը պիտի ցոյց տամ քիչ մը վարը:*

*Այս մատուռը տասն–տասներկու տարի յետոյ, վերոյիշեալ Զաքարիա վարդապետին ջանքերով նորէն կը շինուի 1617ին:*

* * *

*Յիշատակուած Զաքարիա վարդապետը, որ կոչուած է նաեւ Զաքէոս, երկիցս Կ. Պոլսոյ Պատրիարք եղած է. նախ՝ 1626—1629ին՝ յաջորդելով Կեսարացի Գրիգոր Պատրիարքին, եւ երկրորդ անգամ 1636—1639ին Խուլ Յովհաննէս Պատրիարքին տեղն անցնելով:*

*Պատրիարքներու պատմութեան մէջ իր մասին կարեւոր բաներ մը չենք գտներ, բայց եթէ՝ իր սովկալի՝ կոյր առելութիւնը Մովսէս շինարար Կաթողիկոսին դէմ եւ չահամոլ կողմնակցութիւնը Սահակ Գառնեցի կոչուած, ինքնակոչ եւ աթոռալիք կաթողիկոսին*[17]*:*

*Սոր կենսագրութիւնը, զոր 1911ին հրատարակեց Վիեննական Մխիթարեան Հ. Գրիգորիս Վ. Գալէմքեարեան*[18]*, կը ներկայացնէ*

---

[17] Առաքել Դաւրիժեցի, *տպ. Ամստերդամ*, էջ 338 *եւ տպ. Էջմիածն*, 1884, էջ 183:
[18] Հանդէս Ամսօրեայ, 1911, էջ 60—79:

զինքը իբրեւ հակամէտ կաթոլիկութեան. Խաչիկ Լեւոնեան ալ 1904ին կը գրէր թէ նա 1603ին Կ. Պոլսոյ մէջ ուսուցչութիւն ըրած է[19] ու 1606ին Վան դառնալով եղած է Առաջնորդ Վարագայ վանքին[20], որով՝ եթէ այդ թուականին՝ զայն գոնէ 30 տարեկան համարենք, ծնած կ՚ըլլայ՝ ըստ Հ. Գր. Գալէմքեարեանի՝ 1576ին[21]:

1610ին Զաքարիա՝ Էջմիածնի Մելքիսէդէկ կաթողիկոսին կողմէ նուիրակ կը խրկուի թէ՛ Կ. Պոլիս եւ թէ՛ Ռումէլի, եւ այդ պաշտօնները կատարած միջոցին կ՚այցելէ նաեւ Հռոմ:

1612ին կը վերադառնայ Կ. Պոլիս եւ քանի մը տարի անցնելէն յետոյ կ՚ըլլայ Պատրիարք: Այդ առենը պատրիարքութիւնը երեքի էր բաժնուած գլխաւորութեամբ Զաքարիայի՝ որ կ՚իշխէր Կ. Պոլսոյ եւ շրջականերուն. Խուլ Յովհաննէս Ռումէլիի Պատրիարք կ՚ըլլայ, իսկ Գրիգոր Դարանաղցի՝ Ռոտոսթոյի:

* * *

Կ՚ըսուի՝ թէ Զաքարիա Վանեցի աշակերտ եղած է Պետրոս Կարկառեցիի եւ Գրիգոր Դարանաղցիէն ալ կ՚ուսանինք թէ նա Երուսաղէմ ուխտի է գնացած Ծռազատիկին իմա՛ 1634ին[22]:

---

19 Բիւզանդիոն, 1904, Թիւ 2324:
20 Անդ:
21 Հանդէս Ամսօրեայ, 1911, էջ 60—79:
22 Ժամանակագրութիւն Գր. Դարանաղցւոյ,

*Երեմիա Չէլէպի 156րդ տողին մէջ զայն՝ չգիտեմ ինչո՞ւ, «Գիշոյ Որդի»ածականով կ՚որակէ. բայց նոյն այն տողին մէջ «Պատճառ տառաֆինութեան» զայն կը հռչակէ Ս. Կարապետ Եկեղեցւոյն շինութեանը հոգածու եղած ըլլալուն համար։*

*Զաքարիա Վանեցի վախճանած է Իւսկիւտար եւ թաղուած տեղւոյն Ազգային Գերեզմանատունը, ինչպէս կը յայտնէ Երեմիա 157րդ տողովը։*

*Անոր մահուանը առթիւ Գր. Դարանաղցի կը գրէ.*

«Եւ Զաքարէն յետ ամի միոջ ի բարձր տեղւոջէ ի վայր անկաւ եւ յետ քանի աւուրց յետոյ փոխեցաւ առ Աստուած ի թուին ՌՂԹ» (1640)[23]։

*Ըստ այսմ կը ջրուի այն աւանդութիւնը թէ նա 1644ին Հռոմ դաւանութեան գիր յղած ըլլայ[24]։*

*Զաքարիա Պատրիարք ունի փառաւոր մեծ շիրիմ մը, որ կը գտնուի Գերեզմանատան հարաւային կողմերը խոշոր երկաթագիր արձանագրութեամբ մը, սապէս.*

---

*Երուսաղէմ* 1915, էջ 180։ *Եւ* Միաբանք եւ այցելուք Հայ Երուսաղէմի, *Մկրտիչ Եպ. Աղաւնունի, Երուսաղէմ* 1929, էջ 142—143։

[23] Ժամանակագրութիւնք Գր. Դարանաղցւոյ, էջ 183. *եւ* Միաբանք եւ այցելուք Հայ Երուսաղէմի, էջ 143։

[24] Մայր Ցուցակ Ձեռագրաց, *Վիեննա*, էջ 112ը։

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ: ՏԱՄԲԱՐԱՆԻ
ԶԱՔԿԻԱՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ· ՆՈՐՈԳ
ՈՂ· ՍՈՒՐԲ ԿԱՐԱՊԵՏԻ ԵԿԵՂԵՑԻՈՅՆ
ՆՈՐ ՄԱՀԼԱՅԻ: ՎԱՂՋԱՆ
ԵՑԱՒ ՄԵՐՍ
ԹՎԻՆ ՌԿԶ

*Այս տապանագիրը զոր ես անձամբ քաղած եմ ժամանակին ու* Բազմավէպի *մէջ հրատարակած* 1918*ին*[25], *թուականի խոշոր սխալագրութիւն մը կը պարունակէ. Սարգիս Դպիր Սարաֆ Յովհաննէսեան իր Պոլսոյ Տեղագրութեան մէջ կը մատնանշէ զայն գրելով.*

*«Եւ առ յիւսքիւտար քաղաքի հեռի ի ծովեզրէն ի լեռնակողմն կոյս, զոն երկու թաղք բնակութեան Հայոց մօտ իրերաց հանդերձ երկու եկեղեցեօք: Որոյ առաջինն կոչի Սելամսըզ... եւ երկրորդ թաղն կոչի Եէնիմահալլէ եւ ունի սա բարեձեւ Եկեղեցի մի Ս. Կարապետին յօհաննու:*

*Զայս եկեղեցի՝ նախ շինեաց Վանեցի Զաքարիա վարդապետ, որ եղեւ Պատրիարք ի Կ. Պոլիս, ի թուին Հայոց ՌՀԶ* (1627)[26] *ուր ի գերեզմանատան անդ՝ կայ եւ տապան շիրմի նորին:*

*Բանզի՝ աւանդեն ծերունիքն ի վիճակի Սրբոյ Կարապետին թէ այս Եկեղեցին յառաջագոյն էր մատուռ ինչ ի տեղւոջ փոքրիկ աղբերն՝ որ կայ հանդէպ արտաքին դրան այժմու Եկեղեցւոյ ի կողմանէ վանուցն Երուսաղէմացւոց. որ ապա յայսկոյս անցուցեալ եւ յայսմ տեղւոջ զայն հաստատեալ շինեցին զայս եկեղեցի ի թուականին Հայոց ՌԿԶ* (1617), *հովաբարձութեամբ վերոյիշեալ Վանեցի Զաքարիա վարդապետին յորում ամի եղեալ է ի նմա եւ խաչ մի արծաթեայ եւ գրեալ*

---

[25] Բազմավէպ, *Վենետիկ* 1918, *էջ* 169—186:

[26] *Այս թուականէն տարի մը առաջ կը սկսի Զաքարիայի պատրիարքութիւնը:*

ի վրայ ՍՈՒՐԲ ԽԱՉՍ ՑԻՇԱՏԱԿ Է ԶԱՔԱՐԻԱ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ՕԳՆԱԿԱՆՈՒԹԵԱՄԲ ԽՍՔԻՍՏԱՐՈՒ ԺՈՂՈՎՐԴԵԱՆ Ի ԴՈՒՌՆ ՍՈՒՐԲ ԿԱՐԱՊԵՏԻՆ ԹՈՒԻՆ ՌԿԶ (1617)[62]: Այս Զաքարիա որ եւ կոչի Զաքէոս եղեւ ապա Պատրիարք Հայոց ի Կ. Պօլիս ի Թուականին ՌՀԶ (1627) եւ յետոյ վախճանեալ թաղեցաւ ի գերեզմանատանն Իւսքիւտարու: Որոյ տապանաքարն ոչ ունելով գիր, յետ ամաց բազմաց ի լինել Ղափանցի Գէորգ վարդապետին Պատրիարք ի Թուականին ՌՄ (1200 + 551 = 1751), նա զտապանաքար սորին նորոգել կամելով եւ զԹիւ վախճանելոյն ո՛չ գիտելով, ի յիշատակէ վերոյիշեալ արձանեայ խաչի նորին հանեալ, գրեալ տուեալ է ի վերայ քարին զԹուական զայն որ ո՛չ է այնպէս: Զի է այն Թուական շինուածոյ Եկեղեցւոյն եւ ո՛չ վախճանի նորին»:

Ուստի Սարգիս Դպիրին այն վաւերական գրածին համաձայն՝ հարկ է Զաքարիա Պատրիարքին շիրմագրին Թուականի սխալը ուղղել 1640, ինչպէս կ՚ուսանինք Գրիգոր Դարանաղցիէն:

* * *

Զաքարիա Պատրիարքին մօտերը Թաղուած է Երեմիա Չէլէպիի 158րդ տողին մէջ յիշած Պօղոս Թոխաթեցին, որուն շիրմաքարը բոլորովին հողածածուկ, հազիւ Թէ կ՚երեւէր մէկ ծայրէն:

Զաքարիայի տապանագիրը ընդօրինակած պահուս, Գերեզմանատան պահապանին վերցնել տուի այս շիրմին վրայ կուտակուած հողերը եւ ահա յայտնուեցաւ հետեւեալ երկաթագիր Արձանագրութիւնը.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՀԱՆԳՐՍ
ՏԵԱՆ, ԹՕԽԱԹՆՑԻ
ՊՕՂՈՍ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆ
ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ՈՐ ՓՈ
ԽԵՑԱՒ ԱՌ ՔՐԻՍՏՈՍ Ի
ԹՎԻՆ ՌՃԻԴ

*Ըսել է վախճանած է 1675ին եւ թերեւս եղած է Ս. Կարապետի Քարոզիչ, որու մասին չեմ կրցած ցարդ տեղեկութիւն մը գտնել։*

* * *

*Իւսկիւտարի Ս. Կարապետ Եկեղեցին դար մը եւ աւելի յետոյ, Կոլոտ Յովհաննէս մեծանուն Պատրիարքին օրով կը վերաշինուի 1727ին ինչպէս կ'աւանդէ Սարգիս Դպիր Սարաֆ Յովհաննէսեան՝ գրելով.*

«Եւ յետոյ ի հիմանէ շինեցաւ սա ընդ եկեղեցւոյ Սրբոյ խաչին[27], ի ժամանակս Յովհաննու Պատրիարքին Կոստանդինուպոլսոյ Կոլոտ կոչեցելոյ ի թուականին Հայոց ՌՃՀԶ» (1727)։

*Այս շինութեան մասին Հ. Միքայէլ Չամչեան ալ կը գրէ գրեթէ նոյնանման տողեր*[28]. *բայց դար մը եւ աւելի ետք կը սահի, ու* Ս. Կարապետ *դարձեալ կը վերաշինուի 1844ին փառաւոր եւ գեղեցիկ։ Դժբախտաբար 1887ին Էնիմահալլէի մեծ հրդեհին այրեցաւ այն, ու տարի մը վերջ Ունճեան Մաթոս եւ Աբիկ հարազատները իրենց առատաձեռն ծախքով*

---

[27] *Որ է Իւսկիւտար Սելամիէի Ս. Խաչ Եկեղեցին։*
[28] Չամչեան Պատմ. Հայոց, *Գ. Հատոր, էջ* 775։

*վերականգնեցին զայն փառաւորագոյն քան զառաջինն։*

*Այս վերաշինութիւնները կը հաստատուին Եկեղեցւոյն ճակատը զետեղուած ոսկեզօծ կրկնակ Արձանագրութիւններով, որոնք են․*

Ա․

ՏԱՃԱՐ ԱՍՏՈՒԾՈՅ ՅԱՆՈՒՆ ՍՐԲՈՅ ԿԱՐԱՊԵՏԻՆ
ՆՈՐՈԳԵԱԼ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ ՏԵԱՌՆ
ԱՍՏՈՒԱԾԱՏՐՈՅ ՍՐԲԱԶԱՆ
ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ, 1844 ՕԳՈՍՏՈՍ 6։
ԵԿԱ՛ՅՔ ԿԵՐԱ՛ՅՔ Ի ՀԱՑԷ ԻՄՄԷ ԵՒ ԱՐԲԷ՛Ք ԶԳԻՆԻ
ԻՄ ԶՈՐ ԽԱՌՆԵՑԻ ՁԵԶ
ՈՐ ԳԱՅ ԱՌ ԻՍ ՈՉ ՔԱՂՑԻՑԷ ԵՒ ՈՐ ՀԱՒԱՏԱՅ ՅԻՍ
ՄԻ՛ ԵՐԲԷՔ ԾԱՐԱՒԵՍՑԻ

Բ․

ՏԱՃԱՐՍ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ՅԱՆՈՒՆ
ՍՐԲՈՅՆ ԿԱՐԱՊԵՏԻ՝ ՀՐԿԻԶԵՑԱՒ ՅԱՄԻՆ
1887 ՅՕԳՈՍՏՈՍԻ 2, ԵՒ ՎԵՐԱՆՈՐՈԳԵԱԼ
ՊԱՅԾԱՌԱՑԱՒ ՅԱՄԻՆ 1888 Ի ՅՈՒՆԻՍԻ 12․
Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ Տ․
Տ․ ՄԱԿԱՐԱՅ Ս․ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ, ԵՒ Ի ՊԱՏՐԻԱՐ-
ՔՈՒԹԵԱՆ Կ․ ՊՈԼՍՈՅ Տ․ ՅԱՐՈՒԹԻՒՆ Ս․ ԱՐՔԵ-
ՊԻՍԿՈՊՈՍԻ, ԱՐԴԵԱՄԲ ԵՒ ԾԱԽԻՒՔ ԱՍՏՈՒԱԾԱ-
ՍԷՐ ՈՒՆՃԵԱՆ ՄԱԹՈՒՍ ԵՒ ԱԲԻԿ[29] ՀԱՐԱԶԱՏԱՑ
Ի ՅԻՇԱՏԱԿ ՀՈԳԵԼՈՅՍ ԾՆՈՂԱՑ ԻՒՐԵԱՆՑ ԿԱ-
ՐԱՊԵՏԻ ԵՒ ԹԱԳՈՒՀԻՈՅ ՈՒՆՃԵԱՆՑ։ Ռ․ Յ․ Լ․ Զ․

---

[29] *Ծանօթագրութիւններուս շարքին աւելորդ չըլլայ յիշատակել, թէ Աբիկ Ունճեան այդ պատուական անձը, իր շատ մը բարեգործութիւններովը նշանաւոր, եւ ամենէն սիրուած այս Հայը, վատաբար Հայ ձեռքէ մը սպաննուեցաւ Ղալաթիոյ Պողոտային վրայ 1905 Օգոստոս 13ին, եւ ես իրեն համար գրեցի Տապանագիր մը, զոր «Թ» ստորագրութեամբ հրատարակեցի Կ. Պոլսոյ* Արեւելք *օրագրին մէջ 29 Սեպտ. 1908ին։*

*Ըստ այսմ յայտնի կ'ըլլայ՝ որ Ս. Կարապետ իւր սկզբնական հաստատութենէն* (1607?) *ի վեր չորս անգամ վերաշինուած է՝ նախ՝* 1617*ին*, *յետոյ* 1727*ին*, *երրորդ անգամ* 1844*ին*, *իսկ չորրորդ ու վերջին անգամ ալ* 1888*ին* :

* * *

*Պատմական փառաւոր յիշատակներ ունեցող Եկեղեցիներէն է «Սուրբ Կարապետ». Կոլոտ Յովհաննէս Պատրիարք անոր կողքին բացած է* 1719—1720*ին առաջին Հայ Դպրոցը*[30] :

*Եկեղեցւոյն ճիշդ դէմն ալ ժամանակին շինուած է ընդարձակ վանք մը, ուր կը բնակէին եղեր Երուսաղէմ գացող-եկող միաբաններ, ինչպէս կ'աւանդէ Սարգիս Դպիր Սարաֆ Յովհաննէսեան՝ ըսելով.*

*«Եւ անդ մօտ ի նա, գոյ վանք ընդարձակ յանդիման Եկեղեցւոյն եւ է սա բնակութիւն Միաբանիցն Սրբոյ Երուսաղէմի գոլով բուն ստացուած վանուց Սրբոյն Յակովբայ՝ որ յԵրուսաղէմ : Ունի արտնթեր իւր վանքս այս եւ այգի մի մեծ եւ վայելուչ, հաստատուն որմովք շրջապատեալ, եւ է ի հիւսիսոյ կողմանէ եւ հայի վանքն ի վերայ նորին եւ յայնկոյս միոյ կողման որմոյ այգւոյն կայացեալ է գերեզմանատունն Հայոց ըի ծառաստանօք» :*

[30] Չամչեան, Պատմ. Հայոց, Գ., էջ 775: *Երեմիա Չէլէպիի տեռնն ալ Կ. Պոլսոյ կողմը բացուած է թէեւ Դպրոց մը, բայց չարահնար մատնութեամբ խափանուած է այն, ինչպէս կ'ողբայ Երեմիա* Ստամպօլոյ Պատմութեան, *Ը. Գլուխին*, 51 *եւ* 52 *տողերուն մէջ, որոնց պիտի անդրադառնամ :*

Այս մասին Հ. Ղ. Ինճիճեան ալ իր «Ամարանոց Բիւզանդեան»ին մէջ կը գրէ.

«Եէնիմահալլէ երկրորդ[31] թաղ սորին
Ուր եկեղեցի Սուրբ Կարապետին.
Անդ վանք ընդարձակ յանդիման նորին
Տուն միաբանից Երուսաղէմին»:

Եւ վերոգրեալ տողերը կը յայտնեն, թէ ո՛րչափ ընդարձակ տարածութիւն ունի եղեր Երուսաղէմի վանքին ստացուածքը, որ մինչեւ այսօր ճանչցուած է դեռ «Վանքին այգին» յորջորջումով եւ որ հետզհետէ այգիութենէ ելլելով եղած է զուտ հայաբնակ օղասուն մեծ թաղ մը, այժմ լքուած, ամայացած եւ հրդեհներով մոխրացած:

* * *

17րդ դարու ճիշդ սկիզբը հիմնուած այս Եկեղեցին իւր հնութիւնը յայտնող վերտառութիւն մը չունի, բացի Զաքարիա Պատրիարքին նուիրուած վերյիշեալ արծաթ խաչէն, որ չգիտեմ թէ կը պահուի՞ դեռ. միայն թէ տեսած եմ Եկեղեցւոյ հարաւային որմին դուրսը ագուցուած կարճ բայց հին Արձանագրութիւն մը, որ Քրիստոսի մկրտութիւնը ներկայացնող արձանիկի մը ներքեւը դրոշմուած է երկաթագիր 4 տող սապէս.

[31] Ամարանոց Բիւզանդեան, էջ 185: Հ. Ինճիճեան ո՛րչափ որ երկրորդ թաղ կ՚անուանէ Ս. Կարապետը կամ Եէնիմահալլէն, բայց տեսանք՝ որ հնութեան տեսակէտով առաջինն է այն, հաստատուած ըլլալով Ս. Խաչէն շա՛տ առաջ:

### ՅԻՇԱՏԱԿ Է· Ի ԴՈՒՌՆ Ս· ԿԱՐԱՊԵՏԻ· ԷՐԶՐՈՒՄՑԻ ՔԵՐԵՍՏԷՃԻ ԿԻՐԱԿՈՍԻՆ ԹՎՆ ՌՄԼԵ (1786)

*Սիրուն, ընդարձակ Եկեղեցի մ'է Ս· Կա-րապետը, քարուկիր, բարձրադիր, հաստա-տուն կամարով, լայն պատուհաններով, ունի աջ ու ձախ կողմերը մէկմէկ աշտարակաձեւ զանգակատուն, կրկնակ վերնատուն, հիա-նալի խորան մը, լուսաւոր պահարաններ եւ հիւսիսային կողմն ալ Ս· Մինասի նուիրուած մատուռ մը։*

*Տաճարին որմերը զարդարուած են տէ-րունական գեղեցիկ պատկերներով բոլորն ալ Հայ վրձիններու արտադրութիւններ, որոնց մէջ նկատելի են Պէհզատ Ումետիկ նշաւոր նկարչին եւ աոր նկարչուհի, վաղամեռիկ աղջկան գործերը։*

*Հին ժամանակներէ սկսած կաթողիկոս-ներ, նախկին պատրիարքներ եւ ուրիշ բարձր-աստիճան Եկեղեցականներ իջեւանած են հոն, բնակած են երկար ատեն, ու քարոզած, ինչպէս Կիրակոս Երեւանցի Պատրիարքը 1641ին*[32]*. Ջուղայեցի Յակոբ կաթողիկոսը*

---

[32] *Այդ միջոցին է որ Կղեմէս Գալանոս Կ· Պոլիս կու գայ եւ բժիշկի հագուստ հագած ու ծպտուած կ'անցնի Իւսկիւտար ու կ'երթայ Կիրակոս Պատրիարքին քով· Չամչեան, Գ·, 622: — 1662ին, երբ Կ· Պոլսոյ հին Ս· Նիկողայոս եկեղեցին կը քանդուէր, Երեմիա Չէլէպի կը հալածուի տաճիկներէ, ու կը ապաստանի իւր հօրը Տէր Մարտիրոսին եւ փարժապետին՝ Տէր Յով-հաննէսի հետ պահուըտել Իւսկիւտար, տե՛ս Հ· Ն·*

1666ին՝ երբ ուխտի կ՚երթար Երուսաղէմ[33]. եւ Աւետիք Պատրիարքը 1703 Յուլիս 14ին երբ գինքը հալածողներէն ծովու ճամբով խոյս տալով, կ՚ապաստանէր Ս. Կարապետի Վանքը[34]:

Ուրեմն Կարապետ կաթողիկոսը 1727ին Կ. Պոլսոյ Մայր Եկեղեցւոյն մէջ օծուելէն յետոյ, րաւական ժամանակ հիւրընկալուած է Երուսաղէմի Հոգետունը[35]. ինչպէս նաեւ Գրիգոր Շղթայակիրը[36]: Հոն առանձնացած է 1741ին Կոլոտ Յովհաննէս Պատրիարքը, երբ իր պաշտօնը կը յանձնէր իր սիրելի Յակոբ Նալեանին:

Այս նշանաւոր Պատրիարքն ալ 1764 Մայիս 13ին կ՚երթար կը քաշուէր Ս. Կարապետի Հոգետունը, երբ իր անբուժելի հիւանդութեանը պատճառաւ կամովին կը հրաժարէր Պատրիարքական պաշտօնէն, զայն հրապարակաւ ու անձամբ յանձնելէ յետոյ Գրիգոր Պասմաճեան Եպիսկոպոսին:

Եւ հոն՝ այդ վանքին մէջ նա կը վախճանէր, հա՛զիւ ամիս մը կեանք ունենալէ յետոյ, որոյ մասին Սարաֆ Յովհաննէսեան Սարգիս Դպիր իւր ձեռագիր աշխատութեանը մէջ կը գրէ հետեւեալը.

«Յամի տեառն 1764: Հայ" ՌՄԺԳ.

---

Ակինեան, Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան, Վիեննա 1933, էջ 44:

[33] Չամչեան, Պատմ. Հայոց, Գ., էջ 713:

[34] Անդ, Գ., էջ 622:

[35] Ժամանակագրական Պատմութիւն Ս. Երուսաղէմի, Աստուածատուր Եպ.ի, Երուսաղէմ 1890, Հատոր Բ., էջ 10:

[36] Տարեցոյց, Ազգ. Հիւանդանոցի, 1901, էջ 134:

մայիսի ԺԳ, յաւուր Եշբ. որ էր ԼԳում օրն յինանց. մեծ բարունապետն եւ յատուկ անուամբ աստուածաբան յորջորջեալն եւ եւարփեան վարդապետն Պատրիարքն Կոս" Պօլսոյ Յակոբ Արքեպիսկոպոսն, բնութեամբ տկար գոլով եւ նուազեալ յուժոյ, կարգեաց ինքն ի տեղի իւր, դպաամանի օղլու տէր Մովսէսի Թոռ Գրիգոր վարդապետն, ըղվէքիլն սրբոյ Երուսաղէմի Պատրիարք եւ Հոգաբարձու յազգին իւրոյ, եւ ինքն անձկութեանց եւ նեղութեանց հանգեաւ սակաւ ինչ ի յիւսկիւտարու վանքըն նըստելով» (տե՛ս Հատոր Ա., էջ 254 եւ Հատոր Բ., ծանօթագրութիւննեբուս, էջ 605—610):

* * *

Յովհաննէս Պատրիարք Կ. Պոլսեցին[37] 1813 Մայիս 13ին երբ փայծաղնացաւութեան ծանրապէս ենթակայ ըլլալով, կը հրաժարէր, կ՚երթար բնակիլ Ս. Երուսաղէմի Վանքը, ուր կը վախճանէր 1817 Յուլիս 26ին եւ կը թաղուէր տեղւոյն Գերեզմանատունը:

Նոյնպէս Աստուածատուր Պատրիարք Կ. Պոլսեցին, 1844ին հրաժարականը տալով[38], կ՚երթար բնակել Ս. Կարապետ՝ որ վերաշխ-

[37] Զգուշ, ինչո՞ւ համար Օրմանեան Սրբազան եւ ուրիշներ՝ այն Պատրիարքը Բարբերդցի համարած են, մինչ Աւետիս Պէրպէրեան իւր պատմութեան մէջ՝ ճիշդ 5 տեղ (էջ 10, 71, 73, 444, 452) զայն Կ. Պոլսեցի կը հրատարկէ, ու Տարանագիրն ալ զանիկա Պոլսեցի կ՚արձանագրէ:

[38] Պատմ. Աւետիս Պէրպէրեանի, էջ 274, 280, 508, 521:

նուած էր իր օրով։ Հոն կը վախճանէր նա 1846ին ու կը թաղուէր Ազգային Գերեզմանատունը՝ Զաքարիա Պատրիարքին ճիշդ քովը։

Հնար չէ գրել դեռ ամբողջական ցանկը ուրիշ եկեղեցականներու, որոնք հիւր եղած են Եէնիմահալլէի Եկեղեցին ու քարոզած․ կը բաւականանամ յիշատակելով մեր օրերու Քարոզիչները, զորս ճանչցած եմ, այսինքն՝ Արիստակէս Եպ․ Ռափայէլեան (Պատրիարքական Տեղապահ)[39], Յովհաննէս Եպիսկոպէս Եղեսեան, Մատթէոս Արք․ Իզմիրլեան (Պատրիարք Կ․ Պոլսոյ, ապա Կաթողիկոս Էջմիածնի), Ներսէս Եպ․ Դանիէլեան (Սսական վարդապետ)։ Եղիշէ Արք․ Դուրեան (Պատրիարք Կ․ Պոլսոյ եւ Երուսաղէմի), Մկրտիչ Եպ․ Աղաւնունի, Ղեւոնդ Եպ․ Դուրեան եւ ուրիշներ։



Ամէն տարի՝ Վարդավառի տաղաւարին, փառաւորապէս կը կատարուէր Եկեղեցւոյն Տօնը, եւ Մշեցի–Վանեցիներու երկսեռ հոծ բազմութիւն մը կը դիմէր հոն յիշելով «Մշու Սուլթան Ս․ Կարապետը» եւ աղաւնիներ

[39] Սա 1866ին Ս․ Կարապետ եկեղեցւոյ Քարոզիչ ըլլալով, իրեն համար ընդօրինակել կու տայ Կանոնագիրք (այբուբենական) Յակոբ Դպրի անուն գործը՝ 1800ի օրինակին վրայէն։ Արիստակէս Եպիսկոպոսի սեպհական այդ ձեռագիրը կը պահուի այժմ Վիեննայի Մխիթարեանց քով։ Տե՛ս Հ․ Յ․ Տաշեան, Մայր Ցուցակ, էջ 945—946։

Թողնելով ուխտաւորները իրարու վրայ ջուր կը սրսկէին, հայրենի հնաւանդ գեղեցիկ սովորութիւնները վերյիշելու երազներով. բայց այս բոլորը կորսուած է այժմ. հազիւ ցանցառ խումբ մը տարին անգամ մը կ'երթայ հոն՝ Վարդավառի տօնին, ա՛յն ալ օրուան Պատրիարքին ներկայութեանը պատճառաւ:

Եկեղեցին ունեցած է միշտ լաւ երգեցողութիւն շնորհիւ համբաւաւոր երաժշտապետ Ռէթէոս աղայի, որու մահէն յետոյ իր աշակերտը Երմոգ Գույումճեան եղաւ յաջորդը, մեծ հեղինակութիւն ցոյց տալով:



Ս. Կարապետ Եկեղեցին չա՛տ կանուխէն ունեցած է իրեն կից Դպրոց, զոր՝ ինչպէս քիչ մը վերեւ ըսած եմ, բացած է Կոլոտ Յովհաննէս բազմերախտ Պատրիարքը 1719—1720ին, ըստ այմ կրնանք ընդունիլ թէ Կ. Պոլսոյ ազգային կրթութեան գրեթէ առաջին օրրանը եղած է Ենիխմահալլէ թաղը:

Չունինք դժբախտաբար յայտնի տեղեկութիւններ Կոլոտի բացած այդ վարժարանի մասին, բայց կ'ենթադրեմ՝ թէ բաւական կանոնաւոր եղած ըլլալու է այն՝ կիրթ ու ընտիր Եկեղեցականներ հասցնելու համար:

Հոն հարկաւ դասախօսութեան պաշտօն վարեց Ամուճայ մականուանեալ Գասպար Դպիր Սեբաստացին, որու անունը մեծ գո-

*վեստով յիշատակած են՝ Կոլոտ եւ Նալեան մեծագործ Պատրիարքները:*

*Կ՚արժէ՝ որ ասոնց գրի առած գովաբանութիւնը զետեղեմ հոս, քաղելով Բաբգէն Ծ. Վ.ին (այժմ Կաթողիկոս Կիլիկիոյ) պատրաստած* «Կոլոտ Յովհաննէս Պատրիարք» *վերնագիրը կրող կարեւոր աշխատութենէն*[40]:

*Կոլոտ* 1729*ին, Խարբերդցի Ղուկաս գիտնական վարդապետին Լատիներէնէ թարգմանել կու տայ՝* Սկոթոսի Աստուածաբանութիւնը[41], *ու անոր մէջ ինքն ալ կը գրէ երկար Յիշատակարան մը, ուր ի միջի այլոց Գասպար Դպիրի մասին կը կարդանք հետեւեալը*[42]. *«Զհարազատն մեր ի Քրիստոս զԳասպար Դպիրն Սեբաստացի, որ բազում երախտիս ունի ի վերայ մանկանց մերոց համբակաց»:*

*Իսկ Նալեան Յակոբ Պատրիարք իր* «Մեկնութիւն Նարեկի»[43] *հսկայ երկասիրու–*

---

40 *Վիեննա* 1904, *էջ* 183—188:

41 *Այս Գիրքին թարգմանութիւնը ձեռագիր է եւ կը պահուէր Ղալաթիոյ Ազգային Մատենադարանին մէջ: Անոր Յիշատակագրութիւնը կարեւոր է եւ կը վերջանայ սապէս՝* «Արդ եղեւ թարգմանութիւն սոյն Աստուածաբանական գրքոյս ՌՃՀԸ (1729), ի քաղաքն Կ. Պոլիս, ընդ հովանեաւ Սուրբ Կարապետ եկեղեցւոյն որ յիւսկիւտար»: Կոլոտ, *էջ* 188:

42 *Այս յիշատակութիւնները ընդօրինակած է նաեւ Ազատունի Մկրտիչ Սրբազան, իր* 1929*ին հրատարակած՝ Միաբանք եւ Այցելուք Հայ Երուսաղէմի երկին մէջ, էջ* 60—61:

43 *Մեկնութիւն Նարեկի, Յակոբ Նալեանի, Կ. Պո–*

*թեանը մէջ կը գրէ․ «Ցիշեցէք զդաստիարակն եւ զմանկամարդն լուսահոգւոյ Հօր մերոյ (այսինքն Կոլոտի) Դպրատան Նորանկատ զՀայրապատին ծերունի զորիրացու Գասպար* Մեծ Ամուճա *կոչեցեալն Սեբաստացի, որ բազում երախտիս ունի ի վերայ մեր եւ այլոց աշակերտաց լուսահոգւոյն, յորոյ վատարանդութեան ժամանակի լեալ էր ատղնջական եւ պատսպարան եւ փոխարերարար կաթնասու իմաստից եւ մատակարար առ այլս»:*

*Բազմերախտ դաստիարակ մը ուրեմն եղած է այս* «Գասպար մեծ-ամուճայն», *որ իր ծախքովը տպագրել իսկ տուեր է Նաղեանի* «Հոգեշահ» *եւ* «Մեկնութիւն Նարեկի» *գործերը, ինչպէս կ'ուսանինք՝ այս առթիւ Բարգէն Սրբազանի «Կոլոտի» կենսագրութեանը մէջ գրածէն (էջ* 183—148) :

* * *

*Գասպար Սեբաստացին* 1751*ին ուխտի կ'երթայ Երուսաղէմ ու հոն կը կնքէ իր բեղմնաւոր կեանքը․ կը թաղուի Ս․ Փրկչի Վանքին մէջ եւ Մխարանութիւնը իր վրայ կը կանգնէ գեղեցիկ շիրիմ մը հետեւեալ* 18 *տող Արձանագրութեամբ, զոր Աղաւնունի Սրբազան արտագրած է՝ «Մխարանք եւ Այցելուք Հայ Երուսաղէմի» Հատորին մէջ, էջ* 60—61 : *Ահաւասիկ այն․*

---

*լիս* 1745, *էջ* 1136․ *նաեւ* Կոլոտ, *Բաբգէն Սրբազանի, էջ* 65:

Ի ԹՎԻՆ ՓՐԿՉԻՆ ՄԵՐՈՅ (= 1751)
ԲԱԶՄԱՑ ԻՐԱՑ ԸԶՓՈՐՁ ԱՌԻ ԸՍՏ ՄՏԱՑ․
ԸՍՏ ԻՄ ԿԱՐԻ ՃԱՇԱԿԵՑԻ ՆՈՒՐԲ ԻՄԱՑ
ՈՐԴԻՍ ԱՐԹՆՈՑ ՈՐ ԱՐԴ ՆՆՋԵՄ ԽՈՐ ՔՆԱԾ,
ՈՐ ՁԱՅՆ ՀԱՒՈՒՆ ՅԱՐՈՒՑԱՆԷ ԱԿՆ Ի ԲԱՑ։
ՏԵԱՌՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԵԾ ՐԱԲՈՒՆՈՅՆ ԴՊՐԱՏԱՆ
ՈՐԴԻՈՑ ՆՈՐԻՆ ԴԱՍՏԻԱՐԱԿ ՔՐՏՆԱՋԱՆ,
ՁԻՆՉ ԵՒ ԱՌԻ Ի ՍՈՒՐԲ ՎԵՀԷՆ ԱՆՆԸՄԱՆ․
ՋԱՅՆ ԾԱԽՍԵՑԻ Ի ԿԻՐԹ ՈՐԴԻՈՅՆ Ի ՅՈՒՍՄԱՆ,
ԱՄԷՆ ՈՒՍՄՈՒՆՔ ՄԱՆԿԱՆՑ ՎԵՐՋՆՈՑ ՎԱԽՃԱՆԻ,
ԻԲՐՈՒ ՄԸՂԵՂ ՇԸՆՉՄԱՄԲ ՀՈՂՄՈՅ ԱՆՑԱՆԻ․
ՄԻԱՅՆ ՀԱՒԱՏՆ ԵՒ ԲԱՐԻ ԳՈՐԾՆ ԸՆՏԱՆԻ,
ԱՆՋՈՅԳ ՃՐԱԳ ՎԵՐՆՈՑ ՈՒՂՂՈՅ ԱՐԺԱՆԻ․
ԽԵՂՃՈՒԿ ԳԱՍՊԱՐ ՄԵԾ ԱՄՈՒՃԱՅ ԿՈՉԵՑԵԱԼ,
ՍԵԲԱՍՏԱՑԻ ՈՐԴԻ ԱՐԹՆՈՅ ԱՆՈՒԱՆԵԱԼ,
ՀԱՄԱՅՆԻՑԸԴ ՈՅՔ ՀԱՆԴԻՊԻՔ ԳԹԱՑԵԱԼ,
ԽՆԴՐԵՄ ԱՍԵԼ ԼԻՑԻ ՑԷԷՆ ՈՂՈՐՄԵԱԼ,
Ի ԹՎԻՆ ՀԱՅՈՑ ՌՃ ՄԱՅԻՍԻ ՄԷԿԻՆ (1751)։

*Այս Գասպարի անունը կը կարդանք նաև Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ Եկեղեցւոյն* «Ս. Յակոբ Մծբնայ Հայրապետի» *մատրան դու-ռին վրայ յատուկ արձանագիր Ցիշատակա-րանով մը՝ որ է.*

ԱՍՏՈՒԾՈՎ ՇԻՆԵՑԱՒ ՍՈՒՐԲ ՏԱՃԱՐՍ ՀԱՆԴԵՐՁ ՍԵՂԱՆԻՒՆ
ՍՐԲՈՅՆ ՅԱԿՈԲԱՑ ՄԾԲՆԱՑ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ Ի ՅԻ-ՇԱՏԱԿ՝ ՊՕԼՍՈՅՍ
ՍՐԲԱԶԱՆ ՊԱՏՐԻԱՐՔԻ ՀԱՐԱԶԱՏ ՍՊԱՍԱՒՈՐ ԳԱՍ-ՊԱՐ ԴՊՐԻ
ԵՒ ԾՆՈՂԱՅՆ ԳՐԻԳՈՐԻ ԵՒ ԵՂԻՍԱԲԷԹԻ ԵՒ ԶԱՐ-ՄԻՑ ՆՈՐԻՆ
ՍԵԲԱՍՏԵԱՆ Ի ԹՎԻՆ ՌՃՁԲ (1733)[44]։

[44] Կենսագրութիւն Կոլոտի, էջ 125։

*Եւ այս Ցիշատակարաններով եւ Արձանագրութիւններով դիւրին է գիտնալ, թէ ո՛ր աստիճանի կրթասէր, անշահախնդիր ու լաւ դաստիարակ մը եղած է Գասպար Դպիր, որուն անունը արժանի է արդարեւ նշանակուելու Կ. Պոլսոյ հայ ազգային կրթական պատմութեան մէջ։ Ղալաթիոյ Ցիշատակարանին մէջ իւր ծնողքը Գրիգոր է նշանակուած, իսկ Տապանագիրը զինքը երկիցս* «Որդի Արթնոյ» *կը կոչէ, այս ինքն* Գրիգոր *որ կը թարգմանուի* Արթուն :



*Ինչպէս քիչ վերեւ կարդացինք, Սարգիս Դպիր Սարաֆ Ցովհաննէսեան կը գրէ, թէ՝ Ս. Կարապետի դէմը կանգուն էր Երուսաղէմի ընդարձակ Վանքը, այն՝ որ յետոյ* Ճեմարան *անունով մկրտուեցաւ։*

*Անոր հիմնարկութեան ճիշդ թուականը յայտնի չէ մեզ, բայց Ուլնեցի Կարապետ կաթուղիկոսի ինքնակենսագրութեան*[45] *վրայ յենլով կ՚աւանդուի թէ՝ հաստատուած է այն Երուսաղէմի Պատրիարք Մարտիրոս Կաֆայեցիէն, որ երկիցս Պատրիարք եղած է Սուրբ Քաղաքին, նախ՝* 1677—1680, *եւ յետոյ* 1680—1683. *բայց որովհետեւ սա նախապէս Կ. Պոլսոյ ալ Պատրիարք եղած է* 1659—1660[46].

---

[45] Երեւակ, *Տերոյենց Պատուէլիի, Կ. Պոլիս* 1859, *էջ* 330։

[46] *Տեսնել* Ժամօթագրութիւնք Երեմիա Չէլէպւոյ, *Հատոր Ա., էջ* 152, 154, 156, 165 *եւ* 168։

ուստի կրնանք ընդունել, թէ այդ վանքը շինուած է սոյն թուականներուն, բայց ապա՝ աւելի ընդարձակուած ու ճոխացած՝ Գրիգոր Շղթայակիր եւ Կոլոտ Յովհաննէս Պատրիարքներուն բարեջան տքնութիւններով[47]:

Մկրտիչ Եպիսկոպոս Աղաւնունի՝ իր «Միաբանք եւ այցելուք Հայ Երուսաղէմի» երկասիրութեանը մէջ (էջ 236) կը յիշատակէ թէ՝ «Ղըյմաք Խուսկիւտարցի, անուն անձ մը Գրիգոր Պատրիարք Պարոնտէրի օրով (1615—1647) Ս. Յակոբի Վանքին կը նուիրէ այգի մը Սկիւտարի մէջ եւ կենդանութեանը նոյն այգիին արդիւնքը կը ղրկէ Երուսաղէմ: Այս այգին, կը գրէ Աղաւնունի, կից էր Հայոց գերեզմանատան, եւ կը յաւելու՝ թէ Մարտիրոս Կաֆայեցի Պատրիարքին հիմնած եւ Գրիգոր Պատրիարք Շղթայակիրին 1726ին ընդարձակած 'Հոգետունը, շինուած էր այս այգիին մէջ, ուր յետոյ կառուցուեցաւ Երուսաղէմի ձմեռարան վարժարանը: Ղըյմաթ Խուսկիւտարցիին նուիրած այգիին վրայ հետզհետէ աւելցած են ուրիշ գետիններ»:

Բազմաթիւ սենեակներով եւ լայն սրահներով կառուցուած փայտաշէն ընդարձակ ահագին շէնք մ'էր այս Վանք կամ Հոգետուն կոչուածը, զոր պատանեկութեանս պտտած եմ շատ անգամներ. օդասուն ծովահայեաց

---

[47] Տէր Հմայեակ Քահանայ Էքսէրճեան կը սխալի ուրեմն իր Յիշատակարան Հնգեակ Յոբելինի Ս. Խաչ Եկեղեցւոյ աշխատութեանը մէջ (էջ 6), երբ կը գրէ թէ այդ վանքը 1721ին հաստատած է Գրիգոր Շղթայակիր Պատրիարքը:

*դիրք մը ունէր, մէջը կար հոսուն աղբիւրներ, որոնց մէկ հատը կը գտնուէր դուրսը փողոցին վրայ, ժողովուրդին ջուր բաշխելու եւ կը կրէր գեղագրուած զարդանկարներով պարուրուած 4 տող երկաթագիր արձանագրութիւն մը սապէս.*

ՋՐԱԲԵՐ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ ԱՂԲԵՐՍ ԲՈԼՈՐՈՎԻՆ ԷԻՆ ԽԱՆԳԱՐԵԱԼՔ, ՎԱՍՆ ՈՐՈՅ ՎԵՐՍՏԻՆ ՇԻՆԵՑԱՒ, ՏՐՕՔ ՈՂՈՐՄՈՒԹԵԱՆ, ՄԱՀՏԵՍԻ ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐԻ ՈՐԴԻ՝ ՅԻՇԱՏԱԿԱՄԷՐ ՄԱՀՏԵՍԻ ՅԱՐՈՒԹԻՒՆԻՆ ՈՐ Ի ԽԱՍԳԻՒՂՆ ՌՄԼԳ (1784)։

*Այս Արձանագրութիւնը կրող քարը, որուն լուսանկարը հանել տուած ու հրատարակած եմ*[48]*, փոխադրուած է այժմ Նորաշէն Լ. Սէմէրճեան Ճեմարան դպրոցին պարտէզը. բայց գրուածը ցոյց կու տայ թէ աւելի հին էր աղբիւրը, որուն ջուրը բերուած էր չա՛տ հեռուներէն։*

*Այս Վանքը ամբողջովին այրեցաւ* 1887*ին Ս. Կարապետ եկեղեցւոյն հետ. անոր վերաշինութենէն յետոյ յիշատակածս աղբիւրը պիտի վերահոսէր Եկեղեցւոյն ետեւը, բայց տխրառիթ դէպքեր արգելք եղան սոյն բարեգործութեան, ինչպէս յայտնած եմ* Հայ բժշկական Արձանագրաբանութիւն *աշխատութեանս մէջ* (*էջ* 80—81)։

* * *

[48] Մանզումէ, *Կ. Պոլսոյ* 1901, *Թիւ* 104 *եւ* Հայ Բժշկական Արձանագրաբանութիւն, *Վենետիկ* 1931, *էջ* 78։

*Երուսաղէմի Վանքին սեպհական այս հոգետունը, ժամանակի ընթացքին տակաւ իր ձեւը փոխած ու եղած է վարժարան եւ ճանչցուած* «Սուրբ Կարապետի Դպրոց» *անունով․ հոն իրենց նախնական կրթութիւնը ստացած են մեծանուն թժիշկները՝ Տոքթ․ Սերվիչէն*[49] *(Սերովբէ Վիչէնեան) եւ Տոքթ․ Նահապետ Ռուսինեան*[50], *ինչպէս նշանակած եմ իրենց կենսագրութեանը մէջ։*

*Այս Դպրոցը* 1838 *Սեպտեմբեր* 13*ին, Աղաւնի Ստեփան Պատրիարքի օրով եւ նախաձեռնութեամբ Սերվերեան Յովհաննէս ու Պալեան Կարապետ ամիրաներու կ՚ըլլայ՝* ճեմարանն գիշերօթիկ բարձրագոյն վարժարան[51]*։ Ազգային անդրանիկ գիշերօթիկ վարժարանն էր այս, որուն Տնօրէն կը կարգուի Յակոբիկ Մանուէլեան կարող ուսումնականը․ ուսումնապետ կ՚որոշուի Զամուռճեան, մեծահմուտ Տերոյենց Յովհաննէս պատուելին, եւ դասատու կ՚անուանուին՝ մեծանուն դիտնական Խաչատուր Պարտիզպանեան եւ յայտնի գրագէտ Պուէտ Խաչատուր Միսաքեան։*

*Ամէն ծնողք կը փութան իրենց զաւակները ղրկել հոն․* ճեմարանը *այսպէս կ՚ունենայ ընտիր ու յառաջադէմ աշակերտներ, որոնք կ՚ըլլան յետոյ ազգօգուտ, ազգաշէն անհատներ, որոնցմէ յիշատակութեան արժանի*

[49] Հանդէս Ամսօրեայ, 1893, էջ 322։
[50] Անդ, 1902, էջ 41։
[51] Յայտարարութիւն ճեմարանի, *Տպ. Կ. Պոլիս* 1840, էջ 10։

են՝ Ստեփան Ասլանեան բժիշկ (բաչա), Կարապետ Իւթիւճեան՝ Մասիս թերթի խմբագիրը, Աբրահամ Ֆրէնկեան (Ազգ. Պատրիարքարանի գործակատար), Բարունակ պէյ Ֆէրուհխան (բժիշկ), Յովսէփ Պէյրան (բժիշկ) եւ ուրիշներ:

Ազգը մեծ գուրգուրանք ցոյց կու տայ Ճեմարան-Վարժարանին, որ հետզհետէ կը ստանայ փայլուն վիճակ. Տպարան մ՚ալ կ՚ունենայ եւ կը հրատարակէ Տարեցոյցներ եւ ուրիշ գիրքեր[52], բայց դժբախտաբար հազիւ երկու տարուան շրջան մը կը բոլորէ, եւ ահա կը սկսի խաղալիկ ըլլալ ամիրայական քմահաճոյքներու կամ եսամոլութիւններու, որուն համար ժողովուրդին մէջ յառաջ կու գայ իրարանցում՝ 13 Ապրիլ 1841ին, ինչպէս կ՚աւանդէ Աւետիս Պէրպէրեան գրելով.

«Իբրու երեք հարիւր ոգիք ի ժողովրդենէ Հայոց հաւաքեցան ի Ճեմարանն Իւսկիւտարու թելադրութեամբ Յակոբիկ աղայի Մանուէլեան, Տնօրէնին յիշեալ Ճեմարանին եւ ուխտեցին գրով եւ կնքով յառաջացուցանել զՃեմարանն անկախ ի հպատակութենէ ամիրայից[53]»:

Ժողովրդային այս շարժումը սակայն օգուտ մը չ՚ունենար եւ Ճեմարանը առօք-փառօք կը գոցուի՝ 1841 Հոկտեմբեր 3ին[54]:

---

52 Տիպ ու Տառ, *Թէոդիկի*, էջ 75—76: Տարեցոյց Ազգ. Հիւանդանոցի, 1901, էջ 212:

53 Պատմ. Ա. Պէրպէրեանի, էջ 508:

54 Պատմ. Աւետիս Պէրպէրեանի, էջ 508:

Փակուելէն յետոյ Թուրք կառավարութիւնը զայն կը գրաւէ ու կը վերածէ զինուորական Հիւանդանոցի:

Այս վիճակը կը պահէ մինչեւ 1845, որ ատեն Մատթէոս Պատրիարք Չուհաճեան՝ մեծ Եպարքոս Րէշիտ փաշային շնորհաւորութեան երթալով, նոյն պահուն կ'աղերսէ որ Ճեմարանը վերադարձուի Հայ Ազգին: Պատրիարքին այս խնդրանքը ապարդիւն չի մնար, Ազգը նորէն կը տիրանայ շէնքին եւ 1846ին նոր Ծրագիրով՝ դարձեալ իբրեւ Ճեմարան–Վարժարան կը վերաբանայ զայն[55], որ չարաբախտաբար նախկին փայլն բնա՛ւ չունենար:

Հազիւ 5 կամ 6 տարի կը շարունակուի՝ այն ալ շա՛տ կաղն ի կաղ եւ 1851ին նոյն շառաչուն տիտղոսովը կը փոխադրուի Ազգ. Հիւանդանոցը՝ ուր վաղանցիկ կեանքով մը կը վերջանայ խաղաղ[56]:

* * *

Եէնիմահալլէի Ճեմարանը այնուհետեւ կ'ըլլայ պարզ Թաղային վարժարան մը երկսեռ, որ արդարեւ հետզհետէ կը բոլորէ լաւագոյն շրջաններ եւ Ազգին կ'ընծայէ ուսեալ ընտիր զաւակներ, որոնք ունին անմահ անուն, ինչպէս բանաստեղծ Պետրոս Դուրեանը, եւ ասոր Եղբայրները Յարութիւն եւ Միհրան (ապա Եղիշէ Արք. Դուրեան Պատրիարք Երու–

[55] Անդ, էջ 272—273:
[56] Անդ, էջ 529—530:

սաղէմի), գրագէտ Պօղոս Պօլիկեանը, Խաչիկ Ուղուրիկեանը (պատմագէտ), Տիգրան Ադամեանը (խմբագիր), Վարդան Լութֆեանը (բանաստեղծ), Մելքոն Կիւրճեանը (գրագէտ), Տիկին Զապէլ Ասատուրը (Սիպիլ քերդողուհի), Թէոդիկը եւ ուրիշներ՝ որոնց ցանկը երկար է գրել։

Այս վարժարանին մէջ դասախօսած են՝ Սիմոն Ֆէլէկեան, Սրապիոն Թղլեան, Տաճատ Լութֆեան, Բասկալ Թիւլեան, Բարսեղ Տիւրկէրեան, Միհրան Դուրեան (Եղիշէ Սրբազանը), Մելքոն Կիւրճեան, Սիմոն Գափամաճեան, նաեւ Սիպիլ եւ ուրիշներ։

Մատթէոս Սրբազան Իզմիրլեան (ապա Պատրիարք եւ Կաթողիկոս) երկար տարիներ կրօնագիտութեան դասատու եղած է հոն եւ միջոց մ՚ալ Տէր Խորէն Քահանայ Փէհլիվանեանը, իբրեւ ուսուցիչ Հայերէնի եւ Ֆրանսերէնի։ Բայց ասոնցմէ շատ առաջ ալ դասախօսած են հոն Տէր Մեսրոպ Պաղտատլեան ուսումնական քահանայն[57] եւ Տէր Թադէոս Լութֆեան քաջ ֆռանսագէտ քահանայն[58]։

---

[57] Այս Տէր Մեսրոպի զաւակներն էին՝ 1. Պերլինի Օսմ. Դեսպանատան առաջին թարգման Օհան էֆէնտի Պաղտատլեան (հեղինակ՝ «Ես իմ որդիս եմ» անուն կատակերգութեան)։ 2. Յայտնի Տպարանապետ Գարեգին Պաղտատլեան. եւ 3. Հէլուէտիոյ մէջ Օսմ. Հիւպատոս Մինաս Պաղտատլեան, որ դպրոցակիցս եղած է։

[58] Տէր Թադէոս ալ հասուցած էր նշանաւոր զաւակներ՝ որոնք էին. Վարդան Լութֆեան (բանաստեղծ Պետրոս Դուրեանի ընկերը վաղամեռիկ), ֆրանսերէնի դասատու Գարեգին եւ Տաճատ Լութֆեան։ Այս վերջինը եղած է իմ ֆրանսերէնի ուսուցիչս։

*Ինչպէս յիշած եմ վերեւ, այս Դպրոցը 1887ին ամբողջովին հրոյ ճարակ եղաւ, անցեալի քաղցր յիշատակները օդին մէջ ցնդելով՝ զինքը մոխրացնող կրակէն ելած մուխերուն հետ· այլ տարիներ յետոյ այդ վարժարանին նախկին սաներէն Լեւոն Սէմէրճեան, իր անձնական խնայողութիւնէն մաս որոշելով, 1911ին վերաշինեց իր մանկութեան կրթական յարկը եւ օժտեց թաղը կոկիկ ու սիրուն քարուկիր դպրոցով մը, որ կը կառավարուի Ս. Կարապետ Եկեղեցւոյն համեստ եկամուտներով եւ ուր թաղին երկսեռ աղքատիկ զաւակները կ՚երթան ցարդ իրենց մտքի ճարակը առնելու:*

*Վարժարանը կանգուն է պարտէզի մէջ եւ ճակատը կը կրէ արձանագրութիւնս.*

ՍԵՄԵՐՃԵԱՆ
ՃԵՄԱՐԱՆ ԵՐԿՍԵՌ ՎԱՐԺԱՐԱՆ
1911

*Ճեմարան–վարժարանէն ոչ շատ հեռու բացուած են մասնաւոր վարժարաններ ալ, ինչպէս* Մկրտիչ Բակլաճեանի *եւ* Սիմոն Գափամաճեանի *հաստատածները, որոնք սաստիկ կեանք մը ունեցած են:*

* * *

*Եէնիմահալլէ Ս. Կարապետի թաղը եղած է միշտ զուտ Հայ ժողովրդական ու արհեստաւոր*[59] *դասակարգի բնակավայրը, մինչ իր*

[59] *Ամէն ինչ հայկական էր Եէնիմահալլէի մէջ·*

դրացի Սեւամիկ Ս. Խաչի թաղը աւելի ջոջ ամիրաներու:

Եէնիմահալլէի մէջ ապրած են բազմաթիւ մեծանուն ուսումնականներ, բաւական ըլլայ յիշել անոնց մէկ քանին, որ կենդանի յիշատակներ թողած են ազգային ժամանակակից պատմութեան մէջ:

Մատթէոս Իզմիրլեան[60], որ վարդապե–

---

զուցէ անյարմար ըլլայ յիշել հոս, թէ Եկեղեցւոյն ճիշդ մուտքի դրան դէմը կար Բայմաքեան Հայուն ամենաընդարձակ գինետուն — ճաշարանը, որ ուխտարի գլուխ եփելու մասնագիտութեան մեծ համբաւն ունէր եւ ուր ամէն կողմէ կը դիմէին յատկապէս հոն պատրաստուած այդ համեղ կերակուրը ճաշակելու, եւ միանգամայն ախորժակը բանալու ազնիւ օղիով, զոր Բայմաքեան ինքը կը պատրաստէր խաղողի քամածոյ չանչէն:

Եկեղեցւոյն հիւսի կողմն ալ՝ Ցոյն թաղին մօտ կը գտնուէր մահտեսի hաճի թագւորին փուռը, որուն արտադրած կարկանդակներն ու փոխեղները այնքան ախորժահամ էին, որ Իւսկիւտարի բոլոր բնակիչները՝ Հայ թէ՛ Թուրք, թէ՛ Ցոյն երամովին կ'երթային անկէ ուտելու կամ գնելու: Այդ փուռին աշխատաւոր հացագործները ամէնքն ալ Վանեցի, Մշեցի, Բալուցի եւ այլն հայեր էին, շատ մաքուր փուռ մ'էր ուր աշակերտ եղած տղեններ խմբովին կ'երթայինք երբեմն, թէ փոխեղ առնելու, եւ թէ՛ կարդալու անոր հնոցին ճակատը փորագրուած Արձանագրութիւնը՝ որ էր, «Ի ԹԷԶ՝ ՏԷՐ ՅՈՒՍԱՑԱՅ, ՄԻ՛ ԱՄԱՉԵՑԻՑ ՅԱՒԻՏԵԱՆ»: Բայց այս բոլորը անհետ եղած են այժմ: Եէնիմահալլէ թաղը հրդեհներու երեսէն ամայացած է. հայ բնակչութիւնը հոն զգալապէս նուազած՝ կը բնակի ցիրուցան՝ տաղաւար–տնակներու մէջ. սակայն Ս. Կարապետի բարձրաբերձ եկեղեցին կը մնայ կանգուն, իբրեւ արձան յիշատակի:

[60] Իզմիրլեան Սրբազան, ինչպէս գիտենք՝ Պատրիարք եղաւ 1895ին եւ իր օրովը տեղի ունեցան Սուլթան Համիտի կազմակերպած սոսկալի հայաջարդերը: Իզմիրլեան պատրիարք 1896 յուլիսին տխրունեցաւ հրաժարիլ եւ ջարդարար Սուլթանը զինքը աքսորել տուաւ Երուսաղէմի Վանքը, ուր մնաց ճիշդ 12 տարի:

տութեան ժամանակէն Թարգմանիչ կարգուած էր, կ՚ապրէր Եկեղեցւոյ խորհրդարանին կից սենեակի մը մէջ, ուր ունէր հարուստ Մատենադարան մը հաղուագիւտ գիրքերու, որոնցմէ չա՛տ անգամ կ՚երթայի օգտուել, երբ բնակութիւնս Իւսկիւտար էր տակաւին, մինչեւ 1897 թուականը, եւ ունէի սերտ յարաբերութիւն այդ պատուական Եկեղեցականին հետ:

Եկեղեցւոյն փողոցը բնակած է Զամուռճեան Պրուսացի Տէրոյենց Յովհաննէս բազմահմուտ Պատուելին եւ հոն գրած է իր բազմաթիւ երկերն ու թարգմանութիւնները, որոնց ցանկը բաւական երկար է հոս զետեղուելու համար:

Յարութիւն Մրմրեան Իւսկիւտար Ս.

---

Թուրք Սահմանադրութեան հռչակումէն յետոյ, 1908ին վերադարձաւ Կ. Պոլիս եւ եղաւ առարկայ ամենափայլուն ու խանդավառ ընդունելութեան. եւ նոյն տարւոյ Հոկտեմբեր 22/4 Նոյեմբերին վերստին Պատրիարք ընտրուեցաւ, եւ 1909 Մարտ 18/31ին ալ՝ ազգային միահամուռ քուէով բարձրացաւ ընդհանուր Հայոց Հայրապետութեան գահը, յաջորդելով Խրիմեան Կաթողիկոսին:

Հա՛գիւ տարի մը պաշտօնավարեց, ու յանկարծամահ վախճանեցաւ սրտի հիւանդութենէ, որուն ենթակայ ըլլալ սկսած էր Երուսաղէմի մէջ: Կ. Պոլսէն չմեկնած իր Գիրքերուն մեծ մասը նուիրեց Սուրբ Կարապետ Եկեղեցւոյն եւ մէկ մասն ալ հետը տարաւ Էջմիածին: Գրած է «Հայրապետութիւն Հայոց» անուն գործ մը՝ որ հրատարակուած է Կ. Պոլսոյ մէջ 1881ին:

Իրմէն ունիմ ես բաւական թուով նամակներ, որոնց ամենավերջինը դժբախտաբար մահուամբը ընդհատուած, բերաւ ինծի յանձնել Մեսրոպ Ծ. Վ. Նշանեան (այժմ Եպիսկոպոս), որ Իզմիրլեան Սրբազան կաթողիկոսին հետ Էջմիածին էր գացած: Այդ անաւարտ նամակը, Իզմիրլեանի ձեռագիրը՝ կը պահեմ քովս իբրեւ թանկ յիշատակ:

*Խաչի իմ դպրոցական ընկերներէս, գեղեցիկ գաղափարն ունեցաւ 1908ին պատրաստելու անոր կենսագրութիւնը*[61]*, բաւական ընդարձակ ու մանրամասն, ուրկէ կարելի է գտնել, թէ ի՛նչ անխոնջ բեղմնաւոր գրիչ մը եղած է Տէրոյենց, որ բացի տպագրուածներէն, թողած է շատ մը ձեռագիր օրինակութիւններ, որոնք 1837 թուականը կը կրեն եւ կը պահուին Վիեննայի Մխիթարեանց Վանքը*[62]*:*

* *
*

*Տէրոյենց 19րդ դարու առաջին կէսին Հայ բժշկական պատմութեան մէջ ալ ունի յիշատակներ. 1842ին թարգմանած ըլլալով երկու առողջապահական գիրքեր, զորս առած եմ Տ. Յովհ. Աւագ Քահանայ Մկրեանէ ի վարձ իմ բժշկական երկարամեայ ծրի այցելութիւններուս:*

*Նոյն Տէրոյենցի ինքնաձեռագիրներն են անոնք, կը պահեմ քովս. առոնց առաջինին անունն է.*

«Հարկաւոր Բժշկարանն օղէն կամ ջուրը իյնալով կամ կախուելով կամ ուրիշ դիպուածով մեռած մարդիկը ողջընցնելու կերպ. Բօո-քալ եւ Մանթէոի բժիշկներուն գիրքերէն

[61] Յովհ. Պրուսացի Տէրոյենց, *Յ. Գ. Մրմրեան, Կ. Պոլիս* 1908, *էջ* 196—201:

[62] *Այս ձեռագիրներն են՝* 1. «Փիլաքսինոսի Նառովկայ պատճառ հաւատոյ՝ գաղափարեալ ՊՂ = 1441»: 2. «Վրթանէսի Քերթողի յաղագս պատկերամարտաց» (*տե՛ս Հ. Յ. Տաշեան, Մայր Ցուցակ Ձեռագրաց Վիեննայի Մխիթարեանց, էջ* 205 *եւ* 206):

ժողվելով թարգմանեց Պրուսացի Յովհաննէս 1842»:

*Իսկ երկրորդին վերնագիրն է՝*

«Առողջութեան կանոններ որ մարդոյս առողջ մնալու եւ ինքզինք հիւանդութիւններէ պահպանելու կերպը կը սորվեցնէ»:

«Այժմեան երեւելի բժիշկներուն շինածներէն ժողվելով թարգմանեց Պրուսացի Յովհաննէս 1842»:

*Բայց այս բժշկական թարգմանութիւններէն, Տերոյենց Յովհաննէս Պատուելի իւր աշխատակցութիւնն ընծայած է Բէստէն Միքայէլ Տէր-Պետրոսեան անուանի բժիշկին, անոր գրաբար լեզուով պատրաստած Բժշկարանները վերածելով ռամիկ աշխարհաբարի, որոնք* 1838—1841 *վեց հատորներու մէջ լոյս տեսած են Օրթագիւղի Արապեան Տպարանէն*[63]:

* * *

*Տերոյենց Ենիմահալլէէն իւր ընակութիւնը փոխադրած է Սելամիէ Թաղին՝ Ջիլինտար փողոցը, գրեթէ մեզի դրկից տուն մը, ուր Եղբօրս հետ կ'երթայինք իրմէն Հայերէն գրաբար լեզուի մասնաւոր դասեր առնելու:*

*Տերոյենց մեռաւ՝* 87 *տարեկան*, 1888 *Յունիս* 22/*Յուլիս* 4*ին, եւ մեծահանդէս յուղարկաւորութեամբ Թաղուեցաւ Իւսկիւտարի Ազգ.*

63 Կենսագրութիւն Բէստէն Միքայէլ Բժիշկի Տէր Պետրոսեան, Հանդէս Ամսօրեայ, *տարի* 1898, *էջ* 367:

Գերեզմանատունը՝ ուր Եղիա Տէմերճիպաշեան արտասանեց հիանալի դամբանական մը :

Պրուսացի Պատուելին ունեցած էր երեք զաւակ, որոնց կրտսերը՝ Ատոմ Տերոյենց լաւ լեզուագէտ էր եւ ունէր քանի մը թարգմանութիւններ. սա ի խոր ծերութեան կնքեց իւր կեանքը Պէլճիական մայրաքաղաքին մէջ :

Մեծապէս յարգող մը Տերոյենց Պատուելին, նա մանաւանդ հիացող մը անոր տաղանդին ու բազմահմտութեան, ես՝ իբրեւ անոր երբեմնի աշակերտը, երբ բժիշկ եղայ, երախտագիտական պարտականութիւնս համարեցի՝ բժշկական դարմանատրութիւններս չի խնայել իրեն, իւր հիւանդագին օրերուն մէջ. եւ մահանալէն յետոյ, իմ խորին վշտակցութիւնս իւր որդւոյն գրաւոր յայտնելով, առաջարկած եղայ որ թոյլատրէր ինձ հանգուցեալ Հօրը գանկը բանալու եւ ուղեղը կշռելու : Ատոմ Տերոյենց առաջարկս չընդունեց գրելով ինձ պատասխան նամակ մը, զոր կը ներկայացնեմ հոս .

Իւսկիւտար 5 Յուլիս (Ն. Տ.) 1888

Մեծ. Տեար Տօքթ. Վահրամ Յ. Թորգոմեան

Ստացայ ձեր ցաւակցական գրութիւնն, որով կ՚առաջարկէիք ողբացեալ Հօրս գանկը բանալով ուղեղը կշռել :

Հայրս իւր բազմադիմի հմտութեամբն, զոր Դուք եւս լաւ գիտցած էք գնահատել, եթէ աշխարհի ականաւոր գիտնոց կարգը դասուելու համար իւր ուղեղին ծանրութեան չափին անհրաժեշտ պայման ունենար, եւ եթէ գիտութիւնն արդէն հաստատած չըլլար՝ թէ այն

կարգի արանց ուղեղն հատարակ մահկանացուաց ուղեղէն ծանրագոյն ըլլալ սովորութիւն է, յայնժամ կը հաւատեմ Ձեզ, տանց ամենեւին դիտողութեան կ՚ընդունէի ձեր առաջարկը, թէեւ Դուք ինքնին ծանր ըլլալը կը խոստովանիք, մանաւանդ թէ չեմ կարծեր որ այդ գործողութիւնն անձնականապէս Ձեզի նոր արժէք մը կարենայ յաւելուլ:

Ընդունեցէ՛ք յարգանացս անկեղծ հաւատիքն
որով եմ եւ մնամ Ձերդ
Ատամ Տերոյենց:

Յ. Մրմրեան Տերոյենցի կենսագրութեանը մէջ (էջ 145) հրատարակած է այն նամակը, ինձմէ զայն առնելով եւ իր գիրքին մէջ գոհունակութիւն յայտնած է որ թոյլատուած չէ ինձ Տերոյենց Պատուելիին գանկը բանալ, իմանալու համար ուղեղին ծանրութեան կշիռը, զոր անկասկած սովորականէն աւելի պիտի գտնայի, ինչպէս գտած են առենօք Պիշաինը եւ ուրիշ մեծանուն գիտուններունը:

* *
*

Ս. Կարապետի փողոցին բերանը կը բնակէր նաեւ ծանօթ Պուէտ Խաչատուր Պատուելին Միսաքեան, որ 25 տարի շարունակ ապրած է Բարիզ, եւ ուրկէ գրած է իւր «Տքնութիւնք Հայրենասէրի»ն, «Նշանք ժամանակի»ն, «Ի ծնէ կուրաց Դաստիարակութիւնը», «Բավուր»ը, որոնք հրատարակուած են Կ. Պոլսոյ «Մասիս» եւ Բարիզի «Փարիզ» թերթերուն մէջ: Խ. Պ. Միսաքեան «Ծաղկոցանոր» անուն թերթ մը պիտի հրատարակէր

*Բարիզէն 1866ին, բայց անոր յաջողութիւնը միայն լոյս տեսաւ։*

*Մխաքեան 1873—1875 թուականներուն Ս. Խաչի վարժարանը Հայերէնի եւ Ֆրանսերէնի դրագիտութեան դասատու եղաւ մեզի, մեռաւ 80 տարեկան 1891ին եւ թաղուեցաւ Իւսկիւտարի Ազգ. Գերեզմանատունը։ Յաջողութիւն Մրմրեան սոր կենսագրութիւնն ալ 1906ին հրատարակեց, Տերոյենցի վրայ գրածը տպագրութեան յանձնելէ երկու տարի առաջ։*

* * *

*Ս. Կարապետի Եկեղեցիէն քիչ հեռու կը գտնուէր Դուրեաններու տունը, ուր մեռաւ բանաստեղծ Պետրոսը 1872ին եւ երկու տարի յետոյ ալ եղբայրը՝ Յարութիւն։ Երկուքն ալ թաղուած են Իւսկիւտար։*

*Արտակարգ հանդէսով կատարուած է Պետրոս Դուրեանի յուղարկաւորութիւնը, որուն նախագահած է Յովհաննէս Եպ. Սեթեան եւ թատերատէր Յակոբ Վարդովեանի նուագախումբն ալ մահերգութիւններ եղանակելով առաջնորդած է դայն իր վերջին բնարանը։*

*Տղայ էի՝ բայց ներկայ եղած եմ այդ մեծահանդէս յուղարկաւորութեան որու մասին ունիմ գրուած մը 1900ին*[64]*։*

* * *

*Ենինմահալլէ թաղին Հայութիւնը հաստատած է բարենպատակ բազմաթիւ ընկերու–*

---

[64] Հանդէս Ամսօրեայ, 1900, էջ 177—178։

թիւններ, Դպրոցասէր, Աղքատասէր, Ուսումնական, Խնայողական եւ Գրասիրաց՝ որ Տէրոյենցի թարգմանած Ճօյաի Քաղաքավարութիւնը տպագրել տուած է 1842—1843՝ Օրթագիւղի Արապեան Տպարանին մէջ. այս Ընկերութիւնք եւ նման ուրիշներ դժբախտաբար երկար կեանք չեն ունեցած:

Ս. Կարապետ Եկեղեցին ունեցած է թէ հին ատենը եւ թէ՛ նոր ժամանակներու մէջ շա՛տ քահանայներ, որոնցմէ յիշատակելիները գիտենք թէ էին՝ ինչպէս գրած եմ արդէն, Տ. Մեսրոպ Պաղտատլեան, Տ. Թադէոս Լութֆեան եւ Տ. Խորէն Փէհլիվանեան, զոր ճանչցած եմ իբրեւ կարող եկեղեցական եւ լաւ բեմբասաց:

Այս Քահանայներուն հետ կը պաշտօնավարէր՝ Սարը (դեղին) կոչուած, Եկեղեցւոյ անուանակիր Տէր Կարապետ Վանեցին: Սա ծայր աստիճանի կատակաբան ու վարպետ բառախաղ շինող անձ մ'էր, բաւական հմտութիւն ունեցող եկեղեցական մը, որ վախճանեցաւ 85 տարեկան հասակին 1895ին: Դարմանած եմ զինքը իր վերջին հիւանդութեան ժամանակ. մահուանը նախընթաց օրը քովն էի դարձեալ, երբ բժշկական քննութիւնս իր վրայ կը կատարէի, յանկարծ ինձ հարցուց՝ թէ «արդեօք այլ եւս յոյս կտրա՞ծ եմ իրմէն». «ի՞նչ կ'ըսէք Տէր Հայր» խօսքըս հազիւ սկսած էի, եւ ահա, «Որդեակ, մահ ո՛չ իմացեալ մահ է, մահ իմացեալ անմահութիւն է» ըսաւ՝ եւ լռեց ու լռեց...:

Ս. Կարապետէն կարելի չէ բաժնուիլ, առանց այցելելու անոր քոյր թաղի Եկեղեցին «Ս. Խաչը», որուն երկու հարիւր յիսնամեան տարեդարձը մեծահանդէս տօնուեցաւ 1927ին, եւ այդ առթիւ Եկեղեցւոյն Աւագերէցը Տէր Հմայեակ Էքմէքճեան՝ բանասէր Քահանայն պատրաստեց կարեւոր աշխատութիւն մը «Յիշատակարան Հնգեակ Յոբելեանի Ս. Խաչ Եկեղեցւոյ Իւսկիւտարու 1676—1926» անուն[65], որ լոյս տեսաւ Սէթեան Տպարանէն:

Երեմիա Չէլէպի իր «Ստամպօլոյ Պատմութիւն» երկին մէջ բնաւ չյիշէր այս Եկեղեցին, որովհետեւ իր գործը գրած ու աւարտած տարիներուն, այսինքն՝ 1661—1684, դեռ հաստատուած չէր այն, եթէ ոչ՝ Երեմիա Չէլէպիի պէս եկեղեցասէր ու ազգասէր ներհուն պատմագիր մը իր տեղագրական մանրաքնին պտոյտներու միջոցին, երբ Վոսփորի հայաբնակ յետին վայրերուն եկեղեցիներն ու մատուռները մէկիկ մէկիկ կը նշանակէ, երբ Իւսկիւտար քաղաքը մանրամասն կերպով կը նկարագրէ եւ Եէնիմահալլէի Ս. Կարապետը կը յիշատակէ, եւ մինչեւ անգամ չի մոռնար գրելու թէ Ջամլըճա կոչուած բլուրին մօտերը եղած այգիները մեծ մասամբ սեպհական են

---

[65] Այդ հրատարակութեան մասին հարկ տեսայ կարգ մը լրացուցիչ տեղեկութիւններ գրել, Կ. Պոլսոյ «Նոր–Լուր» թերթին մէջ 1927 Սեպտ. 9ին եւ Տէր Հմայեակ՝ դրածներուս պատասխան տուաւ «Ժամանակ» օրագրին 1927 Սեպտեմբեր 29ի թիւով, իբրեւ ինքնարդարացում իւր աշխատութեանը մէջ դիտողութիւններուս տեղի տալով կարգ մը կէտերուն, որոնց կ՚անդրադառնամ Ծանօթագրութիւններուս ընթացքին.

Հայերու (ինչպէս պիտի կարդանք քիչ հետու), անկարելի եւ անընական է որ անտես ընէր Ս. Կարապետի ա՛յնչափ մօտիկը եղած Ս. Խաչ Եկեղեցին, մանաւանդ որ՝ ինքը 1662 թուականին ալ Իսկիտար գտնուած է՝ ինչպէս գրած եմ Ս. Կարապետի մասին մէջ:

Ազգային ժամանակակից պատմութեան մէջ կարեւոր տեղ գրաւած Եկեղեցի մ՚է Ս. Խաչը. կանգուն է Իսկիտարի բարձունքին Սելամիէ[66] կոչուած տեղը, ուր հաւանական է՝ որ կանուխէն կար հայ բնակչութիւն, հարկաւ սակաւաթիւ, որ առանձին եկեղեցի ունենալէ առաջ, իւր հոգեւոր մխիթարութեանը եւ կրօնական պէտքերուն համար կը դիմէր անկասկած Ս. Կարապետ:



Ս. Խաչի մասին Սարգիս Դպիր Սարաֆ Յովհաննէսեանի գրածը, զոր անցողակի կերպով մէջ բերի Ս. Կարապետ Եկեղեցւոյն, եւ Զաքարիա պատրիարքին առթիւ, ստիպուած

[66] Սելամիէ անունը տրուած է այդ թաղին Աճիպատէմ (դառն Նուշ) կոչուած վայրը գտնուած Թէքքէի մը (իմա՛ թրքական աղօթավայր) համբաւաւոր Շէյխը (աղօթապետ) եղող Սելամի Ալի էֆէնտիի յիշատակ: Կը պատմուէր թէ այդ Շէյխը հաստատած է այդ թաղը:

Ունի նա մասնաւոր գերեզման թաղին այն ճանապարհին վրայ, ուրկէ դէպի Ս. Խաչ եւ Աճիպատէմ կ՚երթցուի. սրբընկատուած է այն իր կրօնակիցներէն եւ այդ պատճառաւ անոր հողակոյտը միշտ թարմ կը յարդարէին ու վրան ալ գիշերները լապտեր մը կը վառէին հանդիպակաց թուրք գինուորատունէն: Այդ Թէքքէն ա՛յլ եւս չունի գոյութիւն. բայց հիմնադրին գերեզմանը կը մնայ ճամբուն վրայ:

*եմ կրկնել այս տեղ ալ առանց Ս. Կարապետի վերաբերեալ մասին, որպէս զի կարենանք ճշդիւ իմանալ թէ ի՞նչ պայմաններու՝ մէջ կարելի եղած է հաստատել այդ Եկեղեցին.*

*Սարգիս Դպիր կը գրէր.* «Եւ աստ յիւսքիւտար քաղաքի հեռի ի ծովեզրէն ի լեռնակողմն կոյս, զոն երկու թաղք բնակութեան Հայոց մօտ իրերաց՝ հանդերձ երկու եկեղեցեօք: Որո՞ց առաջինն կոչի Սելամսըզ, յորում է եկեղեցի մի Հայոց յանուն սուրբ Խաչին: Որոյ առաջին կերտողն ի ՁԳՈՅԷ՝ է Տէր Աբրահամ քահանայն պալաթցի, եւ գերեզման նորին է ի բակի եկեղեցւոյն որ վախճանեալ թաղեցաւ անդ ի թուականին Հայոց ՌՃՀԶ (1727)»։

*Հ. Ղ. Ինճիճեան ալ* «Ամարանոց Բիւզանդեան»*ին մէջ* (*էջ* 185) *ինչպէս Ս. Կարապետի, նոյնպէս ալ Ս. Խաչին համար շարադրած է ոտանաւոր յիշատակութիւն մը* 4 *տող՝ որ է,* «յիւսքիւտար» *վերագրին տակ.*

*«Կրկին են ի սմին թաղք Հայոց Ազգին*
*Սէլամսըզ ձայնեալ թաղ իւր առաջին,*
*Ուր վայելչակերտ՝ հին Եկեղեցին*
*Շինեալ նորոգեալ յանուն Սուրբ Խաչին»:*

* * *

*Տեսակ մը խորհրդաւորութեամբ ծածկուած է Ս. Խաչ Եկեղեցւոյ նախնական շինութեան, կամ լաւ եւս՝ առեղծման պատմութիւնը, որ թէեւ ժողովրդական զրոյցներու եւ աւելի աւանդավէպերու վրայ յեցած է,*

այնու ամենայնիւ՝ գուրկ չէ հաւանականութենէ. եւ միթէ գրոցները կամ աւանդութիւնները չե՞ն՝ որ շատ անգամ կը կազմեն լուրջ պատմութեան մը կորիզը, հեռահեռէ լուսաբանուելու կամ ջրուելու պայմանաւ, յայտնաբերուած Յիշատակարաններու եւ փաստերու շնորհիւ:

Սեւամիէի մէջ ծնած, սնած ու մեծցած, ես իմ պատանեկութեանս հազար անգամ լսած եմ թէ՝ այո՛, Տէր Աբրահամ անուն Քահանայ մը առաջին հիմնադիրը եղած է Ս. Խաչ Եկեղեցւոյն, առ այս մեծամեծ գոհողութիւններ ընելով եւ դժուարին պարագաներու հանդէպ յաղթական հանդիսանալով, խոհական ու շրջահայեաց հնարամտութեամբ:

Թաղեցի ծերունիներ, որոնց հետ իմ մօրենական Մեծ Հայրս, վիրաբոյժ Ղուկաս աղա Ղուկասեան (եօթանասնամեայ մեռած 1869ին), եւ Ս. Խաչի տարէց քահանայներ՝ Աւագերէց Տէր Մարտիրոս, Խուլ Տէր Խորէն, լուսաբարապետ Տէր Գրիգոր եւ Տէր Գարեգին, նաեւ Տէր Աթանաս, որոնք հեռահեռէ Մեծ Հօրս եւ Հօրս Տանէրէցներն եղած են ու վախճանած ութսունամեայ եւ աւելի տարիքի մէջ, կը պատմէին միշտ, իրենք ալ աւանդութեամբ լսած ըլլալով, թէ Տէր Աբրահամ, զոր Սարգիս Դպիր Պալաքցի կ'անուանէ ինչպէս տեսանք վերեւ, Իւսկիւտարի վերոյիշեալ թաղը[67] հաստատուելով կը սկսի քահանայա-

[67] Որ Սելամիէ կոչուած է Շէյխ Սելամի Ալիի մեռնելէն յետոյ:

գործել Ս. Կարապետ Եկեղեցին, եւ միանգամայն գաղտ ժամերգութիւն եւ պատարագ ընել իր բնակած տունին մէջ:

Յայտնի չէ թէ ո՞ր թուականներուն էր այս, եւ թէ ե՞րբ Տ. Աբրահամ փոխադրուեցաւ Իւսկիւտար–Սելամիէ. բայց կ'երեւի թէ եկեղեցւոյ պաշտօնական չինութենէն շատ առաջ եղած ըլլալու է այն[68]:

Երբ ամէն տարի Խաչվերացի Մեռելոցի օրը Ս. Խաչի մէջ անոր Հիմնադիր Տէր Աբրահամի հոգւոյն համար յատուկ պատարագ կը մատուցուէր (եւ կը մատուցուի ցարդ հարկաւ), Թաղային վարժարանին բոլոր աշակերտներս ներկայ կ'ըլլայինք եւ այս օրուան պէս միտքս է՝ որ «Տէր Ողորմեա»ի երգեցողութեան ժամանակ, լուսարարապետ Տէր Գրիգոր Քահանայ Արամեան, իր պարթեւ հասակը ցցած, կը դառնար ժողովուրդին ու իր

---

[68] Այս տեղ կը ստիպուիմ դիտել, թէ ընդունելի չէ Տ. Հմայեակ Քահանայի այն վարկածը (էջ 7), թէ՝ Տէր Աբրահամ կը պաշտօնավարէր Սամաթիոյ Ս. Գէորգ Եկեղեցին, եւ թէ՝ այն տանի կրօնական վէճերուն ութիւ փախած ու Իւսկիւտար ապաստանած է նա:

Բոլորովին սխալ է այս ենթադրութիւնը, զի ակնարկուած կրօնական վէճերը եւ նահատակ Տէր Կոմիտասի խնդիրը շա՛տ ետքերն է, որով Տէր Աբրահամ չէր կրնար մասնակցութիւն ունենալ անոնց մէջ. նկատելի կէտ մ'ալ կայ որ՝ Գալաթցի քահանայ մը իրեն մօտիկը եղած Ս. Հրեշտակապետ եկեղեցին թողլով, չէր կրնար մինչեւ Սամաթիա երթալ քահանայագործելու համար: Ես կ'ենթադրեմ որ Գալաթի մէջ պատահած հրդեհներուն՝ իր տունը տեղը դոհ տալով, Տ. Աբրահամ կը հարկադրուի անցնիլ Իւսկիւտար, ինչպէս իրեն պէս ուրիշ շատ Գալաթցիներ, եւ վերջնականապէս կը հաստատուի Սելամիէ Թաղը:

*ահագնագոչ ձայնովը Տէր Աբրահամի յիշատակը օրհնելով՝ կը պատմէր հետեւեալը, թէ՝*

«Տէր Աբրահամ շատո՛նց միտքը դրած էր այս տեղ Եկեղեցի մը հիմնել, եւ տարիներով այդ սուրբ նպատակին հասնելու հետամուտ կ'ըլլայ անվհատ: Ամէն օր Խսկիւտարի շուկայն կ'իջնայ եղեր եւ տանը վերաբերեալ բաներ ծախու առնելով, զանոնք կը յանձնէր Տանիկ քեռնակիրներու ու առատ պարգեւներով կը պատուիրէ՝ որ տանին յանձնեն՝ «Անիպատէմ, Էրմէնի քիլիսա սօքաղընտա, Էրմէնի բաբազըն էվինէ», *այսինքն*՝ («ՀԱՅ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՓՈՂՈՑԸ[69], ՀԱՅ ՔԱՀԱՆԱՅԻՆ ՏՈՒՆԸ») որպէս զի այս կերպով՝ այլազգիներուն հաւտացնել տայ, թէ Հայ Եկեղեցի մը կայ հոն:

Տէր Աբրահամ մեծ համբերութեամբ տարիներով կը շարունակէ իր հնարագիւտ ծանուցումը եւ հետզհետէ շուկայի տանիկ բոլոր խանութպաններուն, ինչպէս եւ բեռնակիրներուն մեծ մասին հետ բարեկամ ըլլալով, ո՛չ միայն անոնց յարգանքին առարկայ կը սկսի ըլլալ, այլ եւ՝ հաւտացնել՝ թէ իրաւ՝

*[69] Գիտնալ պէտք է՝ որ այդ հին տուններու փողոցներու անուն նշանակել սովորութիւն չէր. մեր մանկութեան օրերուն էր՝ չա՛տ լաւ կը յիշեմ, որ Թուրք կառավարութիւնը սկսաւ ամէն փողոցի բերանը գամել տաճկերէն լեզուաւ տախտակներ, որոնք կը յայտնէին անոնց պաշտօնական անունները: Այսպէս՝ Ս. Խաչի փողոցին երկու բերաններն ալ դրուեցան մէկ մէկ տախտակ, որոնց վրայ կը կարդայինք՝* «Էրմէնի քիլիսա սօքաղը» *բառերը՝ այսինքն* «Հայ Եկեղեցւոյ փողոց» *վերտառութիւնը, որ մինչեւ վերջի տարիներ կը մնային:*

վերը Անի-Պատէմի մօտ կայ վաղ ժամանակներէ ի վեր Հայ Եկեղեցի եւ անունն ալ Ստավրոս (Ս. Խաչ) է, ինչպէս Չէնկէլ-քէօյ գիւղին մօտ Յոյները ի հնումն ունէին համանուն Եկեղեցին»:

*Տէր Աբրահամ շա՛տ պէտք ունէր այս հնարքին, ինչպէս կ՚ըսէր պատալով ու յուզուած՝ Տէր Գրիգոր Արամեան. պէտք ունէր այո՛, որպէս զի օր մը կարենար վկայութեան կանչել այդ բոլոր տաճիկները, երբ Եկեղեցւոյն շինութեան հրամանը ուզելու ելլէր. որովհետեւ՝ այդ հին անցեալ կոյր օրերուն մէջ՝ տաճկի վկայութեամբ միայն կարելի էր Եկեղեցւոյ մը հիմնարկութեան բարձրագոյն (խմա՛ կայսերական) հրամանը ձեռք բերել:*

* * *

*Այս էր ահա վէր ի վերոյ Ս. Խաչի Լուսարարապետ Քահանային եւ անոր հետ ուրիշ ծերունիներու կողմէ յայտնուած աւանդական պատմութիւնը, զոր կը լսէինք շարունակ Եկեղեցւոյն մէջ կամ դուրսը եւ դպրոցին ներս կամ ուրիշ տեղ:*

*Հարց է սակայն գիտնալ՝ թէ ինչո՞ւ համար Տէր Աբրահամ ուզեց իր բնակած թաղին մէջ նոր Եկեղեցի մը հիմնել, քանի՛ որ անդին կար արդէն «Ս. Կարապետը» եւ ինքն ալ կը քահանայագործէր հոն:*

*Անոր պատճառը հետեւեալը եղած ըլլալ կը կարծէին, Ս. Խաչի շինութեան պատմու-*

*թիւնը բերնէ բերան դոց սորված ծերունիները, զորս յիշեցի վերեւ:*

*Այսինքն՝ Նախ որ՝ տակաւ Թաղին մէջ Հայ բնակչութեան թիւը կ՚առաւելուր եւ յատուկ Եկեղեցւոյ մը պէտքը զգալի կ՚ըլլար· յետոյ՝ Ս. Կարապետ երթալու համար հարկ էր անցնիլ երկու Թաղերը իրարմէ բաժնող տաճկի ընդարձակ գերեզմանոցէն, այդ մութ անտառէն, ուր՝ բուեր կը վայէին, եւ խիտ առ խիտ աճող հնամենի խոշոր նոճիներուն ետեւները կը պահուըտէին եղեր արիւնարբու Ենիչէրիներ, Քրիստոնեաները կողոպտելու...: Ժամերգութիւնները, մանաւանդ՝* ակում *օրերունը, առաւօտեան մութին՝ չա՛տ կանուխ կը սկսէին. հաւատացեալ ժողովուրդը կը վախնար անցնիլ այդ գերեզմանոցէն՝ որ կարճ ճամբան էր եւ է, ուստի կը ստիպուէր ուրիշ տեղերէ երկար շրջաններ ընել Ս. Կարապետ հասնելու, որպէս զի Արարողութիւններուն սկիզբէն կարենայ ներկայ գտնուիլ...: Ի տես այսպիսի դժուարութիւններու եւ դեռ ո՞վ գիտէ ուրիշ ի՞նչ պատճառներով, Տէր Աբրահամ հոն Նոր Եկեղեցի մը կանգնելու գաղափարը կը յղանայ, բայց տարինե՜ր, տարինե՜ր կը սահին, մինչեւ որ բախտ կ՚ունենայ իր առաջադրած սրբազան նպատակին գործադրութեանը յանգելու:*

* * *

*Բացի ձեռք բերած շուկայի տաճիկ բարեկամներէն, Տ. Աբրահամ կ՚աշխատի ծանօ-*

Թանալ վերեւ յիշածս՝ Սէլամի Ալի էֆէնտի անուն մեծ ազդեցիկ Շէյխին · անոր մտերիմը եւ սիրելին կ'ըլլայ տակաւ, ու օրին մէկը կը զգացնէ, թէ Թաղին Եկեղեցին շա՛տ փոքր ու հին ըլլալուն, պէտք կար նորի մը ու կը խընդրէ առ այս՝ իր պաշտպան միջնորդութիւնը · եւ նոյն պահուն ծոցէն կը հանէ Ազերսագիր մը պետութեան ուղղուած, զոր ստորագրած էր ինքը եւ իր Երիցուհին : 1678 թուականին էր այս, ինչպէս կ'աւանդէ Եկեղեցւոյ Գանձատունը պահուած յիշատակագրութիւն մը, զոր 1910ին Աթոռակալ Տէր Տաճատ Քահանայ բաշեան հաճեցաւ հաղորդել ինձ :

Այս Ազերսագրով կը խնդրէին՝ որ պաշտօնական արտօնութիւն տրուէր իրենց Նոր Եկեղեցի մը շինելու, նաեւ հրաման՝ որպէս զի տունի մը մէջ ժողվէին Թաղին մանուկները, անոնց Աւետարան կարդալ սորվեցնելու համար :

* * *

Սէլամի Ալի էֆէնտին այս Ազերսագիրը առնել կարդալէ յետոյ, զարմանքով կը հարցնէ, «Միթէ այդ տեղ Հայու Եկեղեցի՞ կայ, ես չէի գիտեր» : Այո՝ կը պատասխանէ Տէր Աբրահամ, «Այո՛, 30—40 տարիէ ի վեր գոյութիւն ունի այն եւ Չէնկէլքէօյի աւերակ Ստավրոսի (Ս. Խաչ) Եկեղեցիէն յետոյ շինուած է · կրնաք ստուգել շատ մը վկայներէ» կ'ըսէ, ու օրին մէկն ալ կը ժողվէ իրեն շատոնցուընէ ի վեր ծանօթ խումբ մը Թուրք—

տաճիկներ եւ զանոնք վկայութեան կը տանի Սէլամի[70] Ալի Շէյխին :

Շէյխը անոնց կը հարցնէ, թէ՝ «Իրա՛ւ, այդպէս բան գիտե՞ն», եւ ահա բոլորն ալ երդում ընելով հաստատական պատասխան կու տան ու կը յարեն իսկ՝ թէ՝ «Երկար տարիներէ ի վեր՝ իրենք այդ փողոցը ապրանք տարած են եւ լսած են թէ Հայ Եկեղեցւոյ անունով փողոց կայ, եւ կը ճանչնան Հայ Քահանայն՝ որ Եկեղեցի ունի» :

Թուրք–Տաճիկներու այս վկայութեանը վրայ Շէյխը կը խոստանայ գոհացում տալ աղերսարկու Քահանային, որ գլուխը բանալով եւ ձեռքերը դէպի վեր բարձրացուցած կ'արտասանէ աղօթք մը : Շատ չանցած հրամանն եւ արտօնութիւնը կու գայ վերաշինելու հնացած??? Հայ Եկեղեցին :

Այս յաջողութեանը վրայ՝ Տէր Աբրահամ անպատում ուրախութեամբ լեցուած, անմիջապէս գործի կը ձեռնարկէ եւ տեղացի Հայերուն օժանդակութեամբը՝ ափյափոյ կանգնել կու տայ փայտաշէն փոքր Եկեղեցի մը, որ

[70] Քիչ առաջ ըսած եմ, որ Ս. Խաչի Թաղը կը կոչուի Սէլամիէ, ի յարգանս յիշատակի Շէյխին. բայց ժամանակ անցնելով՝ այդ յորջորջումը փոխուած աղաւաղուած է, եւ որպէս զի՝ Իսկիւտարի եւ Հայ–տար–պաշայի միջեւ գտնուած Սէլիմիէ վայրին հետ անունը չշփոթուի՝ եղած է Սէլամսըզ, եւ Պուէտ Խաչատուր Միսաքեան ալ հայացուցած է զայն՝ «Անողջոյն», «Անողջունեցի» (փոխանակ՝ Սէլամսըզցիի) գրելով՝ Ազգային Ընդհանուր Ժողովի Ատենապետ Տօքթ. Ստեփան փաշա Ասլանեանի ուղղած իր մէկ Ոտանաւորին մէջ: «Օրագիր» Թերթ Կ. Պոլիս, Թիւ 1553, յունիս 6/18, 1875:

արդի ընդարձակ Եկեղեցւոյն հողին վրայ եղած է՝ կ՚ըսուի:

Տէր Աբրահամ այլ եւս կը սկսի ազատօրէն Պատարագ–պաշտօն մատուցանել հոն ու զայն անուանել «Ս. Խաչ», յենլով՝ ինչպէս յայտնեցի արդէն, Զէնկէլ–քէօյ գիւղին մօտը գտնուած երբեմնի Ստավրոս (Ս. Խաչ) [71] աւերակ յոյն Եկեղեցւոյն պատմական յիշատակութեանը վրայ:

Որոշապէս չի գիտցուիր թէ եկեղեցաշէն այս Քահանային ո՞ր թուականին պաշտօնապէս իրաւունք ստացաւ իր ձեռնարկը դրական արդիւնքի հասցնելու, ամէն պարագայի սա յայտնի է, որ անկասկած տեղի ունեցած ըլլալու է այն՝ 1684 թուականէն յետոյ, այսինքն Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանի «Ստամպօլոյ Պատմութեան» աւարտումէն վերջ, եթէ ոչ՝ ինչպէս ըսած եմ, անգամ մ՚ալ կը կրկնեմ ու պիտի կրկնեմ շարունակ, թէ Հեղինակը երբէ՛ք եւ երբէ՛ք լուռ չի պիտի մնար իր գիրքին մէջ այդ մասին, երբ Ս. Կարապետը կը յիշատակէ: (Տեսնել իմ այս առթիւ գրածս «Նոր–Լուր», թերթին մէջ 9 Սեպտ. 1927ին:)

*  *
*

Ս. Խաչ Եկեղեցւոյն մէջ խնամով կը պահուի ձեռագիր Աւետարան մը, զոր աչքէ անցուցած եմ ժամանակին, եւ որուն Յիշատակարանը կատարեալ հաւատարմութեամբ՝

[71] Մինչեւ ցարդ այդ աւերակ Եկեղեցւոյն տեղը կը կոչուի՝ Ստովրոստէրէսի, այսինքն «խաչի–ձոր»:

1910ին ինծ համար արտագրեց Տէր Տաճատ Քահանայ Բաշայեան եւ իր ճարտար գեղագրութեամբն ալ հաճեցաւ նմանահանել զայն.

«Փա՛ռք եւ գոհութիւն եւ երկրպագութիւն պաշտելի. եւ երկրպագելի. զուտ հաւատար սուրբ Երրորդութեան հօր եւ որդւոյ եւ սուրբ հոգոյն յաւիտեանս յաւիտենից ամէն:

Գրեցա՛ւ եւ ծաղկեցաւ. աստուածարուղ եւ սուրբ աւետարանս Քրիստոսի ի քաղաքն Կոստանդնուպոլիս. յաւսկուրատարն ի դուռն սուրբ Խաչն եկեղեցին. Թվին. ՌՃԼԹ. եւ ցանկացող եղեւ սմա՛ հոգեւէր եւ բարեմիտ Անեցի յունանին սեղբոսին կողակցին հռիփսիմային հաւրն մուրատին. մօրն Թասուխին. ակրվէթին մաղտեսի. Եւ բառացաւ զսա՛ ի հալալ ընչից իւրոց. եւ եդ ի դուռն ի սուրբ խաչն եկեղեցի յիշատակ իւր եւ ծնողացն իւրոց. անեցի յունանին սեղբոսին. կողակցին հռիփսիմային. հօրն մուրատին մօրն Թասուխին. մաղտեսի ակրվէթին. եւ այլ ամենայն արեան մերձաւորացն. եւ այլ ոչ ոք չունի իշխանութիւն. հանել ի դրանէ սորա՛ ծախելով. եւ կամ գրաւելով, եւ կամ այլ ինչ իւիք. Եւ եթէ ոք յանդգնի. զմասն յուդայի եւ զանէծան կայինի առցէ. Արդ աղաչեմ զձեզ եղբարք ո՛րք հանդիպիք. ի սմայ կարդալով, եւ կամ յաւրինակելով. յիշեսջիք. եւ կամ հարեւանցի տեսանելով. յիշեսջիք մխով աստուած ողորմիայի եւ լի բերանով ողորմի աստուած ողորմի ասէք ակր մեր յիսուս քրիստոս ողորմեացի ձեզ յիւր միւսանգամ գալստեան յիշէք աստուած զձեզ յիւր յիշէ որ է օրհնեալ յաւիտեանս ամէն: Հա՛յր մեր որ յերկինս:

Այս Յիշատակարանէն կ՚իմանանք՝ թէ Եկեղեցին գոյ էր 1690ին, բայց կը ներեմ ինծ յայտնել այս առթիւ, թէ չա՛տ անընական կը գտնեմ Տէր Հմայեակ Քահանայ Էքսէրճեանի

այն տարբերութիւնը[72], թէ Յիշատակարանին ՌՃԼԹ թուականին վերջի «Թ» գիրը քիչ մը հեռուն գրուած ըլլալուն, կը նշանակէ «թուական» բառը եւ ո՛չ թէ 9(ինը)։ Դիտելի է որ արդէն «թվին»ը նախապէս ամբողջովին գրուելէ յետոյ անմիջապէս՝ քիչ մը անդին համառօտագիր մենիկ «Թ» չէր կրնար կրկնուիլ. Ս. Խաչի Աւետարանին գրչութեան ճիշդ թուականն է՝ ՌՃԼԹ = 1690, որով՝ անտեղի է Ս. Խաչի Հիմնարկէքը 1684էն առաջ տանիլ[73]. Նաեւ ուշադիր ըլլալու ենք, թէ՝ Յիշատակարանին մէջ միայն «Թ» տառը չէ որ հեռակայ գրուած է, այլ չա՛տ տողերու վերջը կը տեսնենք հեռուն տարուած տառեր, պարզապէս՝ Յիշատակարանին բոլոր տողերը ուղիղ գիծի մը վրայ շարակարգելու համար։

Իրաւ է թէ Տէր Աբրահամ ամէն հնարք (ներելի խարէութիւն!!) ի գործ դրած է, որպէս զի հաւատացնել տայ, թէ «Ս. Խաչ» անունով Եկեղեցի մը ի հնուց գոյութիւն ունեցած է, շինութեան արտօնութիւնը ձեռք բերել կարենալու համար, բան մը որ ամենադժուարին եւ գրեթէ անհնարին էր այդ դարուն, եւ գիտենք՝ թէ քանի՜ քանի՜ եկեղեցիներ հիմնայատակ փլցուած են, որովհետեւ՝ անոնց հաստատութեանը համար հարկաւոր

---

72 Ժամանակ, Կ. Պոլսոյ, 29 Սեպտեմբեր 1927։

73 Այս Աւետարանին ճիշդ ու ճիշդ նման մէկ ձեռագիրը կը գտնուի եղեր Նիւ Եորքի գրադարանին մէջ, ինչպէս կ'իմացնէր Յ. Թիւթեան 1928ին «Հանդէս Ամսօրեայ»ի նոյն տարւոյն Սեպտեմբ.—Հոկտեմբ. թիւին մէջ։

եղած հրամանը սովորական ճամբով՝ պաշտօնական աղբիւրէ չէր առնուած, ինչպէս կ՚աւանդեն Սարգիս Դպիր Սարաֆ Յովհաննէսեան, Հ. Ղ. Ինճիճեան, նաեւ շատ մը ուրիշ Յիշատակարաններ, զորս նշանակած եմ արդէն այս աշխատութեանս մէջ:

Եւ ահա թէ ինչո՞ւ, Սարգիս Դպիր այդ Ս. Խաչի համար գրած է թէ՝ «ի չգոյէ կերտեաց զայն Տ. Աբրահամ» զի այս բարեյիշատակ Քահանայն արդարեւ անգոյ բանի մը գոյութիւնը առեղծելու յաջողած է կատարեալ եւ եզական ճարպիկութեամբ:

* * *

Տէր Աբրահամ Պալաթցի էր, ինչպէս կը գրէ Սարգիս Դպիր, որ ինքն ալ Պալաթցի էր ու իր թաղին «Մանկատուն» կոչուած Դպրոցին մէջ ուսուցիչ եղած է եւ միանգամայն ընդօրինակող կարգ մը գործերու, որոնք իմ սեպհականութիւնս են այժմ:

Ընդունելու ենք, թէ Տէր Աբրահամ կանուխէն թողած է իր ծննդավայրը ու փոխադրուած Իւսկիւտարի Սէլամիէ թաղը, եթէ ոչ՝ այդ եկեղեցատէր ու եկեղեցաշէն Քահանայն անպատճառ պիտի ուզէր իր մասնակցութիւնը բերել Պալաթի Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյն երկրորդ շինութեանը, որ տեղի ունեցած է 1692ին. այնու հանդերձ մեղադրելի չէ ըսել, թէ վերոյիշեալ ձեռագիր Աւետարանին նշանակած թուականէն առաջ գոյութիւն ունեցած ըլլայ Ս. Խաչ եկեղեցին. սակայն

*պայմանաւ՝ որ Տէր Աբրահամի տունին մէջ գաղտնածածուկ էր այն ու անուանական :*

*Ինչպէս որ ալ եղած ըլլայ, Պալաթցի այդ* Տէր Աբրահամ քահանայն *երկու եւ կէս դարէ ի վեր յաւէրժական երախտագիտութեան ամենավառ զգացումներ ծնուցած է Սէլամիէ թաղին հին ու նոր, անցեալ ու ներկայ հայ սերունդներու սրտին մէջ :*

*Վախճանած է նա (թերեւս ի խոր ծերութեան)*, 1727 *թուին. անոր խնկելի մարմինը ամփոփուած է Եկեղեցւոյն բակը, ինչպէս կը գրէ Սարգիս Դպիր Սարաֆ Յովհաննէսեան ըսելով՝* «Եւ գերեզմանն նորին է ի բակի եկեղեցւոյն, որ վախճանեալ թաղեցաւ անդ ի թուականին Հայոց ՌՃՀԶ (1727)» : *Եւ այս առթերով՝ բացարձակապէս կը հերքուի Տէր Հմայեակ Էքսէրճեանի այն պարբերութիւնը, թէ* Տէր Աբրահամ նախապէս թաղուած ըլլայ Ազգ. Գերեզմանատունը եւ 1830ին անոր ոսկերոտիքը փոխադրուած Ս. Խաչի ճախակողմեան (*հիւսիսային ըսել կ'ուզէ*) պարտէզը[74]. *Ոչ, Քահանայի գերեզման բանալ ու ոսկերոտիքը փոխադրել այլուր, սրբապղծութիւն կը համարուէր այդ հին ատեններ. մանաւանդ որ չեմ կարծեր թէ կարելի ըլլար այդ ոսկերոտիքը անեղծ գտնալ* 103 *տարի յետոյ* (1727*էն* 1830) :

* * *

[74] Յիշատակարան Հնգեակ Յոբելեանի Ս. Խաչ Եկեղեցւոյ, *Կ. Պոլիս* 1927, էջ 131 :

*Տէր Աբրահամ կը հանգչի Ս. Խաչի եկեղեցւոյն հիւսիսային պարտէզին մէջ, ուրկէ յատուկ շիրմաքար, որ կը կրէ խոշոր երկաթագիր 19 տող Արձանագրութիւն մը, ամէն մէկ բառը կէտով մը զատուած, զոր անձամբ ընդօրինակած եմ ժամանակին, թէեւ Տէր Հմայեակ ալ հրատարակեց յետոյ[75], բայց կարեւոր կը համարիմ զետեղել զայն Ծանօթագրութիւններուս շարքին մէջ, աւելի ճիշդ կերպով քան արդէն հրատարակուածը. Ահաւասիկ այն.*

*«Որ վասն· անչափ· սիրոյ: Բոյին·*
*Բանդ կուսէ, առեր· մարմին·*
*Բեւեռեցար· կենաց: Փայտին*
*Ծիրիմս· այս· հարկ· հողային*
*մեծաւ· պատուով· եղաւ· մարմին·*
*Աղաչանօք· սրբոյ: Խաչ + ին*
*Մաղթեա՛· ով· սուրբ· աստուած· ած + ին*
*Թողուլ· զմեղս· յանձանց սորին*
*Տր· Աբրահամ քահանային*
*Եկեղեցւոյս: յոգներախտին*
*Զի· հոգւով· չափ· այս· սուրբ խաչին*
*Աշխատ· եղեւ· լուսահոգին*
*Որք· ընթեռնուք· յօժարագին*
*Լիով· սրտիվ· տուք· ողորմին*
*Հազար· հարիւր· եօթանասնին*
*Վեցումն· եղեւ· վախճան սորին*
*Որք· հանդիպիմք· ի տապանիս*
*Ասել պարտեմք· հայր մեր երկին:*

*Թվ· ՌՃՀԶ* (1727)»:

*Տէր Աբրահամի աջակողմը եւ ճիշդ քովը*

---

[75] Անդ, էջ 14—15—16:

թաղուած է, անոր կեանքի ընկեր ու աշխատակից Երիցուհին, որ մեռած է երեք տարի յետոյ 1730ին: Այն ալ ունի յատուկ շիրիմ, կրելով երկաթագիր վերտառութիւն մը, որ դժբախտաբար տեղ տեղ աւրուած է, եւ զոր դժուարութեամբ կրցած եմ կարդալ ու ընդօրինակել 1910ին:

Կը բաղկանայ այն 15 տողէ, որոնց ամէն մէկ բառը կէտադրութեամբ բաժնուած է: Ահաւասիկ.

«Ով Խոկուհի ...... կին
Գայ ի դատաստ ...... ծին
Ազգ. եւ ազինք. անդ ժողովին
Դատել. զաշխարհս. համայն իրին
Իրիցակինս. այս. ազախի + ն:
Միջնորդելով. զմայր. քային
Մի՛. յիշեսցես. զմեղս. սորին
Այս խղճալի. Մարիամ + ին
Ունի. զմիջնորդ. սուրբ Խաչ քային
Որ տեղեաւ իսկ ...... երախտին
Զի դատեսցես. յաջակողմին
Ոչ. յիշելով. զյանցանս. ամին
Հանդիպելով. ի սոյն շիրմին
Առել պարտիմք. ըզողորմին
Հայկազունի ... Թվ. ՌՃՀԹ» (1730):

Այս կրկին Տապանաքարերը ժամանակի ընթացքին հետզհետէ անչքացած ըլլալնուն, 1902ին զանոնք գեղեցիկ կերպով վերաշինել տուին Իւսկիւտար–Սելամսըզցի Փանոսեան Պետրոս եւ Կարապետ եղբայրները, եւ Տէր Աբրահամի գերեզմանին հարաւային էջին վրայ փորագրել տուին հետեւեալը.

«Կառուցաւ շիրիմս արդեամբ երկուց խարազատաց Պետրոսի եւ Կարապետի ի յիշատակ Հօր իւրեանց փանոս աղա Առաքելեանի. 1902»:

* *
*

*Աւելորդ չըլլայ միջանկեալ կերպով ըսել հոս, թէ երբ Տէր Աբրահամի հին շիրմաքարը նորին վրայ զետեղելու համար, գործաւորներ հողը կը քրքրէին, դուրս հանեցին երկու ուրիչ տապանաքարեր, որոնք անկասկած իբրեւ հիմ կամ ծածկոց դրուած պէտք է ըլլային գերեզմանին մէջ եւ անպատճառ փոխադրուած են հոն Ազգային Գերեզմանատունէն:*

*Ասոնք կանգուն աղուցուած կը մնան այժմ Ս. Խաչի ճախակողմեան պարտէզի որմին վրայ, Տէր Աբրահամի գլխին մօտ:*

*Մէկ հատին վրայ կը կարդանք՝*

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՀԱՆԳՐՍՏԵ-
ԱՆ ՊՈԽՐՍԱՒ ԱՌԱՋՆՈՐԴ
ՆԵՐՍԷՍ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ[76] ՀԱ-
ՅՐՆ ՈՐ ՓՈԽԵՑԱՒ Ի ԿԵԱՆՍ ԹՎ.
ՌՃՀԳ ՀԱՅՐ ՄԵՐ (*այսինքն* 1724):

---

[76] *Այս* Ներսէս վարդապետը *որ Պալաթցի էր, մէկ տարի Կ. Պոլսոյ պատրիարք եղած է՝* 1704*ին* (*Չամչեան Պատմ., Հատոր Գ., էջ* 747) *եւ յետոյ Առաջնորդ Պուրսա քաղաքին, ուր վախճանած է* 1741*ին եւ թաղուած տեղւոյն Ս. Աստուածածին եկեղեցւոյ պարտէզը: Ասոր տապանագիրը հրատարակուած է նախ՝ Նիկոմեդիոյ* Հայրենասէր *անուն թերթին՝* 1852 *Նոյեմբեր* 15*ի թուահամարին մէջ. յետոյ* Բիւզանդիոն *ալ զայն հրատարակեց* 24 *Դեկտ.* 1906*ին:*

1923*ին ես ալ հրատարակեցի զայն* Տապանագիրք Պատրիարքաց Հայոց Կ. Պոլսոյ *աշխատութեանս մէջ* (Բազմավէպ, 1923, *էջ* 169):

Իսկ միւսին վրայ՝

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԱԿՆ–
ՑԻ ԹԷՐՃԻՄԱՆ ՄԱՀՏԵՍԻ
ՊԱՂՏԱՍԱՐԻ ՈՐԴԻ ՆՈՐԱԲՈՅՍ
ԿԱՐԱՊԵՏ ՁԷԼԷՊԻՆ
ԹՎՆ ՌՃՁԴ (1735)։

Այս երկրորդ տապանագրին թուականէն դատելի է՝ որ Տէր Աբրահամի եւ Երէցկինին շիրիմները բաւական ժամանակ յետոյ շինուած են, քանի՛ որ առաջինը վախճանած է 1727ին եւ երկրորդը 1730ին։

Տէր Աբրահամ ունեցած է չորս զաւակ, որոնց երկուքը քահանայ ձեռնադրուած են Տէր Նիկողոս եւ Տէր Գէորգ անուամբ[77]։

Տէր Աբրահամը յաւէրժ անմոռաց պահելու գեղեցիկ ու վեհ նպատակաւ, եկեղեցւոյ քահանայական դասին մէջ մինչեւ անոր անուանակից մը եղած է. այսպէս՝ Ս. Խաչ՝ հոգհոյ ունեցած է, Տ. Աբրահամ Բ. վախճանած 1762ին, Տէր Աբրահամ Գ. Գապասաքալեան (†1865), Տէր Աբրահամ Դ. Աճէմեան († 1872), Տէր Աբրահամ Ե. Մրմրեան († 1881), Տէր Աբրահամ Զ. Խպէեան այժմ Աւագերէց Մայր Եկեղեցւոյ։

* *
*

Տէր Աբրահամ Ա.ի կառուցած եկեղեցին իր փայտաշէն վիճակին մէջ կը շարունակէ մնալ գրեթէ մօտ կէս Դար եւ 1727ին Ս. Կա–

[77] Էֆսէրճեան, Յիշատակարան, էջ 22։

*րապետ եկեղեցւոյն հետ միաժամանակ կը վերաշինուի*[78]*, աւելի ընդարձակուելով, որու մասին Սարգիս Դպիր Սարափ Յովհաննէսեան կը գրէ հետեւեալ տողերը·*

«Եւ յետոյ ի հիմանէ շինեցաւ սա (Ս· Կարապետ) ընդ Եկեղեցւոյ Սրբոյ Խաչին ի ժամանակս Յովհաննու Պատրիարքին Կոլոտ կոչեցելոյ ի թուականին Հայոց ՌՃՀԶ (1727)» :

*Ըսել է այս վերաշինութիւնը տեղի ունեցած է նոյն իսկ Տէր Աբրահամի մահուան տարին, եւ թերեւս սկսուած էր անոր կենդանութեանը, բայց մահը վրայ հասած :*

*Կոլոտի օրով շինուածը կը տեւէ մինչեւ* 1830, *ճիշդ մէկ Դար, յետոյ կը վերաշինուի այն փառաւոր, աւելի ընդարձակ ու քարուկիր, որ դարու մը հաստատութիւն է այսօր, ինչպէս կ՚ուսուցանէ մեզ անոր աւագ դրան վերեւը դրոշմուած ոսկեզրուագ Արձանագրութիւնը, որ է·*

«Ողորմութեամբն Աստուծոյ չքնաղ կառուցաւ Եկեղեցիս Ս· Խաչի ի Պատրիարքութեան Տ· Կարապետ Արքեպիսկոպոսի յարդեանց Ազգիս Հայոց եւ ջանացողութեամբ Աստուածասէր իշխանապետաց, որոց ամենեցուն ընդ մասնաւոր Հոգաբարձուի շինութեանս, տացէ Տէր զուարճանալ յերկնաւոր

[78] *Հարկաւ արքունի ճարտարապետ Սարգիս Խալփային հսկողութեամբը, երբ սա Ս· Կարապետի* 1727*ի շինութիւնը կատարած է, ինչպէս քանիցս յայտնած եմ Ծանօթագրութիւններուս մէջ (էջ* 488 *եւ* 492) :

Եկեղեցին ընդ անմահից հրեշտակաց: Յամի Տեառն 1830 Սեպտեմբեր 22»:

*Ս. Խաչի այս վերջին շինութեանը ճարտարապետ կ'ըլլայ մեծարուեստ Սերվէրեան Յովհաննէս ամիրայ*[79]*, որ 1829ին շինած էր Խասգիւղի* Ս. Ստեփաննոսը, *եւ 1835ին ալ շինեց Գուզկունճուքի* Ս. Լուսաւորիչը:

*Բարեսէր անձեր առատօրէն կը սատարեն այս վերաշինութեան, այսինքն՝ Գրիգոր ամիրայ Պալեան, Միքայէլ ամիրայ Փիշմիշեան, Յարութիւն ամիրայ Նորատունկեան, Յարութիւն ամիրայ Պէզճեան եւ Աղնաւուրեան եւ ուրիշներ, որոնց մանրամասն ցանկը զետեղած է Տէր Հմայեակ Քահանայ Խըքէրճեան իր Յիշատակարանին մէջ*[80]:

* *
*

*Ս. Խաչ հոյակապ, ընդարձակ եկեղեցի մ'է. մայր տաճարին երկու կողմերը կը գտնուին մեծ պահարաններ, որուն հարաւայինը նուիրուած է* Ս. Երրորդութեան *եւ հիւսիսայինը* Ս. Յարութեան, *ուր կը պահուի կենաց փայտի մասունքը, ամրակուռ յատուկ տուփի մը մէջ, եւ ուր կը գտնուի նաեւ Մկրտութեան շքեղ աւազանը: Այս պահարանը իր յատուկ ծախքովը կառուցած է Պէզճեան Յարութիւն, ինչպէս կ'ուսանինք Դուան*

[79] Ծանօթութիւնք Ստամպօլոյ Պատմութեան, *Հատոր Բ., էջ* 430:
[80] Յիշատակարան, *էջ* 24:

*վերեւը զետեղուած ոսկեզօծ Արձանագրութենէն, որ է·*

1830· ՇԻՆԵՑԱՒ ՄԱՏՈՒՌՍ ՅԱՆՈՒՆ ԵՒ
Ի ՓԱՌՍ ՅԱՐՈՒԹԵԱՆ ՄԻԱԾՆԻ ՈՐԴԻՈՅՆ
ԱՍՏՈՒԾՈՅ, ԱՐԴԵԱՄԲ ՔՐԻՍՏՈՍԱԶՕՐ ՊԷՉՃԵԱՆ
ՅԱՐՈՒԹԻՒՆ ԱՄԻՐԱՅԻ

*Եկեղեցին ունի երկու ընդարձակ գաւիթ եւ մեծ վերնատուն մը, չուրջ բոլորը կը պատեն բաւականի լայն պարտէզներ, որոնց հիւսիսայինին մէջ, Տէր Աբրահամի Գերեզմանին սնարի կողմը շինուած կայ՝ մարմարեայ գեղեցիկ տաշտ մը, որուն վրայ բոլորագիր փորուած է·*

«Շինեցաւ տաշտս ի յիշատակ հոգոյ Տէր ԱԲՐԱՀԱՄ ՔԱՀԱՆԱՅԻ Հիմնադրի սուրբ Եկեղեցւոյս· 1831 մայ“ 1»:

*Հարաւային պարտէզին մէջ ալ կայ յարենման շինուած տաշտ հետեւեալ Արձանագրութեամբ·*

«Շինեցաւ տաշտս խաչահանգստի ի յիշատակ հոգւոյ տիրացու ՄԱՐՏԻՐՈՍ պանծալի սարկաւագի եւ բազմերախտ պաշտօնէի Սուրբ Խաչին, 1831 մայ· 1[81]»:

*Այս* Մարտիրոս Սարկաւագը *մեծ ծառայութիւններ մատուցած է եկեղեցւոյն, եւ*

[81] *Տէր Աբրահամի եւ Մարտիրոս սարկաւագի նուիրուած այս տաշտերը շինած են Փիշմիշեան ընտանիքի անդամները, բակը գտնուած Ջրամբարին հետ միաժամանակ:*

միանգամայն՝ Թաղին կրթական գործին, ինչպէս պիտի տեսնենք քիչ յետոյ:

* * *

Եկեղեցին ունի ծառազարդ ընդարձակ բակ մը, ուր կը գտնուի բանկալը, ժամկոչներու խուցը, Քարոզչին եւ Քահանայներու սենեակները, Թաղական խորհրդարանը եւ Դպրաց դասու սրահը. իսկ Արեւելեան դին՝ Տաճարի խորանին ետեւը շինուած է լայնարձակ գանձատունը, որուն ետեւն ալ կայ՝ պարտէզի պէս մեծ տեղ մը: Հոս լայնածաւալ տարածութեան մը վրայ շինուած է ամենահաստատ եղական ջրամբար մը, եկեղեցւոյ տանիքին անձրեւի ջուրերը հաւաքելու եւ բաշխելու Թաղին պէտքերուն: Բայց սատի՝ Եկեղեցւոյ բակին մէջ ալ կայ մեծ ջրամբար մը որ շինուած է 1831ին ի յիշատակ Հոգւոց Սարգիս եւ Կարապետ ամիրայիցն Փիշմիշեանն, ինչպէս կը կարդացուի վրան:

Ս. Խաչ եկեղեցին փառաւոր տաճար մ'է, ինչպէս յայտնեցի արդէն. անոր արտաքինը չունի ճարտարապետական արուեստի չքեղութիւն, բայց ներքինը սիրուն է՝ հրապուրիչ, լուսաւոր:

Ունի սպիտակ մարմարեայ գեղեցկաշէն սեղան-բեմ, որուն խորանը՝ պատկերի համար կը կրէր ճաճանչաւոր հնամենի մեծ շրջանակ մը, որ 1892ին՝ չգիտեմ ի՞նչ Թելադրութեամբ վար առնուեցաւ եւ տեղը կաթողիկէի ձեւով նոր մը շինել տուաւ արքունի ճարտա-

*բապետ Բալուցի Աղնաւուրեան Յովհաննէս էֆէնտին, ի յիշատակ իւր վաղամեռ զաւկին* Թորոսի։

*Սեղանին ու դասին աջ ու ձախ կողմերը եւ որմերը, զարդարուած են Քրիստոսի Ծննդեան, Խաչելութեան, Թաղման եւ Յարութեան խորաներկ հիանալի պատկերներով, մանաւանդ Գեթսեմանին, որոնց մեծ մասը գծած է նշանաւոր պատկերահան Պէհզատ Ումէտ, եւ իւր աղջիկը, եւ մէկ մասն ալ Խաչփայէն յատկապէս բերել տուած է եղեր Պէգճեան ամիրայ։*

*Եկեղեցւոյն կամարաձեւ ընդարձակ ձեղունը զարդարուած է առ կախ երեք խիստ մեծ մոմակալ ջահերով, եւ շուրջանակի ալ փոքրերով, որոնք Ներսոյէ բերուած են մասնաւոր յանձնարարութեամբ եւ տօնական հանդիսաւոր օրերու միջոցին կը վառուին հիանալի լուսարձակութեամբ։*

*Տաճարին մուտքը կը դրաւէ աշտարակաձեւ սիրուն զանգակատուն մը, որ շինուած է* 1882*ին եւ ունի հետեւեալ Արձանագրութիւնը.*

ՇԻՆԵՑԱՒ ԶԱՆԳԱԿԱՏՈՒՆՍ ԱՐԴԵԱՄԲ ԱԶԳԻՍ ՀԱՅՈՑ ԵՒ ԱՆՎՀԱՏ ԱՇԽԱՏՈՒԹԵԱՄԲ Տ. ԳՐԻԳՈՐԻՍԻ Ս. ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԱԼԽԱԹՃԵԱՆ ԱՌԱՋՆՈՐԴ ՏԱՐՈՆՈՅ ԵՒ ՔԱՐՈԶԻՉ Ս. ԵԿԵՂԵՑԻՈՅՍ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ Տ. Տ. ՆԵՐՍԻՍԻ ԱԶԳԱՍԻՐԻ: 1882:

*Գում-Գաբուի Մայր Եկեղեցիէն յետոյ Իւսկիւտարի Ս. Խաչը համարուած էր Կ. Պոլսոյ երկրորդ նշանաւորը. մեծ ուխտատեղի էր*

եւ է, ունի եկեղեցական թանկագին ամենաշքեղ զգեստներ, որոնց շատերուն վրայ կը կարդացուի նուիրատուներու անունները, ինչպէս մանրամասն կը ներկայացնէ Տէր Հմայեակ Քահանայ, վերյիշեալ իր հրատարակութեանը մէջ (էջ 29—32):

*  *  *

Վաղ ժամանակներէ սկսած, եկեղեցական կարեւոր դէմքեր բնակած են այս եկեղեցին եւ հոն քարոզչութիւն ըրած: 1727ի վերաշինութենէն յետոյ անպատճառ Կոլոտ Յովհաննէս Պատրիարք կ'այցելէր երբեմն Ս. Խաչ. որու մասին Նալեան մեծանուն Յակոբ Պատրիարքը մասնաւոր հոգածութիւն ունեցած է եւ իր կենդանութեանը ջուր բերել տուած է շա՛տ հեռուներէն եւ հոսեցնել տուած խոշոր աղբիւրներով, որոնք եկեղեցւոյն հարաւ ու հիւսիսը երկու դուռներուն քովը շինուած կը մնան:

Այս առթիւ Սարգիս Դպիր Սարաֆ Յովհաննէսեանի Տեղագրութիւն Կ. Պոլսոյ ձեռագիր աշխատութեանը մէջ կը կարդանք հետեւեալը, զոր թէեւ անգամ մը հրատարակած եմ (Նոր-Լուր, 9 Սեպտ. 1927), բայց հարկ կը համարիմ կրկնել զայն՝ որ է.

«Այս Իւսքիւտար քաղաքի, ի բնակութեան թաղին Սելամսըզի ջուր բերեալ աղբիւր հոսեցոյց Յակոբ

*Պատրիարքն Ըստամպօլու Զիմառացի, Նալօղլի կոչե-ցեալ, եւ արար յիշատակ մեծ ի մերձ ի վախճան կե-նաց իւրոց, որ հանգեաւ ի Թուականին Հայոց ՌՄԺԳ յուլիս ԺԴ»* (1764):

*«Եւ քանզի յետ այնորիկ ճանապարհք անցից ջրոյն փոքր մի խանգարեալ եղծան, ապա ի Թուականին Ռ·Մ·Խ·Է* (1798) *կրկին յարդարեալ շինեցան խողո-վակք անցից ջրոյն, խնամական վերակացութեամբ Սար-կաւագ Տիրացու Մարտիրոսին, ի ջրոյ անուն նորա-կերտ աղբիւրք ինչ շինեալ հաստատեցաւ յԵկեղեցւոջ Սրբոյ Խաչին, ջանիւք եւ աշխատութեամբ նոյն Տիրա-ցու Մարտիրոսին, որ էր լուսարար Եկեղեցւոյ Սրբոյ Խաչին եւ մանկավարժ նորակերտ վարժարանին»:*

*Այն աղբիւրները կը հոսին դեռ այժմ եկեղեցւոյ այլեւայլ տեղերը, բայց անոր հիւ-սիսային կողմը գտնուած փողոցի մը մէջ կար երբեմն ուրիշ աղբիւր Նալեանէ շինուած, զոր* 1799—1800*ին իր ծախքով վերանորոգել կու-տայ Ասլուչեխցի Մահտեսի Աղնաւուրի որդի Գասպար ամիրայ:*

*Այս աղբիւրին վրայի Արձանագրութիւնը, զոր մեր տղայութեանը կը կարդայինք շարու-նակ եւ գոց ըրած էինք, յղեց ինձ Բերա* 1914*ին Տէր Տաճատ քահանայ Բաչայեան: Հրատարակած եմ զայն արդէն* «Հայ բժշկա-կան Արձանագրաբանութիւն» *աշխատութեանս մէջ*[82] *եւ է այսպէս.*

---

[82] Հայ բժշկական Արձանագրաբանութիւն, էջ 87—88:

ՏՐ Է ԵՐԱԽՏԵԱՅՍ ԵՒ
ԲԱՐԵՐԱՐՈՒԹԵԱՆՑ՝ ՆԱԽ
ՅԱԿՈԲ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆ Պ"Տ-
ՐԻԱՐՔՆ. ԵՒ ԵՐԿՐՈՐԴ՝ ԼՈՒ-
ՍԱՀՈԳԻ ՄԱՀՏԵՍԻ ԱՂՆԱ-
ԽՈՒՐԻ ՈՐԴԻ՝ ԳԵՐՅԱՐ-
ԳՈՅ ՄԱՀՏԵՍԻ ԳԱՍՊԱՐ
ԱՄԻՐԱՅՆ, Ի ՅԻՇԱՏԱԿ ԻՒՐ՝
ԵՒ ՀԱՄԱՅՆ ՆՆՋԵՑԵԼՈՑՆ:
ՌՄԽԸ [illegible] (1248 + 551 = 1799):

*Այս աղբիւրի մասին կայ նաեւ ուրիշ գրութիւն մը, որ կը պահուի Ս. Խաչի տօմարներուն մէջ եւ զոր դարձեալ Տէր Տաճատ քահանայ յղած է ինձ ազնուաբար, եւ է հետեւեալը.*

*«Մեծագործութիւնս եղեւ եւ կատարեց"ա զօրութեամբ սուրբ խաչին Քրիստոսի. այս է՝ շինութիւն աղբերս. քանզի՝ լուսաւորե"լ հոգի ապուշեկցի մահտեսի աղնաւուրի որդի՝ մահտեսի գասպար գերապատիւ ամիրայն ի ջրոյ իւրմէ՝ զոր եա բերել մեծաւ աշխատութեամբ, կէս մասուրայ ջուր՝ եւ զբոլոր ծախսն սոյն աղբերս՝ շնորհեաց սուրբ խաչ Եկեղեցւոյս, ի յիշատակ իւր եւ համայն կենդանեաց եւ ննջեցելոցն իւրոց. զոր տէր Յիսուս միշտասհոս պահեսցէ ի փառս սուրբ խաչին, եւ ի պարծանս ազգիս: 1800, ՌՄԽԹ, մայիսի ԺԲ»:*

1762—1763*ին է որ հասիլ սկսած է սոյն աղբիւրը, որ այժմ գոյութիւն չունի եւ անոր արձանագրութիւնը կրող քարը կը պահուի եկեղեցւոյն մէջ:*

* * *

*Դեռ ուրիշ նշանաւոր եկեղեցականներ եղած են հոն Քարոզիչ. ասոնց մանրամասն ցուցակը ներկայացնել կարելի չէ. աւշափը միայն բաւ ըլլայ գիտնալ, թէ նախկին Պատրիարքներ իրենց բնակավայր ըրած են Սուրբ Խաչի Եկեղեցին, որուն ճիշդ դէմը 1800ին կը շինուի ընդարձակ ու փառաւոր շէնք մը, որ մինչեւ վերջերս* Պատրիարքարան *անունով ճանչցուած էր: Այսպէս՝ բնակած է հոն Կարապետ Պալաթցի որ 1823—1831 պատրիարք էր, եւ 19 տարի քարոզչութիւն ըրած ու վախճանած է 1850ին. նոյնպէս՝ Յակոբոս Սերոբեան՝ որ երկիցս պատրիարք եղած է (նախ՝ 1839—1840, յետոյ՝ 1848—1856) միշտ բնակած է հոն, եւ ո՛չ միայն թաղին Քարոզիչը եղած է, այլ եւ՝ վերաշինողը այն տեղի Ազգային երկսեռ վարժարանին:*

*Անդրիանուպոլսեցի Սարգիս Պատրիարքն ալ իր հրաժարելէն յետոյ գացած ապրած է հոն, ու քոլէրայէ վախճանած 1865ին:*

*Խրիմեան Հայրիկ դեռ նորընծայ վարդապետ, ապրած է Ս. Խաչ. եւ ազգային օրէնքի պատրաստութեանը համար 1856ին կազմուած, Սահմանադրական անդրանիկ Յանձնաժողովին*[83] *անդամ ըլլալով հանդերձ, բացած է հոն 1855—1856 Տպարան մը եւ սկսած է հրատարակել իր* «Արծուի Վասպուրական»

---

[83] Մեղու *շաբաթաթերթ*, Կ. *Պոլիս* 1856, *Թիւ* 31, *էջ* 173—175:

հայրենաշունչ թերթը, որուն կողքին վրայ կը կարդանք՝

«ԸՆԴ ՀՈՎԱՆԵԱՒ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻՈՅՆ»

պարբերութիւնը։

Խրիմեան՝ բացի Արծուի Վասպուրականէն, այդ տպարանէն հրատարակած է նաեւ «Հրահանգ Մանկանց» անուն գործ մը. բայց 1858ին այդ տպարանը փոխադրած է՝ Վան եւ այն տեղ վերսկսած է իր թերթը՝ «Վանտոսպ» վերնագրով՝ որ դժբախտօրէն երկար չէ տեւած։

* * *

Լաւ կը յիշեմ թէ մեր մանկութեան օրերուն՝ Խրիմեան Հայրիկ տակաւին վարդապետ՝ Քարոզիչ էր դարձեալ Ս. Խաչ, ուր կը մնայ մինչեւ 1865, յետոյ կը մեկնի Վասպուրական աշխարհ եւ անտի Էջմիածին Եպիսկոպոս ձեռնադրուելու ու 1869ին կ'ընտրուի պատրիարք ու կը դառնայ Կ. Պոլիս։

Պատրիարքական պաշտօնավարութեան շրջանին գրեթէ ամէն ամիս կ'այցելէր Սուրբ Խաչ, հիւր մնալով մեծանուն Օտեան Գրիգորի տունը, որ կանգուն էր՝ եւ է՝ Եկեղեցւոյն արեւելեան կողմի փողոցին վրայ եւ որ վերջի ատեններս վերածուեցաւ դպրոցի։

Խրիմեան Հայրիկ այսպէս՝ Կ. Պոլիս գտնուած միջոցին Ս. Խաչ եկեղեցին իրեն սիրելի տեղն ընտրած էր եւ պատրիարքութենէ քաշուելէ վերջն ալ դարձեալ Քարոզիչ եղած է

հոն մինչեւ 1878 եւ այդ միջոցին՝ 1876—1877 գրած է՝ խաչի ճառը, Դրախտի ընտանիքը, Հայգոյժը, Վանգոյժը[84] եւ ուրիշ գործեր, որոնք իր անունն անմահ ըրած են։

Խրիմեան 1880ին մեկնած է Կ. Պոլէն իբրեւ Վանահայր Վարագայ վանքին, բայց 1887ին զրպարտութեան մը զոհ ըլլալով եկած է նորէն Կ. Պոլիս եւ դարձեալ Քարոզիչ եղած է Ս. Խաչի՝ մինչեւ 1890ի վերջերը. անկէ յետոյ փոխադրուած է Գուզկունճուքի Ս. Լուսաւորիչ եկեղեցին, ինչպէս պատմած եմ նախապէս։

* * *

Ս. Խաչի այս վերջի քարոզչութեան միջոցին է որ բարեբախտութիւնն ունեցած եմ աւելի ծանօթանալու Խրիմեան Հայրիկին, եւ ապրիլ իր մտերմութեանը մէջ։ Շա՛տ ու շա՛տ անգամներ կը պատուէր մեր խոնարհ յարկը ու կ՚օրհնէր մեր համեստ սեղանը։

Ջերմ սիրահար երկրագործական կենսատուղիտութիւններու, մեծ համակրութիւն մը ունէր հանդէպ Եղբօրս Գէորգ Թորգոմեանի, շրջանաւարտ Մօնբէլիէի Երկրագործական

---

[84] Խրիմեան Հայրիկի Վանգոյժը եւ Հայգոյժը՝ 1878ին սկիզբները Մինաս Չերազ թարգմանեց ֆրանսերէնի եւ Հայրիկ այդ թարգմանութիւններուն օրինակները հետը տարաւ Պէրլին վեհաժողովին զանոնք ներկայացնելու համար։

բարձրագոյն վարժարանէն, գովելով կը գովէր անոր արհեստի հմտութիւնը եւ Թուրքիոյ մէջ շերամաբուծութեան տարածմանը համար տարած աշխատութիւնները ու մատուցած ծառայութիւնները:

Կը սիրէր մեզ եւ Ինքը ինձ թելադրիր եղաւ, որ Հայ բժշկական պատմութեանս մէջ մանաւոր էջեր յատկացնեմ Համալսարանական հին Հայ բժիշկներու կենսագրութեանը, որուն ձեռնարկեցի անմիջապէս եւ կը շարունակեմ ցարդ:

1889ին երբ որոշեցի իմ մեծ Քրոջս հետ դէպի Փարիզ ճամբորդութիւն մը ընել, մեկնումէս առաջ՝ կիրակի օր մը Հայրիկին պատարագ մատուցանել տուի Ս. Խաչի Եկեղեցին, ի յիշատակ Իւսկիւտարի բոլոր Հայ ննջեցեալներուն: Սրբազան Հայրիկը այդ օրը շատ յուզիչ քարոզ մը խօսեցաւ եւ եկեղեցւոյ բեմէն յաջողութիւն մաղթեց ինձ յամբոկ ածելու սկսած Հայ բժշկական պատմութիւնս:

Շոգենաւ նստած օրս՝ գացի մնաք բարովի նորին Սրբազնութեան, ճակատս համբուրեց ու «շուտ վերադարձի՛ր» ըսաւ, եւ օրին մէկն ալ ինձ Փարիզ ուղղեց նամակ մը, զոր կը պահեմ իբրեւ թանկագին ինչ, եւ այժմ՝ կը ներեմ ինձ զետեղել զայն Ծանօթագրութիւններուս մէջ, հակառակ որ անձնականիս է այն վերաբերեալ.

Առ Մեծ" սիրելի իմ տօքտոռ Վ. Թորգոմեան
ի Փարիզ:

Սիրելի տօքտոր.

Սիրեմ գրեդ. դարձի՛ր հերիք է. դի «ո՛չ յագի աչք տեսանելով եւ ո՛չ լցցի ունկն լսելով»:

Անճարակ եւ խեղաղար Ցոմնանեանի համար[85] արդէն յանձնարարութիւն ըրի ձեզ բերնով, դարձեալ կը յիշեցնեմ ձեզ գրովս, որ այդ յուսահատ երիտասարդի համար մի ճար եւ դարման գտնէք: Մեր կողմէն ողջունելով ղէգնայեան Գ. Գաբրիէլ՝ միջնորդէք եւ խօսիք:

Անշուշտ կը մտածես Հայրիկին ընծայ մի բերելու. Հայրիկ ծերացեր ու մանկացեր պատկերներու հետ պէտք է խաղայ. Աստուածաշունչի պատկերներ[86] կ'ուզեմ բայց գունաւոր չեմ ուզեր, այլ պարզ եւ սեւ:

Մատուցէք ողջոյնս Նաղելի քրոջդ, որ այժմ Փարիզուհի դարձած է:

Աղօթարար
Հայրիկ:

1889 յուլիս 26,
յԻւաքիտար:

Ամուսնութեանս նշանտուքին ինքը անձամբ ներկայ եղաւ Ազգային պատրիարքարան իբրեւ վկայ, եւ երբ Երուսաղէմ գնաց, հոնկէ ալ երկիցս գրեց ինծի իր սրբազան նամակները, որոնցմով իմ դարմանումիս կը յանձնարարէր իր Եղբօրորդին Խորէն Խրիմեանը.

Ահաւասիկ այդ նամակներն ալ թուականի կարգաւ.

---

85 Այս երիտասարդին համար հարկ եղած դիմումը ըրի Գ. Գաբրիէլ Էգնայեանի քով եւ այս բարեսիրտ անձը չի մերժեց իր օժանդակութիւնը:

86 Մեծ քանակութեամբ ղրկեցի Ս. Գրքի պատկերներ ու տարի Հայրիկին, որ մեծ ուրախութեամբ ընդունեց զանոնք:

*Մեծ" տօքտօր Վահրամ էֆէնտի Թօրգոմեան*
*ի Պոլիս :*

*Մեր Եղբօրորդի Գ. Խորէն լի գոհունակութեամբ շնորհակալութիւն կը յայտնէ ձեր բարեխիրտ Ազնուութենէն որ իւր հնացած յօդացաւ դարմանելու շնորհ արած էք :*

*Առ այս Հայրիկ իւր շնորհակալութիւն եւ օրհնութիւն տալէն յետոյ, դարձեալ ձեր խնամոց կը յանձնարարեմ, եւ կը յուսամ թէ ձեր ճարտար ձեռք պիտի բժշկէ մեր Եղբօրորդին. վասն զի նա շատ պիտանի է Վարագայ վանուց դպրոցին, որոյ տեսչութիւն իրեն յանձնուած է :*

*Թօրգոմեան գերդաստանին բարի ծնողքներէն ողջունել բոլոր անդամոց ողջոյն մատուցէք :*

*Աղօթարար*

1892 *Սեպտ. 7 :* *Խրիմեան Հայրիկ :*

*Մեծապատիւ Տօքտօր Վահրամ Թօրգոմեան*
*ի Պոլիս :*

*Մեծ" տօքտօր Վահրամ*

*Սիրելի Մեր.*

*Ձեր պատուական նամակն շատ վաղուց ստացած եմ. ներողութիւն կը խնդրեմ, որ չի կրցայ շուտ պատասխան գրել, դու գիտես հօ՛ Հայրիկ նամակներու մէջ խեղդուած է : Պարոն Խորէն բաւական իւր յօդացաւէն կազդուրած է. բայց կարծեմ սաստիկ ցուրտն ու ձմեռն պիտի նեղէ զինքն եթէ չզգուշանայ : Ինքը միշտ լի բերանով շնորհակալութիւն կը յայտնէ ձեր բարեխիրտ խնամատարութենէն. ես էլ այս տեղէն կ'աղօթեմ եւ կ'օրհնեմ զձեզ :*

*Իմ սիրելի Գէորգ էֆէնտիի արդի վիճակ չեմ գիտեր, պաշտպան փաշայի մեռնելէն*[87] *յետոյ՝ կը յու–*

---

[87] *Յակոբ բաշա Գազազեան, որ նախարար էր կայսերական գանձի գործողութեան, եւ խիստ գնահատող էր եղբօրս :*

տամ որ իր պաշտօն կը շարունակէ քիչ մի յարմարելով կաթոլիկ[88] պաշտօնէին։ Բայց ո՞ւր մնաց իր էջծախելու խնդիրն[89]. ամէն անգամ կրտսեր եղբայրներ աւելի ճարպիկ կը լինին գործ տեսնալու. խակ այս անգամ դու ճարպիկ եղար. ինչո՞ւ չէ. բժիշկներու բախտ բաց է. տունէ տուն շրջելով իրենց ճաշն շուտ կը գտնեն. խեղճ Գէորգ էֆէնտին գաշտերու մէջ կը շրջի. ո՞ւր պիտի գտնէ։ Եթէ ինքն խելացի լինի շատ շուտ կը գտնէ. դաշտի մէջ արեւուն տակ եփած աղջիկներ շա՛տ. լաւ կը լինի որ Պուրսայի դաշտէն մի հատ առնէ եւ տուն բերէ։

Ի՞նչ լաւ կը լինէր եթէ Հայրիկդ ու Մայրիկդ ղրկէիր յԵրուսաղէմ, քանի որ Հայրիկն այս տեղ է, միթէ անոնք էլ դէպ Երուսաղ° երթալ կ՚ուզեն[90]։

Ողջունելով համայն Թորգոմեան գերդաստան

Մնամ Աղօթարար

1893 փետրուար 3։ Հայրիկ։

Քաղցր եւ քաղցրագոյն յիշատակներ են ինձ համար այս նամակները, որոնց ընթերցումը զիս կը տանի յա՛նկարծ երիտասարդութեանս եւ բժշկական արուեստիս այն տարիներուն մէջ, երբ կ՚օրօրուէինք փայլուն յոյսերով, յոյսե՛ր՝ որոնք աւա՛ղ, ստապատիր երազներ են եղեր։

* * *

88 Միքայէլ բաշա Փորթուքալ տաղանդաւոր, հմուտ եւ ազգասէր Հայը, որ յաջորդեց Յակոբ բաշա Գաղաղեանի։

89 Ամուսնական խնդիրը ըսել կ՚ուզէ Հայրիկ Վանեցի կատակաբանութեամբ։

90 Հակառակ մեր ջերմ փափաքին չկարողացանք մեր ծնողքը ղրկել Երուսաղէմ։

Խրիմեան Հայրիկէն զատ Ս. Խաչի միայուն Քարոզիչ եղած են՝ Արիստակէս Եպ. Թափայէլեան, Պատրիարքական Տեղապահ եւ Ս. Կարապետի նախկին Քարոզիչ, որ վախճանած է Սելամիէ թաղին մէջ 1875 Նոյեմբեր 1ին:

Յովհաննէս Ծ. Վ. Փափազեան 1874—1877 եւ կրօնուսոյց:

Գրիգորիս Արքեպ. Ալէաթճեան՝ որ 1863—1866 «Թռչնիկ Պէզասեան» անուն թերթը հրատարակած է, պաշտօնավարած է Ս. Խաչ, նախ՝ 1886—1888 եւ յետոյ՝ 1890—1899 եւ հոն ալ վախճանած՝ 1899 Օգոստոս 15ին:

Քարոզիչ եղած են հոն նաեւ Բաբգէն Ծ. Վ. Կիւլէսէրեան (այժմ Կիլիկիոյ Աթոռակից կաթողիկոս): Մկրտիչ Եպ. Վեհապետեան, Խոսրով Ծ. Վ. Պէհրիկեան, Թորգոմ Եպ. Գուշակեան (այժմ Պատրիարք Ս. Երուսաղէմի), Գարեգին Եպ. Խաչատուրեան, Ղեւոնդ Եպ. Դուրեան եւ ուրիշներ, նաեւ երկու հատ ալ նախկին Մխիթարեան վարդապետներ, որոնք էին՝ Մարկոս վարդապետ (1869) եւ Մեսրոպ Վ. Ճերմակեան (1879):

* *
*

Ս. Խաչ միշտ նշանաւոր եկեղեցականներու կայան եղած է. եւ կը յիշեմ լսած ըլլալ հոն Յովհ. Եպ. Կապուտիկեան Խորէն Արքազան Նար-Պէյ, Խորէն Արքազան Աշըքեան (յետոյ Պատրիարք), Գարեգին Եպ. Սրուանձտեանց, Նիկողոս Եպ. Ազասեան, Մատթէոս

Եպ. Իզմիրլեան, Մելքիսէդէկ Արքեպիսկոպոս Մուրատեան, Մամբրէ Եպիսկոպոս Երուսաղէմի (նկարիչ) եւ այլ ուրիշ եկեղեցականներ:

Հոն պատարագած են կաթողիկոսներ: Այսպէս՝ 1809ին Դանիէլ Սուրմառեցի Կ.Պոլսոյ Պատրիարքը երբ էջմիածնի կաթողիկոս կ՚ընտրուէր նախ քան իր մեկնիլը, բնակած ու պատարագած է Ս. Խաչ[91]:

1858ին Մատթէոս Ա. ամենայն Հայոց կաթողիկոս ընտրուելէն անմիջապէս յետոյ՝ մեծահանդէս պատարագ մատուցած է հոն եւ հիւրընկալուած Նորատունկեանց բնակարանը ի Սելամիէ:

1875ին պատարագ ըրած է հոն նաեւ Աղթամարի Խաչատուր կաթողիկոսը, որ իր նախորդին սպանութեան գործին մէջ իբրեւ մեղսակից ամբաստանուած, Կ.Պոլիս բերուած է 1868ին եւ յետ տասնամեայ երկարատեւ քննութիւններու անպարտ, անմեղ հռչակուած է Ազգ. Ընդհ. Ժողովէն 1874ին եւ ապա վերադարձած է Աղթամար եւ հոն վախճանած 1896ին, իրեն հետ թաղելով խապառ Աղթամարի կաթողիկոսական Աթոռը:

* * *

Ս. Խաչ ունեցած է բազմաթիւ Քահանաներ, որոնց նշանաւորներն էին, բացի Հիմնադիր Տէր Աբրահամէն, Տէր Յովհաննէս Փափազեան, որ թէ՛ Աւագերէց եւ թէ՛ Ս. Խաչ

[91] Յիշատակարան Հնգեակ Յոբելեանի Ս. Խաչ եկեղեցւոյ, էջ 43:

վարժարանին Տեսուչ եղած է․ ուսումնական Քահանայ մ՚էր եւ 1860ի Ազգ․ Սահմանադրութեան խմբագրիչ Յանձնաժողովին գործօն մասնակցութիւն ունեցած է։

Նշանաւոր էին նաեւ Տէր Մարտիրոս Պարսկադէտ, Տէր Բարթող Պիւլպիւլեան, Տէր Գաբրիէլ Խանճեան եւ Տէր Սերովբէ Պօյաճեան քաջահմուտ երաժիշտները, որոնք եկեղեցական երգեցողութիւններուն մեծ զարկ տուած են․ եղած են դեռ ուրիշ քահանաներ, որոնց ժամանակագրական ցուցակը կազմած է Տէր Տաճատ Բաչաեան, ուրկէ առնելով հրատարակած է[92] զայն Տէր Հմայեակ Էքսէրճեան։

Բայց այս Քահանաներու շարքին Ս․ Խաչի պայծառութեանը եւ Թաղին զարգացմանը մեծապէս ծառայող ու սատարող եղած է Մարտիրոս Սարկաւագ, որուն անունը եկեղեցաշէն Հիմնադիր Տէր Աբրահամի, Նալեան Յակոբ եւ Սերոբեան Յակոբոս Պատրիարքներուն հետ անմահ մնացած է Ս․ Խաչի Տարեգրութիւններու մէջ։

Մարտիրոս Սարկաւագ որդի էր Արաբկիրցի Տէր Մովսէս անուն քահանային Ս․ Խաչի․ ծնած էր 1743ին եւ շա՛տ կանուխէն նուիրուած է Եկեղեցւոյն, որուն լուսարարապետ կ՚ընտրուի 1778ին[93]։ Իր այս պաշտօնավարութեամբը ո՛չ միայն մեծ խնամով ու հո-

92 Յիշատակարան հնգեակ Յոբելեանի Ս․ Խաչ Եկեղեցւոյ, էջ 81—87։
93 Անդ, էջ 56։

դամբութեամբ պահապան կ'ըլլայ Ս. Խաչի բոլոր դէպքերուն եւ հսկող անոր բարեկարգ երգեցողութիւններուն, այլ եւ կ'ընտրուի մանկավարժ անոր նորակերտ դպրոցին, որ կը հաստատուէր 1797ին, ինչպէս կ'աւանդէ մեզ Սարգիս Դպիր Սարաֆ-Յովհաննէսեան իր շարադրած Պոլսական Տեղագրութեանը մէջ[94], ուր կը տողէ հետեւեալը.

«Եւ այժմ սոյն Ս. Խաչ եկեղեցին մասամբ իմն նորոգ շինեալ է եւ առընթեր նորին՝ դպրոց մանկանց, նորակերտ որ շինեցաւ ի թուականին Հայոց ՌՄԽԶ» (1797):

Քիչ մը վերեւ տեսանք որ Սարգիս դպիր կը գրէր, թէ այս Մարտիրոս տարկաւագը (նորակերտ դպրոցին մանկավարժը), Նալեան Պատրիարքին բերել տուած ջուրին ճամբաները խանգարուած ըլլալուն, ինքը ամէն ջանք կ'ընէ ու կը յաջողի վերաշինել տալու զանոնք 1798ին: Անոր այդ գեղեցիկ գործը յաւէր–

---

[94] Ինծ սեպհական է այդ ձեռագիրը: Աւելորդ չըլլայ յիշատակել, որ՝ ինչպէս ամէն եկեղեցի, Ս. Խաչ ալ ունէր 4 կամ 5 գեղեցկաձայն ժամակոչներ, որոնք տաւոնները կանուխ կը շրջէին փողոցները, երգելով՝ «Ո՜վ բարի Քրիստոնեայք, եկայք ի սուրբ Եկեղեցի»: Եկեղեցւոյն մէկ խցիկը կ'ապրէր միշտ ծերունի մուրիկ մը, զոր Պապուկ-Ամուսնայն կ'անուանէին, եւ որ եկեղեցւոյն դուռը կանգնած խունկ կը ծախէր: Սա սովորութիւն ունէր չարաճ երեխները միայն դուրս ելլալ՝ թեւն անցուցած կողովիկ մը՝ որուն մէջ դիզած էր խունկի փոքրիկ ծրարիկներ, եւ փողոցները ման գալով կ'երգէր՝ «Անուշիկ հոտով խունկ առէ՛ք, կիրամուտք գիշերով, ողորմած Աստուած քէտէրէ, փորձանքներէ պահէ ձեզ, մեռելներնուդ հոգիները լոյսերու մէջ հանգչեցնէ» եւն ... ո՜վ անմեղունակ ժամանակներ ... ի՜նչ շուտ ո՜րչափ արագ սահեցաք, գացիք...:

*ժայթքատակ ընելու համար է որ Եկեղեցւոյ հարաւային թաղին մէջ գտնուած ջրատաշտը կը կրէ Մարտիրոս Սարկաւագին անունը:*

* * *

*Բացի ջրուղիներու վերաշինութեան պատճառ ըլլալէ, լուսարարապետութենէն, դպրապետութենէն[95] եւ մանկավարժի պաշտօնէն, Մարտիրոս Սարկաւագ ջանադիր եղած է թաղին դպրոցը օժտելու Մատենադարանով, որու մասին քիչ յետոյ:*

*Այս յողնաջան եւ կրթասէր Սարկաւագը 70 տարեկան հասակին մէջ կնքած է իր բեղմնաւոր կեանքը 1813 Ապրիլ 4ին եւ թաղուած է Իւսկիւտարի Ազգային Գերեզմանատունը, ուր ունի փառաւոր շիրիմ մը գեղեցիկ Տապանագրով, զոր կը կարդամ Տէր Հմայեակի աշխատութեանը մէջ[96] ու կ'արտագրեմ այստեղ.*

ՄԱՀԱՐՁԱՆ
ՅԱԻԵՐԺԱՅԻՇԱՏԱԿ ԵՒ ՊԱՆԾԱԼԻ ՏԻՐԱՑՈՒ
ՄԱՐՏԻՐՈՍ ՍԱՐԿԱՒԱԳԻՆ

*«Ա՛ռ ընկա՛լ ի քեզ նուագ պարծանաց ապրող վաղորդեան,*
*Զի ի քեզ հանգչի լերին Գողգոթայ փառըք քաւութեան,*
*Եւ դուք վրդովեալք Անմահ Զուարթունք ջոկք հրակերպեան,*
*Տարժեցէ՛ք աստէն յակումբ գեղապար քնաբերդակ ձայն,*

---

[95] Հնգեակ Յոբելեանն, էջ 57:
[96] Հնգեակ Յոբելեանն, էջ 52:

Բըղխեցէ սատէն անթարշամ նոճի մաքրա-
փայլ շուշան,
Թաղայցեն վտակք խոնեալ ընդ Եդեմ ոգիք
բուրականեան,
Զի սա բարեփառ հայրենասիրի շքեղ մահար-
ձան,
Սա նորոգ պճնէ ըղձին յիշատակ փառապանծ
Հայկեան,
Սա ի վեր ամբարձ քաւութեան խմբին Տաճար
Սրբարան,
Սովաւ կանգնեցաւ գեղեցիկ վարժից Նոր
Ուսումնարան,
Սա ճոխ եկամուտ մթերեալ ի պէտս մանկանց
Թորգոմեան,
Դիւրաքայլ գործեաց . . . . . . . . . . . . . . .[97]
Եօթնակի սասամբ պսակեալ սատէն գիւր
ամաց շրջան,
Սլացաւ ի վեր ի թռիչս հոգւոյ, յԱնմահից
կայան:

Վախճանեցաւ
Յամի Տեառն
1813 յԱպրիլի 4 :»

* * *

Ինչպէս ըսած եմ նախապէս, Ս. Խաչ Եկե-ղեցին մեծ ուխտատեղի եղած է, շնորհիւ իր ունեցած «Սուրբ կենաց փայտ»ի իսկական մասունքովը, զոր ստացած է 1787 Մայիս 2ին՝ վաւերացուած Կաղզուանցի Զաքարիա Պատ-

---

[97] Այս տողին վերջին բառերը եղծուած են եղեր:

ըմպարքին յատուկ կոնդակովը[98], որ կը պահուի Գանձարանը:

Ամէն ուրբաթ անոր խաչահանգիստի օրն է, ո՛ր ատեն կ՚երգեն դպիրներ «Զօրութիւն Ս. խաչի քո Քրիստոս» հիմնայլի չարականը:

Խաչվերացի տաղաւարին է որ կը կատարուի Եկեղեցւոյն Տօնը, շքեղ եւ արտակարգ հանդիսութեամբ, եւ օրուան Պատրիարքը մասնաւորապէս կը հրաւիրուի պատարագելու. այսպէս՝ տեսած ենք այդ առթիւ Պօղոս Թաքթաքեան, Մկրտիչ Խրիմեան, Ներսէս Վարժապետեան, Խորէն Աշըքեան, Մատթէոս Իզմիրլեան, Մաղաքիա Օրմանեան եւ Եղիշէ Դուրեան, Պատրիարքները որոնք եկած ու պատարագած են հոն, եւ ընդարձակ եկեղեցին կը լեցուէր ա՛յնպիսի հոծ բազմութեամբ, որ ներս մտնել կամ դուրս ելլել կարելի չէր ըլլար:

* *
*

Շա՛տ կանուխէն կազմուած է հոն Դպրաց դաս, որուն սկզբնաւորութիւնը կը կորսուի 1710—1720 թուականներուն միջեւ: Բայց ըստ Տէր Հմայեակ Քահանայի հետազօտութիւններուն առաջին Դպրապետը կ՚ըլլայ հոն ոմն Տիրացու Գալուստ, որուն պաշտօնը կը տեւէ 1765—1780:

Ասոր կը յաջորդէ Տիրացու Մարտիրոս Աւագ Սարկաւագը եւ կը դպրապետէ մինչեւ

[98] Տե՛ս Աշխատասիրութիւն Յոբելինական Տէր Հմայեակ Քահանայի, էջ 27—29:

1802· եւ հետզհետէ ուրիշներ կ'ըլլան դպրապետ, ինչպէս 1803ին Տէր Բարթուղիմէոս Քահանայ, 1804ին Տէր Պետրոս, 1805ին Տիրացու Քերովբէ Թօսպաթլեան եւ 1810ին սորա որդին Տիրացու Մկրտիչ։ Սակայն այս թուականէն յետոյ կ'անուանին համբաւաւոր երաժիշտ դասատուներ, որոնք են՝ 1815ին Տիրացու Գամաղիէլ Մերկերիոսեան, 1822ին Տիրացու Առաքել եւ 1826ին Մաղաքիա Դպիր Ճիշմանեան որ էր Ղեւոնդ Եպ. Ճիշմանեանի հայրը։

1850ին դպրապետ է երաժիշտ Յակոբ Ադամեան, 1845ին Նօթաճի Ալեքսան, եւ առնցմէ յետոյ դպրապետ կ'ըլլան ոչ-երաժըշտագէտներ եւ եկեղեցական երգեցողութեան համար դասատու կ'որոշուի Տիրացու Գրիգոր, որուն կը յաջորդեն հետզհետէ համբաւաւոր Տիրացու Արիստակէս, Պապա Համբարձում Չէրչեան († 1901), Տէր Գաբրիէլ Խանճեան († 1903), Տէր Բարթողոմէոս Պիւլպիւլեան († 1885), Յակոբ (յետոյ Տէր Սեբովբէ) Պօյաճեան († 1887) եւ Լեւոն Խանճեան, Երմոզ Գույումճեան քաջ երաժշտագէտները[99], որոնց բոլորն ալ ճանչցած եմ ժամանակին։

Եւ այսպէս Ս. Խաչի համբարը եղած է խիստ հռչակաւոր, մինչ այժմ՝ բոլորովին

---

[99] Տե՛ս Յոբելինական աշխատասիրութիւնը Տէր Հմայեակի, էջ 97—98։

*անշքացած, կանգուն է միշտ ամայութեան մէջ, իբրեւ մահարձան անհետացած անցեալ փառքերու:*

* * *

*Եկեղեցւոյն հետ դրեթէ միաժամանակ դպրոցի պէս բան մ'ալ ունեցած է Թաղը եւ Թերեւս՝ Տէր Աբրահամի բնակարանին մէջ էր այն. բայց իսկապէս դպրոց կամ վարժարան գոյութիւն ունենալ սկսած է 1777ին*[100] *եւ տեւած է մինչեւ 1797, ո՛ր տեեն Ս. Խաչի մատնակի նորոգութիւններու միջոցին* «Նորակերտ» *կը չինուի այն, ինչպէս կ'աւանդէ Սարգիս Դպիր Սարաֆ Յովհաննէսեանի այս մասին գրածը, զոր նոյնութեամբ ներկայացուցի արդէն Մարտիրոս Սարկաւագին մասին ըրած յիշատակութեանս մէջ:*

*Այս նորակերտ վարժարանին Կաղզուանցի Զաքարիա Պատրիարքին յատուկ կոնդակովն է*[101], *որ* Մարտիրոս Սարկաւագ *կը հրաւիրուի ու կ'որոշուի* «մանկավարժ», *ու Թաղին կրթական գործը ժամանակին համաձայն դգալապէս կը բարձրացնէ, պաշտօնավարելով մինչեւ իր մահը՝ 1813:*

*Ինչպէս տեսանք նախապէս, Մարտիրոս Սարկաւագ բազմերախտ աշխատաւոր մ'եղած է եւ վարժարանին խիստ կարեւոր մէկ պէտքն ալ հոգացած է, օժտելով զայն Մատենադա-*

---

100 *Տես Յիշատակարան Յոբելեանի էջ 54ին մէջ եղած տեղեկութիւնները զորս Տ. Հմայեակ քաղած է Եկեղեցւոյն հին տոմարներէն:*

101 Անդ, *էջ* 61:

բանով մը, ուր հաւաքած է ո՛չ միայն իրեն սեպհական գիրքերը, այլ եւ՝ չորս կողմէն կարեւոր մատեաններ ժողվելով ճոխացուցած է զայն:

Ամէն մէկ հատորը տեղ տեղ կնքած է իրեն սեպհական կնիքովը, մէջերը ձեռագրելով նաեւ՝ «ո՜վ որ գողանայ կամ իւրացունէ, ընդ անիծիւք եղիցի» տողերը, զորս կարդացած եմ 1889ին, վարժարանին արդի Մատենադարանը աշխատելու գացած ժամանակս:

Մարտիրոս Սարկաւագ իր անունը գրած է նաեւ 18րդ դարու Հայ բժշկական պատմութեան մէջ, ընդօրինակած ըլլալով 1787 Օգոստոսին Սիմէոն Մագիստրոսի «Յաղագս Կերլեաց Զօրութեանց» սքանչելի գործը, զոր ընտիր գրաբարի թարգմանած է 1783ին մեծանուն Գէորգ Պատուելի Պալատեցին: Առանց Մարտիրոս Սարկաւագի երբեք գաղափար չպիտի ունենայինք բժշկական այս կարեւոր ձեռագրին վրայ, զոր ծանօթացուցած եմ 1890ին (տե՛ս «Արեւելք», Կ. Պոլիս, Թիւ 1926, Յունիս 18/30, 1890) եւ որ կը պահուի այժմ Ս. Խաչի Մատենադարանը ու կը կրէ 228 թիւը, մէջն ալ Մարտիրոս Սարկաւագի կնիքը 1779 թուականով:

* * *

Ս. Խաչի այս վարժարանը միայն մանչերու յատուկ՝ անխափան կը շարունակուի, եւ 1846էն մինչեւ 1849 կ'ունենայ խիստ փայլուն վիճակ մը, շնորհիւ՝ Տնօրէն Տէր Յովհաննէս

Փափազեան ուսումնական Քահանային, ինչպէս կ'իմանանք Տէրոյենց Պասուելի հրատարակած «Հայաստան» թերթէն[102] եւ Զմիւռնիոյ «Արշալոյս Արարատեան»ին մէջ հրատարակուած թղթակցութենէ մը[103], որ վարժարանին խիստ փայլուն յառաջադիմութիւնը գովելով կը գովէ եւ կը նկարագրէ տեղի ունեցած մրցանակաբաշխութեան հանդէսը, որուն կը նախագահէ Վրթանէս Ծայրագոյն վարդապետը ի դիմաց Մատթէոս Պատրիարքին:

Վարժարանը այդ միջոցին կը մատակարարուի եղեր յատուկ «խնամատար» ընկերութեան մը ձեռքով, որուն Ատենապետն եղած է Փիշմիշեան Նշան աղա:

Տնօրէն Տէր Յովհաննէս մասնաւոր ուժ տուած է եղեր մայրենի գրաբար լեզուին, եւ աշակերտներուն պատրաստել կու տայ եղեր մեր նախնեաց յիշատակին նուիրեալ ճառեր, որոնց մէկ հատը՝ ճառ ասացեալ ի շաբաթական քննութեան Ս. Խաչի դպրատան Իւսկիւտարու, ի գովեստ սրբոց թարգմանչաց մերոց, հրատարակած է յետոյ Արշալոյս Արարատեան[104]: Բայց ուրիշ թղթակցութիւն մը որ 1847ին հրատարակուած է, եւ կը նկարագրէ տարեկան մրցանակաբաշխութեան հանդէսը· կարեւոր կը համարիմ զետեղել հոս

[102] Հայաստան, Ա. տարի, Թիւ 24, 7 Դեկտեմբեր 1846:

[103] Արշալոյս Արարատեան, Զմիւռնիա, Թիւ 285, 16 Մայիս 1847:

[104] Անդ, 10րդ տարի, Թիւ 345, 2 Սեպտ. 1849:

իբրեւ կարեւոր էջ մը, Ս. Խաչի հին վարժարանին կրթական վիճակին պատմութեան։ Ահաւասիկ այն[105].

«1847 Հոկտեմբեր 12ին Կիրակի օրը տեղի կ'ունենայ Իւսկիւտարի Ս. Խաչ Եկեղեցւոյն դպրատան աշակերտաց հարցաքննութեան հանդէսը, ուր տեղ ներկայ էին Ամենապատիւ Սրբազան պատրիարքը, քանի մը գիտնական վարդապետք եւ վարժապետք, այլեւ՝ Մխիթարեան Միաբանութենէն վերապատուելի Հ. Մովսէս վարդապետը՝ ընկերութեամբ ուսումնական վարժապետի մը, եւ ուրիշ շատ մը յարգի անձինք։ Հանդէսը յիշեալ եկեղեցւոյն մէջ եղաւ, որ արժանաւոր կերպիւ ըստ պահանջման բարեպատեհութեան պարագայից զարդարեալ էր, եւ մէջ տեղը մեծ գրասեղան մը դրուած էր, որուն վրայ կը տեսնուէին Երկրագունդ մը եւ աշակերտաց ազգի ազգի շարադրութեանց եւ գեղեցկագրութեանց փորձերը։ Կէս օրին գրեթէ ժամ մը մնացած՝ զանգակին հնչումը բազմաթիւ հանդիսականաց ուշադրութիւնը հրաւիրեց եւ անմիջապէս հայկաբանութեան դասատու արժանապատիւ Պօղոս վարժապետը սկսաւ իւր պատրաստած ճառը խօսելու։

Այս ատենախօսութենէն ետքը աշակերտները քննուեցան հայկաբանութեան առաջին եւ երկրորդ մասին վրայօք, եւ ուսումնական աշխարհագրութեան վրայօք, եւ հասարակօրէն ամէնքն ալ քաջ պատասխաններ տալով իրենց եղած հարցմանցը, բոլոր ունկնդիրները խիստ գոհ եղան անոնց յառաջադիմութենէն եւ բարեկրթութենէն. նմանապէս ձայնաւորի աշակերտները հանդիսականաց սիրտը զմայլեցուցին՝ իրենց ներդաշնակաւոր երգերովը, որոնց համար կը պարտաւորիմ շնորհակալ ըլլալ ձայնաւորի դասատու պատուելի պարոն Ալէքսանին։ Այս օրուան՝ այսինքն ամսոյս 12ին հարցաքննութեան վերջը՝ յառաջադէմ աշա-

---

[105] Արշալոյս Արարատեան, Զմիւռնիա, Ցրդ տարի, Թիւ 297, 31 Հոկտ. 1847։

կերտաց մրցանակներ եւ արժանաւոր գրքեր պարգեւեցան Ամենապատիւ Սրբազան Պատրիարքին ձեռօքը, որ իր սովորական ազգասիրութեամբը ազդու եւ ջերմեռանդ առենաբանութիւն մը ընելով՝ քաջալերեց զանոնք յարատեւել իրենց ուսումնասիրական արդասաւոր աշխատութեանցը մէջ, եւ օրհնելով ընկերութեան վերատեսուչ մեծապատիւ Նշան աղան Բիշմիշեան եւ արժանայարգ հոգաբարձու աղաները, բարեջան վարժապետները եւ ուսուցիչները, եւ ամենէն ալ շնորհակալ ըլլալով հայրաբար՝ կնքեց իր պատուական առենախօսութիւնը: Արդ՝ որովհետեւ մէկ օրուան մէջ անհնար էր որ լմնայ բոլոր աշակերտաց հարցաքննութիւնը, վասն որոյ հետեւեալ կիրակէն, այսինքն Հոկտեմբերի 19ին՝ վերստին գումարուեցաւ ժողովը վերոյիշեալ Եկեղեցիին մէջ, եւ մնացեալ աշակերտները քննուեցան հայկաբանութեան Երրորդ եւ Չորրորդ մասին վրայօք, որոնց դասատու է արժանապատիւ Արապեան Մանուկ վարժապետը: Յետ այսորիկ սկսաւ գաղղիարէն լեզուին հարցաքննութիւնը, որուն դասատու է արժանայարգ Սօֆիալըեան պարոն Անտոնը, որ եւ գաղղիարէն ճառ մը խօսեցաւ: Վերջապէս թուաբանութեան սկզբանց վրայօք ալ հարցաքննութիւն ըլլալով, հանդէսը կատարեցաւ, եւ առաջին մրցանակի արժանաւոր յառաջադէմ տղայոց վկայական տրուեցաւ. իսկ երկրորդ մրցանակի արժանաւորաց ալ յառաջադիմութեան տոմսակներ շնորհուեցան: Ահաւասիկ վկայական առնող աշակերտաց անուանքը, զորոնք արժան համարեցանք հրատարակելու՝ նախանձաւորութեան գրգիռ մը տալու համար: Պարոնայք՝ Գարեգին Աւետիսեան· Սերովբէ Կարապետեան· Գաբրիէլ Գէորգեան· Յարութիւն Սամիկեան· Յարութիւն մահտեսի խտըրեան· Գարեգին Փափազեան· Յարութիւն Ջաֆարեան· Պետրոս Ստեփանեան· Գրիգոր մահտեսի խտըրեան· Յարութիւն Յակոբիկեան· Պօղոս Գալստեան· Խաչատուր Տէր Անդրէասեան· Սարգիս Գէորգեան· Աւետիս Յակոբեան· Ստեփան Թագւորեան:

Ընդ ամէնը 15 աշակերտք, որոնք վկայական

*բատացան։ Արդ՝ կը մնայ մեզ մէկ պարտաւորութիւն մը եւս կատարել. մեր մտերիմ երախտագիտութիւնը լրագրին միջոցաւը մատուցանել Բէշիքթաշեան մեծաշուք Նշան Աղային՝ յիշեալ դպրատան բարեկարգ յառաջադիմութեանը համար, որուն վերատեսչութեան պաշտօնը բարենախանձ եռանդով մը ի գործ կը դնէ. արժան կը համարիմք նաեւ գովութեամբ յիշատակել Տէր Յոհաննէս գիտնական եւ բարեկրօն քահանային բարեջան տնօրէնութիւնները, հայկաբանութեան դասատու պատուելի Պօղոս վարժապետին ջերմեռանդ ջանքը, նմանապէս գեղեցկագրութեան ուսուցիչ պարոն Աւետիսին յօժարամիտ աշխատութիւնը*[106]»։

*Վարժարանին այս փայլուն յառաջադէմ վիճակը տեւական չ՚ըլլար դժբախտաբար. աղէտալի հրդեհ մը դայն բոլորովին մոխիր կը դարձնէ 1850ին, եւ հարկ կ՚ըլլայ՝ որ Եկեղեցւոյ վերնատունը կամ պալիթները ծառայեն Դպրոցի։*

*Սակայն այն միջոցին Դպրոցին նիւթականը կ՚իյնայ խիստ անձուկ դրութեան մը մէջ, որուն համար Հոգաբարձութիւնը կը ստիպուի՝ ի նպաստ անոր, սարքել վիճակահանութիւն մը, որ կը պսակուի կատարեալ յաջողութեամբ, ինչպէս կը յայտնէ Զմիւռնիոյ* «Արշալոյս Արարատեան»*ը*[107]։

*Ճիշդ ինը տարի վարժարանը կը մնայ*

---

[106] *Ըստ այս թղթակցութեան բոլորովին սխալ կը համարիմ Տէր Հմայեակի պատրաստած Յոբելինական Ցիշատակարանին այն տողերը, որոնք Ս. Խաչ վարժարանը 1846ին այրած կը համարին եւ վերաշինուած 1857ին (էջ 61)։ Ս. Խաչ վարժարանը հրդեհի ճարակ եղած է 1850ին եւ վերաշինուած 1859—1860, ինչպէս կը յայտնեն անոր Արձանագրութիւնները։*

[107] Արշալոյս Արարատեան, 13*րդ տարի*, *Թիւ* 436, 27 *Փետրուար* 1853։

ոյրեցաւեր, եւ երբ Յակոբոս Սրբազան Սե-
բոբեան 1848—1856 թուին պատրիարքու-
թենէն վերջնականապէս հրաժարելով կը քա-
շուէր Իւսկիւտար Ս. Խաչ, իր կէս նպաստա-
կին կ'ընէ Դպրոցին վերաշինութիւնը:



Հակառակ իր ութսուն եւ աւելի ձմեռ-
ներուն, այս պատուական ու աննման Եկեղե-
ցականը ո՛չ մէկ ջանք չի խնայեր առ այդ, եւ
իր բոլոր ունեցած-չունեցածը մինչեւ անգամ
եպիսկոպոսական թանկագին մատանին ծա-
խելէն զատ, կը դիմէ աջ ու ձախ, կը հաւաքէ
ժողովուրդին լումաները եւ երեք տարուայ
անձանձիր ու անվհատ ջանքերով աշխատու-
թիւններէ վերջ, կը յաջողի վարժարանին շի-
նութեանը համար հարկ եղած արտօնութիւնն
ու գումարը ձեռք բերել[108] եւ հիմնարկէքը
կատարել 1859 Օգոստոս 22ին, ինչպէս կ'ա-
ւանդեն վարժարանին այլեւայլ կողմերը զե-
տեղուած Արձանագրութիւնները, զորս կա-
րեւոր կը համարիմ նոյնութեամբ ներկայաց-
նել քիչ յետոյ:

Շինութիւնը՝ որու միջոցին Յակոբոս
Սրբազան, հակառակ իր ալեւոր վիճակին,
անձամբ քար եւ կիր կը կրէ եղեր[109], կ'ա-

---

[108] Յոբելինական Յիշատակարան, Տէր Հմայեակ Քահանայի, էջ 61—62:

[109] Յակոբոս Սրբազանին այս անձնուիրութիւնը շատերէ լսած եմ, բայց Նշան Ճիվանեան (Հօրս), իր զգայութեամբ աչքովը տեսած ըլլալով հիմնադիր Սրբազանին իբրեւ գործաւոր շինութեան աշխատիլը,

ւարտի մէկ տարիէն եւ Ս. Խաչ Եկեղեցին իր կողքին կ'ունենայ՝ ոչ միայն մանչերու, այլ եւ աղջիկներու վարժարան, որ առաջին անգամ ըլլալով կը հաստատուէր Թաղին մէջ:

Աստնց հանդիսաւոր բացումը կը կատարուի 1860ի վերջերը, Սուրբ Յակոբ Մծբնայ Հայրապետին Տօնին, որ Հիմնադիր Սրբազանին ալ անուան տարեդարձի օրն էր:

Այդ բացման հանդիսութեան յիշատակը մինչեւ այսօր ամէն տարի կը կատարուի մեծաշուք կերպով «Սուրբ Յակոբ»ին, եւ այդ առթիւ՝ Հիմնադիր Սրբազանին անունը՝ հետը նաեւ Նալեան Յակոբ Պատրիարքը կը պանծացնեն Եկեղեցական Երգերով, ճառերով ու արտասանութիւններով, նախ աղջիկներու կողմը՝ Տօնին շաբաթ օրը, եւ Կիրակի ալ՝ մանչերու Դպրոցը:

* * *

Գեղեցիկ ճարտարապետութեամբ ու առողջապահութեան պահանջներուն համաձայն շինուած՝ հոյակապ, քարուկիր, եռայարկ՝ փառաւոր վարժարան մ'էր որ կը կանգնէր Սելամիէի մէջ, մկրտուելով Ս. Խաչի անունով:

Լուսաւոր, օդաւոր եւ արեւաւոր մեծ ու ընդարձակ սրահներ եւ դասարաններ ու-

---

յիշատակութիւն մը գրեց այդ մասին: (Բիւզանդիոն, Թիւ 4637, Յունուար 1912:)

նին վարժարանները իրարու նման, ինչպէս նաեւ յատուկ ճաշարահ, խոհանոց, մասնաւոր Մատենադարան ու Խորհրդարան եւայլն:

Ս. Խաչ Եկեղեցւոյն ճիշդ քովը, բայց փողոցով մը անկէ բաժնուած՝ Վարժարանը կը տարածուի Եկեղեցւոյն ամբողջ երկայնքին ի վեր, նախ մանչերունը Արեւմուտք հայող, եւ կից անոր՝ դէպ Արեւելք՝ աղջիկներունը, երկուքն ալ պարտէզներով շրջապատ:

* * *

Շատ շքեղ է մուտքը[110], որ ունի մարմարեայ սիւներու վրայ յեց կամարաձեւ հովանի մը. ներքեւը վարժարանին երկաթեայ թանձր դուռը, որ կը բացուի բարձրիկէկ պարտէզի մը վրայ. այս պարտէզը կը բաժնուի երկուքի լայն միջանցքով մը, որ սալարկուած է նկարագեղ կիտկխտուած գոյնզգոյն խճաքարիկներով: Ասոնց սկիզբը՝ վարժարանին նախասեմին վրայ՝ գետինը չա՛տ յատակ ու յայտնի կերպով կը կարդացուի՝ գետնին վրայ քանդուած «Դպրոց Հայոց» խոշոր երկաթագիր տառերը:

Այս անցքը ներքին (մեր աշակերտութեան

[110] Այս մուտքին պատկերը հրատարակուած է 1927ին Տէր Հմայեակի Յոբելինական տետրին մէջ (էջ 80) եւ ապա Դուրեան Եղիշէ Պատրիարքին Քահանայութեան յիսնամեակին առթիւ լոյս տեսած Հատորին մէջ: (Մշակն ու վարձքը, Երուսաղէմ 1931, էջ 183:)

ժամանակ) կը ծածկէր երկաթէ ձողերով ու թելերով ամրակուռ շինուած հսկայ կամար մը, որուն վրայ հոյլ ի հոյլ կը փթթէին սուզակուն վարդենիներ ու յասմիկենիներ եւ այլ անուակ ծաղկենիներ, իրենց բուրումնաւէտ քաղցրութիւնը չորս կողմ տարածելով:

Մրջանցքին ստարտը կը տանուի 10—12 աստիճաններով մարմարեայ լայն սանդուխ մը, յետոյ սիւնազարդ ճեմելիք մը, որուն վրայ կը յառաջանայ շէնքին գեղեցկատեսիլ պատշգամը: Այս ճեմելիքին աջ կողմէն կ՚երթցուի բաւական մեծ պարտէզ մը, որուն ակիզբը կը գտնուի «խորհրդարան» կոչուած փոքրիկ շէնք մը: Դպրոցին ճիշդ մէջ տեղը կը բացուի մուտքի գլխաւոր դուռը, որուն վերեւը կը կարդացուի հետեւեալ բոլորագիր Արձանագրութիւնը մը սապէս.

Տեառն Յակոբայ Սրբազան Հօր յաւերժ
մնասցէ յիշատակ,
Ընդ Ազգասէր Բարերար տեարց Նորին ջա-
նից օժանդակ
Որ նուիրեն ի փառս կրօնի եւ գիտութեան
զայս նոր յարկ,
Հրով սիրոյ վերականգնեալ գԹողեալն ի
հրոյ աւերակ:
Աչ Տեառն յերկնից լիցի յաւէտ վարժարա-
նացս հովանի,
Որ յաճինէն իբրեւ փինիկ արդ պերճա-
գոյն ծնանի,

*Եւ աղբերքն իմաստութեան ուր Հայ*
*մանկտի ըմպել գայ,*
*Մի՛ այլ եւս ուստերց միայն այլ եւ դստերց*
*ջամբեսցի :*

*Յամի Տեառն 1859 Օգոստոս 22 սկսեալ*
*1860 Օգոստոս վերջ աւարտեալ :*

*Նոյն ճեմելիքին ձախ կողմը որմին վրայ ալ զետեղուած է մարմարեայ խոշոր տախտակ մը որ կը կրէ հետեւեալ 23 տողերը·*

ՈՂՈՐՄՈՒԹԵԱՄԲՆ ԱՍՏՈՒԱԾՈՅ

Ի ժամանակս Օսմանեանն Տէրութեան եւ բարձրագոյն հրամանաւ խաղաղասէր արքային

ՍՈՒԼԹԱՆ ԱՊՏԻՒԼ ՄԷՃԻՏ ԽԱՆԻ

Եւ ի Հայրապետութեան ամենայն Հայոց Տ· Տ· Մատթէոսի վեհափառ Սրբազան Կաթողիկոսի : Եւ ի Պատրիարքութեան Սրբոյ Աթոռոյն Երուսաղէմի Տ· Յոհաննու Արքեպիսկոպոսի : Եւ ի Պատրիարքութեան Կոստանդնուպոլսոյ Տ· Սարգսի Արքեպիսկոպոսի : Բրտնաջան երկասիրութեամբ եւ անխոնջ անձնադիր ջանիւք Տ· Յակոբայ ծերունազարդ Արքեպիսկոպոսի նախորդ Պատրիարքի Մայրաքաղաքիս : Տրօք եւ սատարութեամբ բարեխորհուրդ Ազգասէր Տեարց պայծառազոյնս վերականգնեցաւ ի հիմանց կրկին վարժարանս Սուրբ Խաչ Եկեղեցւոյ ի փառս կրօնի եւ գիտութեան.

Եւ նուիրեցաւ ի վայելս ուստերաց եւ դստերաց Լուսաւորչեան Հայ Ազգիս :

Յամի Տեառն 1859 Օգոստոս 22 սկսեալ եւ ի հետեւեալ ամի 1860 Օգոստոս վերջ :

*Դռնէն ներս լայն բակ մը, որ է առաջին յարկը, աջ ու ձախ պարուրաձեւ լայն սանդուխներով, որոնք կը հանեն երկրորդ ու երրորդ յարկի սրահները եւ դասարանները: Բակին ճակատը կը տարածուի վարժարանին ընդարձակ Սեղանատունը, որուն դրան քովերը կան մէկմէկ աղբերակ եւ վերեւն ալ գեղեցիկ վերտառութիւն մը 12 տող Ոտանաւոր, սապէս.*

ՎԱՂՈՒՑ ԷԻ ՄԱՆԿԱՆՑ ԱՐՈՒԱՑ ԴՊՐՈՑ ՄԻԱՑՆԱԿ.
ՀՐԴԵՀՆ ԱՆԳՈՒԹ Ո՜Հ ՅԱՆԿԱՐԾ ՅԱՃԻԿՆ ԴԱՐՁՈՑՑ ԶԻՄ ՏԵՍԱԿ.
ԻԲՐԵՒ ԱՅՐԻ ՆՍՏԵԱԼ Ի ՑՈՂԲ ՏՐՏՈՒՄ ՏԽՈՒՐ ԱՆԶԱԽԱԿ.
ՅԵՏ ԻՆՆ ԱՄԱՑ ԱՅՑ ԵԼ ԱՍՏՈՒԱԾ ՎԵՐԱԾՆԵԼ ԵՐԿՈՐԵԱԿ:
ՎԵՐՋԻՆՍ ՇԷՆՔ ՔԱՆ ԶԱՌԱՋԻՆՆ ԳԵՐ ՕՐԻՆԱԿ.
ՔԱՐՈՒԿԻՐ ԵՌԱՅԱՐԿ ՇՈՒՐՋԱՆԱԿԻ ԱՄՐԱՓԱԿ.
ԶՈՒՆԵԼՈՎ ԶԵՐԿԻՒՂ ԼԻՆԵԼ ԱՆՑԱԳ ՀՐՈՅՆ ՃԱՐԱԿ:
ԵՈՒՍԱՄԲ ՅԱՍՏՈՒԱԾ ԾՆԱՑՑ ՇԱՏ ԲԱՐԵՊԱՇՏՈՒՂ ԳԻՏՈՒՆ ԶԱԽԱԿ:
ՅԻՇԵՍՑԷ ՏԷՐ ԶԱՆԽՈՆՋ ԶԱՆՍ ԵՐԿԱՆՑ ՅԱԿՈԲԱՑ ԱՐՀԻՈՅՆ,
ԸՆԴ ՈՐՍ ԶՕԳՆՈՒԹԻՒՆ ՅԱՐԳՈՑ ԶԵՐՄԵՌԱՆԴ ԲԱՐԵՊԱՇՏՈՑ,
ԵՒ ԶՏՈՒՐՍ ՀԱՄԱՅՆ ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴՈՑ.

ՈՐՔ ԿԱՆԳՆԵՑԻՆ ԶԱՅՍ ՀՈՅԱԿԱՊ ԶԱՆԶԻՆՁ ՅԻՇԱՏԱԿ:
ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1859 ՕԳՈՍ" 22 ՍԿՍԵԱԼ ԵՒ 1860 ՕԳՈՍ" ՎԵՐՋ ԱՒԱՐՏԵԱԼ:

*Ճաշարահին ճիշդ վրան է Նախակրթարանի սրահը, սորա քովը Ծաղկոցը, եւ աւելի վեր երրորդ յարկը, որ է Ուսումնարանը, իր կրկնակ Դասարաններով:*

* * *

*Աղջիկներու վարժարանը փողոցին վերի կողմն է՝ դէպ Արեւելք. ունի նախ իր պարտէզը, որուն վրայ կը հայի սիւներու վրայ շինուած պատշգամ մը. սորա ներքեւը վարժարանին մուտքի դուռն է կրելով 6 տող Ոտանաւոր Արձանագրութիւն մը բոլորակիր փորուած, որ է.*

*«Երի՛ք դասերք, տո՛ւք ձայն համասեռիցդ ատեանց,*
*Սիրով ուսմանց գալ յիմ գոգ զոր սուրբ Խաչն յաջողեաց,*
*Յըստեանց խմոց ծծել կաթն զպխտանին գիտութեանց,*
*Եւ զտանել ի սմա զանկապտելին զանդին զանձ:*
*Կեցցէ՛ Յակոբ Սրբազան ընդ բարերար Ազգասէր Տեարց,*
*Որք յանմահ ի յիշատակ եղեն պատճառք մեր դպրութեանց:*
1860 *Օգոստոս վերջ»:*

Ասոր յարկաբաժինները յար եւ նման են մանչերու վարժարանին, բայց աւելի ըլլալով՝ ունի իրեն կից եւ հարաւային կողմը քարուկիր ամրաշէն Մատենադարանը, ուր երթալու համար յատուկ երկաթեայ ճանապարհ մը կայ մանչերու Նախակրթարանի սրահին մէջէն ։

Ինչպէս կանխաւ յայտնած եմ, այս վարժարանները ունին իրենց առանձնայատուկ պարտէզները հովանաւորուած գեղատաւեր ծառերով[111], որպէս զի երկսեռ մատաղ սեռունդները զրօսանքի կ՚ազդուրէն վայելքը լիուլի ունենան, օրուան քանի մը ժամերուն ։



Մանչերու վարժարանին ճախակողմեան պարտէզին մէջ, Յակոբոս Պատրիարք շինել տուած է անուշ ջուրի աղբիւր մը, եւ հոն պատրաստել տուած է նաեւ իւր վերջին Բնաբանը, կերտուած մարմարեայ սրբատաշ տապանաքարերէ. բախտ չունեցաւ սակայն հոն հանգչելու[112], զի՝ 1862 Հոկտեմբեր 3ին

[111] Այժմ ո՛չ ոյ ։

[112] Այս գերեզմանին մէջ 1875 Նոյեմբերին Ներսէս Պատրիարք Վարժապետեան թաղել տուաւ իր Հոգեւոր ծնօղը՝ Տէր Արիստակէս Սրբազան Ռափայէլեանը, նախկին Տեղապահ եւ Քարոզիչ Ս. Կարապետի եւ Ս. Խաչի ։ Ասոր շիրիմը մինչեւ այժմ անզիր մնացած ըլլալուն, բողոքի ձայն բարձրացուց Հօրոյ (Նշան Ծիվանեան) եւ առաջարկեց որ վրան փորագրուէր իր շարադրած Տապանագիրը՝ զոր հրատարակեց Բիւզանդիոն թերթին մէջ 1912 Յունուար 12/25ին եւ որ էր.

*Կ. Պոլսէն մեկնելով, Երուսաղէմ ուխտի կ'երթայ, այն տեղ արկածի մը զոհ կ'ըլլայ*[113] *ու կը վախճանի Նոյեմբեր 6ին*[114], *եւ մարմինը մեծաշուք հանդէսով կ'ամփոփուի Ս. Փրկիչ Եկեղեցւոյ գաւիթին մէջ, ուր ունի իր չիրիմը, յատուկ տապանագրով զոր բերել տուած եմ ժամանակին եւ է՝ հետեւեալը·*

---

ՏԱՊԱՆԱԳԻՐ

Շինող վեհ յարկացս, Արհի Դէտն Յակոբ,
Մինչ ի կեանս էր, ետ պեղել զայս գուբ,
Եւ կանգնեաց վասն իւր հանգստեան շիրիմ:
Յուխտ ելեալ ապա՝ ի Սուրբն Սաղիմ,
Ա՛նդ վճարեաց զկեանս, կամօք Բարձրելոյն,
Փոխեցեալ յաստեացս ի վերինն Սիօն:
Փոխանակ նորուն, հաճութեամբ ազգին,
Տեառն Արիստակեայ՝ ա՛ստ եդաւ մարմին:
Կաց սա երբեմն Դէտ՝ Անդրինուպոլսոյ,
Յետոյ Տեղապահ Աթոռոյն Պոլսոյ,
Յոր անձնուիրութեան արար մեծի ցոյց·
Ապա քարոզիչ Սուրբ եկեղեցւոյս:
Այր հեզահոգի, անբասիր կենօք,
Յիշատակ բարի եւ սա մեզ եթող:
Սանո՛ւնք դպրոցիս 'ւ ա՛յցելողք շիրմիս,
Հովուացս երկոցունց հանէ՛ք ողորմիս:

*Հորոյի այս գրածը՝ դժբախտաբար անթուական է, եւ մնաց՝ իբրեւ* ձայն բարբառոյ յանապատի, *եւ վերոյիշեալ չիրմաքարն ալ՝ առանց ո՛ր եւ է արձանագրութեան:*

113 Մասիս, *Թիւ* 556, 6 *Հոկտեմբեր* 1862:

114 *Յակոբոս Սրբազանի պատահած մահուան արկածը, ինչպէս կը կարդանք՝* Մասիս *թերթին մէջ (Թիւ* 563, 24 *Նոյեմբեր* 1862), *կը պատահի գիշեր ատեն. ծերունազարդ Սրբազանը արթննալով, քովը եղած ճրագը վառել ուզած միջոցին, յանկարծ անկողինը ծածկող վարագոյրը կը բռնկի ու հետը Սրբազանին թեւերը եւ երկայն մօրուքը կ'այրին. բժիշկներ կը բերուին, բայց անօգուտ կ'ըլլան դարմանները եւ Յակոբոս Սրբազան երեքշաբթի օր յետոյ կ'աւանդէ հոգին:*

## ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՅԱԿՈԲԱՅ Ս. ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՆԱԽՆԻՆ ՊԱՏՐԻԱՐՔԻ Կ. ՊՈԼՍՈՅ, ՈՐ ԵԿԵԱԼ ՅՈԻԽՏ ՏՆՕՐԻՆԱԿԱՆ ՏԵՂԵԱՅ ՀԱՆԳԵԱՒ Ի ՏԷՐ ՅԱՄԻՆ 1862 Ի 6Ն ՆՈՅԵՄԲԵՐԻ

*Աննման եւ չքնաղ մեծագործութիւն մ'էր Յակոբոս Սրբազանին ըրածը, առանց անոր ազգասէր եւ ուսումնասէր ջանքերուն ու անձնուէր զոհողութիւններուն, Ս. Խաչի թաղը գո՛ւցէ յաւէտ զուրկ մնար իր արդի հոյակապ երկսեռ վարժարանէն, որ երեք քառորդ դարէ ի վեր ընծայած է Ազգին ընտիր ու կարեւոր բազմաթիւ զաւակներ ու անմահ կը պահէ իր Հիմնադրին Անունը*[115] :

* * *

[115] *Ինչպէս արդէն նշանակած եմ, Սերոբեան Սրբազան երկիցս Պատրիարք եղած է Կ. Պոլսոյ. նախ՝* 1839—1840 *մէկ տարի. այդ միջոցին կը յուզուէր Իւսկիւտարի Ճեմարանին խնդիրը եւ այլ ազգային կարեւոր հարցեր, որոնց կարգադրութեանը համար Պատրիարքը ժողովի կը հրաւիրէ* մեծ–աղայ ամիրաները, *բայց անոնք պատասխան անգամ չեն տար: Պատրիարքը սրտմտելով կը թողու ամէն ինչ ու կ'երթայ՝ կը քաշուի Ազգ. Հիւանդանոց: Կառավարութիւնը զայս իմանալով կը կանչէ Ամիրաները եւ իրենցմէ բացատրութիւն կ'ուզէ. անոնք կը համարձակին ըսել՝ թէ Պատրիարքին խելքին եկած է* (Պատմ. Աւետիս Պէրպէրեանի, *էջ* 270) *: Այս անլուր ստայօղութեան վրայ կը հրաժարեցնեն Յակոբոս Պատրիարքը, որ դարձեալ կ'երթայ Մարզուան, որուն առաջնորդն էր արդէն: Այս միամեայ պատրիարքութեան միջոցին է որ Մեսրոպ սարկաւագ Թաղիադեանց նշանաւոր գրագէտը Կ. Պոլիս կու գայ եւ ապրուստը ճարելու համար կը սկսի հայերէնի դասեր տալ նորեկ բողոքական Միսիոնարներու: Պատրիարքը այս բանը լսածին պէս սաստիկ կը յանդիմանէ Թաղիադեանցը ու զայն պատժելու կ'ըլլէ. Մ. Թաղիադեանց կը ստիպուի փախչիլ*

*Հրապուրիչ ու զուարթ շէնք մ՚է Ս. Խաչի վարժարանը, որ իմ ու սիրական Եղբօրս նախնական կրթութեան օրրանն եղաւ 1864էն մինչեւ 1877, եւ ի՜նչ քաղցր յիշատակներ կ՚արթննան այժմ իմ մէջս, երբ միտքս կը բերեմ այդ սուրբ յարկին ներքեւ անցուցած մեր մանկութեան ու պատանեկութեան օրերը, որոնց կը սիրեմ անդրադառնալ արագ ոստումով:*

*Բաւական ժամանակ մեզ մօտ եղած դրացի վարպետ–տուտուններու քով անցնելէ վերջ, կանուխէն սկսանք յաճախել Ս. Խաչ, սկսելով* Ծաղկոցէն. *հոս պնակի վրայ նախ* Ա. Բ. Գ.

---

*եւ գնալ Կալկաթա, ուր իր յիշատակը անմահ է ցարդ:*

*Սերոբեան երկրորդ անգամ պատրիարք եղած է* 1848—1858 *իր* Յակոբոս *անունը փոխելով* Յակոբի *ու յաջորդելով Զուհաճեան Մատթէոս Պատրիարքին որ ամենայն Հայոց կաթողիկոս ընտրուած էր:* (Պատմ. Ա. Պէրպէրեան, *էջ* 365—366 *եւ* 551:)

*Յակոբ Սերոբեանի այս երկրորդ պատրիարքութեան ժամանակն է, որ Ազգային Սահմանադրութիւն մը խմբագրելու խորհուրդը կը յղացուի եւ այդ առթիւ կ՚ընտրուի* Սահմանադրական Յանձնաժողով, *որ կը պատրաստէ արդարեւ* Սահմանադրութիւնը, *բայց հազիւ թէ կը հռչակուի՝ կը վիժի առանց գործադրութեան արժանանալու զի Յակոբ Պատրիարք կը հրաժարէր:* Մեղու, *Ա. տարի, Թիւ* 31, 1856, *էջ* 173—175 *եւ* Մասիս, *Թիւ* 270, 28 *Մարտ* 1857: *Սակայն Յակոբոս Սրբազան Պատրիարքութենէ քաշուելէն յետոյ երբեք անտարբեր չէ գտնուած Ազգային խնդիրներու մասին եւ* 1862*ին երբ Սահմանադրական վէճեր, իրենց սաստկութեան սահմանին կը հասնէին ու երկպառակութիւններու տեղի կու տային, նախկին Պատրիարքը՝ Իւսկիւտարի Նորաշէն գիւղին մէջ* 1862 *Սեպտեմբերին երեք օր շարունակ միութեան ժողովներ կը գումարէ եւ իր խրատականներով կիրքերը կը հանդարտեցնէ:* Մասիս, 14, 15 *եւ* 22 *Սեպտ.* 1862:

ու հասարակ ընթերցանութիւն սորվելէ յետոյ անցանք Նախակրթարանը, ուր վարժապետ–կառավարիչ էր Տ. Գէորգի որդի՝ Տիրացու Աստուր (Աստուածատուր), ապա Քահանայ՝ Տէր Խորէն կոչումով: Իրմէն դաս կ'առնէինք Սաղմոսի, Գործոցի, Նարեկի անսայթաք ընթերցանութիւնը, դուրընթացաբար վայելելով «ծեծ»ը, «ապտակ»ները, մանաւանդ «թաթ»ը որ տիրական էր: Մեր ընթերցանութեան սխալները անպայման ուղղուելու էին կամ ապտակահարութիւններով եւ կամ թաթահարութիւններով Աստուր Վարժապետին, որուն քովը միշտ բազմած էր Տիրացու Գիրգորը (Գրիգոր), Եկեղեցւոյն Երաժշտապետը: Սա շաբաթը երեք չորս անգամ աշակերտներուն ձայնաւորութեան եւ նոտր գրի վարժութեան դասեր կու տար, ու օրուան մէջ քանի մը անգամ ալ այս կամ այն աշակերտին ձայնային վիճակը կը քննէր դպրութեան յարմար եղողները որոշելու համար:

Անժպիտ ու խոժոռադէմ, արծուռունգն մարդ մ'էր, խոպոտ ու անախորժ ձայն մը ունէր, թէեւ չա՛տ հմուտ չարականի: Բացի Երաժշտապետի կամ դպրապետի պաշտօնէն, հսկող էր նաեւ Դպրոցի Մատենադարանին[116],

---

116 Այս Մատենադարանը Ս. Խաչի հին վարժարանին մէջ հաստատուած է, նախայիշատակեալս Մարտիրոս Սարկաւագը եւ ժողված է բազմաթիւ տպագիր եւ ձեռագիր հատորներ, զորս կրցած են ազատել 1850ի հրդեհէն:

Յակոբոս Պատրիարք, ինչպէս ըսած եմ արդէն,

ուր օրուան մեծ մասը կ՚անցնէր, ո՛չ թէ գիրքերու մէջ ըեղերելու, այլ արբենալու Թօմ կոչուած կարմիր խմիչքով, զոր կը պահէր հոն եւ որուն շիշը տարիներ յետոյ գտայ ես 1889ին, այդ Մատենադարանի դարակներէն մէկին մէջ, երբ օր մը գացած էի հոն մէկ քանի ձեռագիրներ աչքէ անցնելու:



Աստուր վարժապետին բացակայ եղած միջոցին Տիրացու Գիրգորն էր սրահին կառավարիչը· փոքրիկ յանցանք մը եթէ տղու մը վրայ տեսնէր, անմիջապէս գայն քովը կը կանչէր ու տանց այլեւայլի, եւ տանց բառ մը բերնէն հանելու, ձեռքին անբաժան եղած փայտովը չորս հինգ անգամ անխնայ կը զարնէր թաթ կոչուած ծեծը, որուն ընդարմացուցիչ ցաւը օրերով չէր անցներ մեր մանկական փափուկ ափերէն:

Ծեծը այո՛, վարժարանին կրթական անգոյ... ծրագրին գլխաւոր մաս կը կազմէր, եւ այդ պատճառաւ, չա՛տ տղու ալ Դպրոցա-

վարժարանին վերաշինութեան միջոցին, յատուկ շէնք մ՚ալ կառուցած է աղջիկներու կողմը. իբրեւ Մատենադարան՝ որ քարուկիր է եւ ամրակուռ բաւական ընդարձակ, ուր Մարտիրոս Սարկաւագի տուած գիրքերէն զատ, Յակոբոս Պատրիարք ալ նուիրած է իւր ամբողջ Գիրքերը, որոնց ցուցակը երկու մեծ շրջանակներու մէջ կախուած կը մնայ Վարժարանին Մեծ սրահը:

Այս Մատենադարանը աւելի հարստացաւ յետոյ՝ մեծանուն գրագէտ Խաչատուր Միսաքեանի ունեցած հայ եւ օտար հարիւրաւոր ընտիր գիրքերով:

Բայց Ս. Խաչի Մատենադարանը բաւական առենէ ի վեր կը մնայ փակ, Հատորները փոշիներով ծածկուած, զուցէ եւ կեր եղած ցեց ու ստրճներու:

սիրութիւնը կը մարէր ու արհամարհելի կ՚ընծայէր անոնց աչքին այդ մտքի անդաստանը[117]։

Բայց ի թաթահարութենէն, սովորական էր նաեւ ներբանածեծը (Փալախան), որուն հարուածները երկու կերպով տեղի կ՚ունենային, կամ կօշիկի վրայէն, կամ ուղղակի մերկ՝ անդուլպայ՝ ոտքին վրայ։ Կար նոյնպէս՝ բանտ, ժամերով ծունկ չոքիլը, որու միջոցին յանցաւոր կարծուած տղան ձեռքերը վեր բարձրացնելով պէտի կրէր խոշոր, ծանրակշիռ Ճաշոցներ, մեծադանդուած Յայսմաւուրքներ։ Այս էր ահա Նախակրթարանին ունեցած դաստիարակութեան եւ ուսուցման եղանակը զոր չեմ մանրամասներ, եւ որուն հետ՝ Աղօթքի եւ Երգեցողութեան դասերն ալ ստիպողական էին։

Նախակրթարանին մէջ Քերականութիւն հա՛զիւ սկսած էի, երբ արժան համարուեցայ փոխադրուիլ վերի սրահը, այսինքն Ուսումնարանը, ուր թէպէտ կար դարձեալ ծեծը, բայց քիչ ու շատ տարբերութիւն մը կը տիրէր հոն. 1868 կամ 1869 թուականներուն էր այս։

* * *

[117] Բարեբախտաբար աղջիկներու Դպրոցը ազատ էր այդ խուժդուժ գազանային միջոցներէն, զի յատկապէս հսկուած էր խնամակալ Տիկիններու Միութենէն որուն Ատենապետուհին էր կնոջս Մեծ մայրը Տիկին Եւպրաքսէ Փափազեան։ Տե՛ս Մասիս, Փոքր Թիւ 56, 16 Մայիս 1866։

Ընդարձակ սրահին ճակատը կախուած էր Երջանկայիշատակ Հիմնադիր Յակոբոս Պատրիարքին իւղաներկ մեծադիր պատկերը, որ նկարած էր Սաղայեան Աբրահամ անուանի պատկերահանը († 18/30 Դեկտ. 1875)[118] եւ ա՛յնպիսի ճարտար բնականութիւն մը տուած էր Սրբազանին դիմագիծերուն ու հայեացքին, որ կը կարծէինք թէ յա՜նկարծ պիտի բարբառէր այն:

Ամէն առաւօտ սրահ մտած մեր պահուն՝ Աղօթքէ առաջ պարտաւոր էինք խոնարհութիւն մը ընել այդ պատկերին, որուն ներքեւը կը բազմէր Պօղոս Վարժապետը, իր անժպիտ դէմքովը ու բարկացայտ հայեացքովը, եւ իր գրասեղանին վրայ միշտ ունենալով ծեծի օրհնեալ փայտը:

Սա ալ ծեծի մասնագիտութիւնն ունենալով հանդերձ, այն առաւելութիւնն ունէր՝ որ յանցաւոր համարած աշակերտները երբեմն զբօսանքէ զրկելով՝ զանոնք կը դատապարտէր՝ Նարեկէ կամ Գործք Առաքելոցէն չորս կամ հինգ էջ անսխալ ընդօրինակելու պատիժին, եւ յետոյ բարձրաձայն կարդալ կու տար ու կը բաղդատէր, թէ ճի՞շդ ընդօրինակուա՞ծ էին:

Սակայն հետզհետէ կրթական ծրագիրը սկսաւ փոփոխութիւններ կրել. 1870—1871 Հոգաբարձութիւն մը կազմուեցաւ Երուսա

118 Մասիս, Թիւ 1772, 18/30 Դեկտ. 1875:

ուսած անձերէ, որոնց գլուխը կը գտնուէր Արշակ Յակոբ, այն՝ որ Ղալաթիոյ Ազգ. Մատենադարանին Հիմնադիրը եղած է 1877ին[119]։

Ընտիր դասատուներ եկան հոն. կը յիշեմ Մալէզեան Յովսէփ Պատուելին՝ որուն դասախօսութիւնը շատ չտեւեց եւ անոր յաջորդեց Եղիազար Մուրատեանը՝ հայերէն լեզուի ու գրագիտութեան շա՛տ կարող ուսուցիչը, որուն կ'օժանդակէին Մկրտիչ Մելքեան, Պօղոս Դելվեան, Յակոբ Զրաքեան, եւ այսպէս՝ վարժարանին ուսման մակարդակը աւելի բարձրացնելու յոյժ ջանադիր կ'ըլլուէր։

Բայց ի եկեղեցական երաժշտութենէն, Երգը շատ յարգի եղաւ վարժարանին մէջ, ինչպէս նաեւ գրօսանքը եւ մարմնամարզը, ու մերթ ընդ մերթ ալ դաշտային պտոյտները, որոնք տեղի կ'ունենային միշտ երգախառն ու հաճելի խաղերով, առաջնորդութեամբ Արսլանեան Հայրապետ կառավարչին ու երաժիշտ Յակոբ Պօյաճեանի (ապա Տէր Սերովբէ Քահանայ)։

Կիրակի օրերն ալ առաւօտուն Եկեղեցին հերթով ձայնաւորութիւն, կամ փոխասացութիւն եւ կամ մոմակալութիւն կ'ընէինք, ու կէս օրէն յետոյ ալ կը համախմբուէինք վարժարանին մէջ, առնելու համար պարի դասեր, զորս կը սովեցնէր մեզ Զափրաստճեան

---

[119] Մասիս, 1877 Հոկտ. 24։ Արշակ Յակոբ Նշանաւոր ուսումնական մ'էր՝ Գերմանիա կրթուած. մեռած է՝ 7 Օգոստոս 1890ին։

Երանոս մեծանուն դերասանապետը, դաշնա-մուրի վրայ ածուած եղանակներու ընկերակ-ցութեամբ:



Սակայն՝ այս նորածագ բարեկարգ վի-ճակը վարժարանին, ու անոր յառաջդիմու-թիւնը գժբախտաբար յանկարծ խանգարուե-ցաւ 1872ին. Մուրատեան Եղիազար՝ որ գլխա-ւոր դասատուն էր, անկրօն, անաստուած նկատուեցաւ, ուստի հրաժարեցաւ ու գնաց Սելամիէի վարի կողմերը իր անունով բացու-մասնաւոր վարժարան մը, որ թէեւ երկար կեանք չունեցաւ, բայց Ս. Խաչէն բաւական թուով աշակերտներ խլեց իր քով, մինչ մենք մնացինք մեր տեղը:

Մուրատեանի մեկնելէն յետոյ Հայկաբա-նութեան դասատու ունեցանք Սիմոն Ֆէյլի-եանը, իսկ Փրանսերէն լեզուի համար Տա-ճատ Լութֆեանը, քիչ վերջն ալ՝ անոր եղ-բայրը Գարեգին Լութֆեան. ու հետզհետէ թուաբանութեան դասատու եղան Սիմոն Մի-քայէլեան, Բասկալ Թիւլեան, Գաբրիէլ Ներ-սապուհ, Բարսեղ Տիւրկէրեան եւ տաճկերէնի համար՝ Պետրոս Խօճասարեան, Սեպուհ Խո-մերեան: Գեղագրութեան համար Հայրապետ Արզուլանեան, Միհրան Տէօքմէճեան եւ ուրիշ-ներ, գծագրութեան համար նկարիչ Տէլէմաք Էքսէրճեան եւ ասոր եղբայրը Գառնիկ Էքսէր-ճեան:

Միջոց մը ընդհանուր հսկող ունեցանք՝ մի ոմն Լութուֆեան որ քաջ Փրանսերէն կը

խօսէր, իսկ ամկէ յետոյ Թէոդորոս Պատուելի Զօրայեանը, Խաչիկի Ներսէսեան եւ Շահնազարեան վարժարաններու նախկին դաստիարակը, որ ընտիր մանկավարժի տիպարին խնկալէս արժանի բարեկիրթ ու բարեգութ անձ մ'էր:

Հայրապորով վարուելակերպ մը ունէր աշակերտներուն հետ, եւ հայ դասական գրականութեան բաւական հմուտ ըլլալով, ինքը առաջինէ մինչեւ երեկոյ Հ. Արսէն Բագրատունիէն, Հ. Եդուարդ Հիւրմիւզի գործերէն ստանաւորներ կ'արտասանէր բարձրաձայն ու կը վառէր մեր գրասիրական ճաշակը:

Ունեցանք նաեւ Սրապիոն Թղլեանը հայերէնի ու Ֆրանսերէնի ուսուցիչ, որու կը պարտիմ ես հայ գրականութեան մասին ունեցած նախընծայ սէրս. գժբախտաբար՝ ատոր պաշտօնական դաստանդութիւնը երկար չտեւեց եւ մեծանուն Յակոբ Պալեանի[120] հետ դէպի Եւրոպա ճամբորդելու առիթը ըլլալով թողուց Ս. Խաչը, եւ իր տեղը միայն հայերէն լեզուի դասերը ստանձնեց կարճ ժամանակի համար, Թաղին Քարոզիչը եղող կրօնաւորյց Յովհաննէս Տ. Վ. Փափազեան, մինչեւ որ օրինաւոր դասատու մեզ կարգուեցաւ Խաչատուր Պուէտ Միսաքեանը, որու մասին փոքր ինչ գրած եմ Եէնիմահալլէն պատմած միջոցիս:

[120] Հայ ուսումնականներու մեկենաս մ'էր սա. մեռած է 1875ին Փարիզի մէջ, ուր քաշուած էր կնոջը մահէն յետոյ: Տե՛ս Մասիս, Թիւ 1753, 1 Նոյեմբեր 1875:

Հայ լեզուի եւ գրականութեան ու Փրանսերէնի գլխաւոր ու վերջին դասատուս եղաւ Միսաքեան, որուն կը պարտիմ իմ այդ մասին ունեցած քիչ ու շատ զարգացումս, թէեւ երբեմն ալ մասնաւոր դասեր կ'առնէինք, ինչպէս բամծ եմ արդէն, Տէրոյենց Պատուելիէն, որ մեզի դրացի էր Սելամիէլի՝ Ջիլիհտար սյահիչէ կոչուած փողոցին մէջ։



Վարժարանը տեսակ մը Մուսայատուն դարձուց Խ. Գ. Միսաքեան, ինքը ջերմ պաշտող մը եւ նաեւ մտերիմը Հ. Եղուարդ Հիւրմիւզի, որ հրատարակութիւններուն մէջէն դուրս չէր ելլար եւ անոնցմով զմեզ միշտ կը կրթէր. Անաքարսեայ ուղեւորութիւնը, Արկածք Տելեմաքայն, Ռօլէնի Հնախօսութիւնը, Պօղ եւ Վիրգինէն, Մաղթանք չափաւը, Յոբայ Գիրքը, Բուրաստանքը ու Տաղերը մեր ընթերցումի եւ արտասանութեան ամենօրեայ դասագիրքերն էին, եւ այսօր՝ կը խոստովանիմ թէ շա՛տ բան կը պարտիմ անոր դասախօսութիւններուն հիանալի եղանակին, որ անմոռաց է սրտիս ու մտքիս մէջ։

Հ. Եղ. Հիւրմիւզի Տաղերէն շատերը մենք գոց ըրած էինք. Անոր՝ «Մարդոյ որպէս խոտոյ են աւուրք իւր» սքանչելի երգը, «Հովիւ եւ Հովուհին», «Յարդարն դատափետեալ»ը, «Մաշեցեր որպէս սարդի ոստայն զանձն նորա»ն, եւ «Հայր մեր»ը, ամէն օր կ'արտասանէինք, ինչպէս նաեւ մէկ քանին իր շարադրած Տապանագիրներէն, որոնց երեք հատը կը սիրեմ արտագրել հոս.

1·

ՐԱԲՈՒՆ ՄԻՔԱՅԷԼ Ի ՏԱՆԷՆ ՉԱՄՉԵԱՆ
ՎԱՆԱՑՆ Ի ՎԵՆԷԺ ՈՒԽՏԻՆ ՄԻԱԲԱՆ·
ՅՈՒԹՍՈՒՆ ԵՒ ՉՈՐԻՑ ԱՄԱՑՆ ԱԼԵՒՈՅԹ
ԵՐԿԱՍԻՐԵԼՈՎ ՀԱՄԱԶԳԵԱՑՆ Ի ՓՈՅԹ,
Ի ԲԻՒԶԱՆԴԻՈՅ ՄԻՆՉԵՒ Ի ԲԱՍՐԱ
ԾԸՐԶԵԱԼ ՀՈՎՈՒՈՒԹԵԱՄԲ, ԱՍՏ ՀԱՆԳՉԻ ԱՊԱ:
ՅԱՆՁՈՒԿ Ի ՇԻՐՄԻՍ ՊԱՐՓԱԿԵԱԼ Ի ՓՈՍ
ԱԶԳԱՍԷՐ ԵՐԿՈՎՔՆ ԱՇԽԱՐՀԱՔԱՐՈԶ:

2·

ՐԱԲՈՒՆ ԿԱՐԱՊԵՏ ՏԱՆԷՆ ԵՍԱՅԵԱՆ,
ՎԱՆԱՑՆ ՈՐ Ի ՎՆԷԺ ՈՒԽՏԻՆ ՄԻԱԲԱՆ·
ԸԶԿՐՕՆՍ ԸՆԴ ՎԱՐԺԻՑ ԱՄՈԼԸՍ ՉԸՔՆԱՂ
ՁԸԳԵԱԼ ՄԻԱԼՈՒԾ ՅԱՄԲԻԾՆ ԻՒՐ ԿԵՆՑԱՂ,
ՐԱԲՈՒՆԱՊԵՏԻՆ ԸԶՀԵՏ ԵՐԿՆԸՆԹԱՑ
ԱՐԱՐ ԵՒ ՈՒՍՈՑՑ ՔԱՐՈԶ ՎԵՀԻՄԱՑ:
Ի ԲԻՒԶԱՆԴԻՈՆ Ի ԲՆԻԿՆ ԻՒՐ ՔԱՂԱՔ
ԿԱՑԵԱԼ ԱԶԳԱՊԵՏ ԸՆԴ ԱՄՍ ԻՆՆԵՐԵԱԿ,
ԵՒ ԶԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ ՊԱՐԳԵՒ ԵՐԿՆԱՏՈՒՐ
ԸՆԴ ԱՐԴԱՐՈՒԹԵԱՆ ԱԾԵԱԼ Ի ՀԱՄԲՈՅՐ,
ՀՐԱԺԵՇՏ Ի ՊԱՏՈՒՈՅՆ ՅԱՆԶՕՐ ԱԼԵՒՈՅԹ
ԵՏ ԸՂՋԱԿԵՐՏԵԱԼՆ ՅԱԶԳԻՆ ԻՒՐ ՕԳՈՒՏ:
ԸԶՆՈՐԻՆ ԱՍՏ ՎԷՄՍ ԱՅՍ ԾԱԾԿԷ ԶԱՃԻՒՆ·
ՀԻՒՐԴ ԸԶՅԻՇԱՏԱԿ ՕՐՀՆԵԱ՛ ԶԱՐԴԱՐՈՅՆ:

3·

ԱՍՏ ՊԷՇԻՔԹԱՇԼԵԱՆՆ ՀԱՆԳՉԻ ՄԿՐՏԻՉ,
ԱՆՈՒՆՆ ԱՆԱՄՓՈՓ ՅԱՆՁՈՒԿՍ ՅԱՅՍ Ի ԿԻՃ·
ՍԻՐԵԼԻ ԱԶԳԻՆ, ԵՒ ԱԶԳԻՆ Ի ՍԷՐ
ԵՂԵԱԼՆ ԱՆՁՆԱՏՈՒՐ ԲՈԼՈՐԱՆՈՒԷՐ·
ՍԻՐՏ ԱԶՆՈՒԱԳՈՒԹ ԵՒ ՀԱՆՃԱՐ ՎԸՍԵՄ
ԳԵՂԱՊԱՐԵԼՈՎ Ի ՆՄԱ Ի ՃԱՀ ՃԵՄ·
Ի ՄԱՆՈՒԿ ՏԻՈՑ ԽՈՀԵՄ ԵՒ ԸԶԳՕՆ
ՔԱՂԱՔԱՎԱՐԵԱԼ Ի ԲԱՐՍ ԵՒ Ի ԿՐՕՆ·
ՔԵՐԹՈՂ ՀՈԳԵՇԱՐԺ Ի ԹԱՏՐ ԵՒ Ի ՔՆԱՐ
ԱՄԲԻԾ ՅԵՐԿՈՍԻՆ ԴԱՇՆԱԿԵԱԼ ԸԶԼԱՐ,

ԹԱՌԱՄՆԱՄԵՆԻ ԵԼԻՔ ԸԶԿԵՆՑԱՂ.
ՀԱՄԱԶԳԵԱՑ ԲՆԱՒԻՑ Ի ՍՈՒԳ ԵՒ ՑԱՒԱՂ.
ՆՈՑԻՆ ՇՆՈՐՀԱՊԱՐՏ ՍԷՐ ԵՒ ՎԱՐԿ ԱՆԿԵՂԾ
ԿԱՆԳՆԷ ԶԱՅՍ ՆԸՄԱ ՑԻՇԱՏԱԿ ԱՆԵՂԾ:

*Այս Տապանագիրները՝ որոնց առաջին երկուքը հրատարակուած են արդէն* (Տաղք Մխիթարեան վարդապետաց, *Վենետիկ Ս. Ղազար, Հատոր Գ.*, 1854, *էջ* 155—157) *ինչպէս նաեւ երրորդը* (Տաղք եւ թատրերգութիւնք, *Մկրտիչ Պէշիկթաշլեանի*), *պարտաւոր էի զետեղել Ծանօթագրութիւններուս Բ. Հատորին մէջ, բայց դիտմամբ այս տեղ զանոնք ներկայացնել յարմար սեպեցի, իբրեւ յիշատակ Ս. Խաչ վարժարանի աշակերտութեանս օրերուն:*

*

Հ. Միքայէլ Չամչեան *մեծ պատմագիրը վախճանած է 1823ին եւ թաղուած՝ Բերա-Բանկալթիի հին Ազգ. Գերեզմանատունը՝ ինչպէս նշանակած եմ Բ. Հատորիս մէջ (էջ 615): Չամչեանի տապանաքարը կորսուած է, ինչպէս կորսուեցաւ նաեւ այժմ, ամբողջ Գերեզմանատունը:*

*

Հ. Կարապետ Եսայեան՝ *Վենետիկի Մխիթարեան, որ ինը տարի Ազգապետ եղած է Կ. Պոլսոյ Հայ-Կաթոլիկ ազգայիններու, վախճանած է 1847ին եւ թաղուած է՝ նա ալ Բանկալթիի Գերեզմանատունը. բայց իր շիրմաքարը փոխադրուած է Ս. Յակոբայ Հիւանդանոցին պարտէզը, ուր եւ կարդացի իր Տապանագիրը, թէեւ մաշած վիճակի մէջ:*

*

Մկրտիչ Պէշիկթաշլեան՝ *մեծանուն բանաստեղծը մեռած է 1868 Նոյեմբեր 29ին եւ թաղուած Շիշլիի Հայ-Կաթոլիկ ազգայիններու Գերեզմանատունը, ուր ունի իր շիրիմը, Հ. Եդ. Հիւրմիւզի գրչէն շարադրուած այն գեղեցիկ վերտառութեամբ, զոր կարդացած եմ շատ անգամ:*

Ինձ հետ Մխտաքեանի աշակերտ էին Յարութիւն Մրմրեան, Մելքոն Կիւրճեան, Յովհաննէս Արամեան, մանաւանդ Միհրան Դուրեան (յետագային Եղիշէ Արքեպիսկոպոս եւ Պատրիարք Երուսաղէմի)[121], Փեդրակ Ձիլլինկերեան եւ

---

[121] Միհրան Դուրեան որ նախապէս Ս. Կարապետի դպրոցը կը յաճախէր, իր բանաստեղծ եղբօրը մահէն յետոյ 1872 սկսաւ Ս. Խաչի վարժարանը գալ։ Իմ ամենէն սիրելի ընկերս եղաւ։ Նա ու միասին մեծցանք, գրեթէ մէկ յարկի տակ։ Մեր աշակերտութեան ժամանակ՝ առ ի վարժութիւն կը գրէինք իրարու գրաւոր Ոտանաւորներ եւ Նամակներ, որոնցմէ մէկ երկուքը Հրատարակութեան տուի Զմիւռնիոյ Արեւելեան Մամուլի, 1909 Յունիս 23ի թիւին մէջ, երբ նա այդ ատեն գացած էր Զմիւռնիա, Առաջնորդ Դուրեան Եղիշէ Սրբազանը՝ իբրեւ Նորընտիր Պատրիարք, Կ. Պոլիս առաջնորդելու։

Մեր երկուքին մայրերը իբրեւ քոյր կը սիրէին զիրար. նաեւ մեր ուրախ կամ տխուր օրերուն մէջ չդադրեցանք երբե՛ք զիրար եղբայր անուանելէ։

Թէ ի՛նչ զգացում ունեցած եմ Եղիշէ Սրբազանին նկատմամբ, եւ թէ՛ ի՛նչ մեծ կսկիծ տուած է սրտիս անոր անակնկալ մահը, թո՛ղ խօսին իր Յոբելեանին առթիւ իրեն ուղղած նամակս (տեսնել Մշակն ու Վարձքը, Երուսաղէմ 1931, էջ 151—152) եւ մահուանը թօթարեր գործը առած միջոցին Բարիզէն Երուսաղէմ գրածս, տե՛ս Սիոն, Ամսագիր Երուսաղէմայ, Թիւ Ապրիլի 1930, էջ 129։

Դուրեան ունեցաւ փառաւոր շիրիմ մը որուն վրայ Թորգոմ Պատրիարք փորագրել տուաւ Այերական Տապանագիր մը, իր իսկ գրչէն շարագրուած, որուն երրորդ տողին Մեծի բառը, պիտի ուզէի որ ըլլար Վեհի։

ՀԱՆԳԻՍՏ

ՏԵԱՌՆ ԵՂԻՇԵԱՅ Ս. ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԴՈՒՐԵԱՆ
ԵՐԱՆԱՇՆՈՐՀ ՊԱՏՐԻԱՐՔԻՆ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

ՈՐՔ ԸՆԴ ՀՈՂՈՎ, Ի ՏԱՊԱՆԻ ԱՍՏ ՄԹԻՆ,
ԱՐՏԱՍՈՒԱԼԻՑ ՀԵԾՄԱՆՑ Ի ԿՈԾ ՄԵԾ՝ ԵԴԻՆ
ԶԱՄՓԻԾ ՄԱՐՄԻՆ ՇՆՈՐՀԱԶԱՐԴ ԱՌՆԸՆ ՄԵԾԻ,
ՈՐՊԷՍ ՃՐԱԳԻ ՇՈՂԱԶՈՒՑԵԼՈՅ ԲԵԿ ԽԵՑԻ,
ԳԻՏԵՆ ԶԻ ԼՈՅՍՆ Ի ՆՄԱ ԼՈՒՑԵԱԼ՝ ՀՈԳԻ ԻՒՐ՝
ԸԶԳԵՐԱՐՓԻՈՅԴ ԸՄՊԷ ԶՇՈՂՍ ԱՐԴ ՄԸՍՏԱԳԻՒՐ.

Սեպուհ Իւթիւճեան (երկուքն ալ բժիշկ) եւ կը կազմէինք վարժարանին առաջին բարձրագոյն կարգը, մինչ Եղբայրս եւ Տէր Յակոբեան Նշան, Յակոբ Խոփլեան եւ ուրիշներ երկրորդ կարգը կը կազմէին:

Խ. Գ. Մխաքեան գրաբար ոտանաւորներ գրել կու տար մեզի, եւ ամէն անգամ որ Նշանաւոր Եկեղեցականի մը այցելութիւնը նախօրօք իմանար, Ոտանաւոր մը կը պատրաստէր ու կը կարդար այցելուին. Նոյնը մեզի ալ ընել կու տար, այսպէս՝ հինգ անգամ ես առիթ ունեցած եմ Ոտանաւոր գրելու ու արտասանելու, երեք անգամը Վարժապետեան Ներսէս Պատրիարքին Ս. Խաչի գիւղը այցելած ժամանակ (14 Սեպտ. 1874, 13 Սեպտ. 1875 եւ 15 Սեպտ. 1876), մէկ անգամը Խրիմեան Հայրիկին (25 Հոկտ. 1875), եւ անգամ մ'ալ Պատրիարքական փոխանորդ Տէր Յովհ. Քահանայ Մկրեանին (24 Յուլիս 1876) այցելութիւններուն առթիւ: Այս գրածներս կը պահեմ իբրեւ յիշատակ պատանեկութեանս օրերուն[122]:

ԵՒ ԶՈՐ ԽՆԴՐԵՆՆ Ի ՔԷՆ ՆՈՔԻՆ՝ ԱՅՍ ԵՒԵԹ. ԶԻ ՊԱՀԵՍՑԵՍ, ՏԷՐ ԿԵՆԱՑ, ԱՅԺՄ ԵՒ ՅԱՒԷՏ, ՅՈՐԴԻՈՅՆ ԵՐԱՄՍ ԵՒ Ի ԿՐՕՆԻՍ ՍՈՒՐԲ Ի ԾՈՑ՝ ԶԻՒՐՈՑ ՄԸՏԱՑ ԵՒ ԸԶՍԸՐՏԻՆ ՄԱՔՈՒՐ ՔՈՅ. ԶԻ ՅԱՄԱՑՐ ԱՄՍ ԻՒՐՈՑ ԱՆՈՒԱՆՆ ՀՈՎԱՆԻ ԱՍՏ ԵՒ Ի ԲՆԱՒ ԱԶԳԻՍ ԿԱՑՑԷ ԿԵՆԴԱՆԻ:

[122] Մկրեան Տէր Հօր ներկայութեանը կարդացածս, 1876ին վաղամեռ կորուսած իւր զաւկին մահուանը առթիւ մխիթարական տողեր էին: Տէր Մկրեան՝ Մխաքեանի ոտանաւորին հետ իմս ալ հրատարակեց իւր կազմած «Մահարձանք եւ Յիշատակարան Յակոբայ Յ. Մկրեան» անուն Հատորին (էջ 180—190, 200—

Բայց Մխաքեանի երկու Ոտանաւորը չա՛տ գեղեցիկ էին, մին՝ Ներսէս Պատրիարքի մօր մահուան († 10 Ապրիլ 1875) առթիւ գրուած, որ հրատարակուած է (Մասիս, Թիւ 1734, 18/30 Սեպտ. 1875), եւ միւսը՝ Մկրեան Տէր Յովհաննէսի վաղամեռիկ որդւոյն գերեզմանին ընծայուած՝ բնաբան ունենալով Միքէլ Անճելօի սա գեղեցիկ տողերուն թարգմանութիւնը, թէ՝

«Քաղցր է ինձ ննջել
Այլ առաւել եւս՝
Գոլ վիմատառեալ,
Ցորքան յաճախեն
Զարիք եւ ամօթ:

Եւ երանութիւն
Մեծ է ինձ աստէն՝
Տեսանել ինչ ոչ
Ըզգալ եւ ոչինչ:

Մի՛ զարթուցաներ
Զիս ուրեմն, աղէ՛,
Եւ զաչըն ձայնիւ
Բարբառիջիր այդր»:

* * *

202) մէջ, ուր ամփոփուած են Տէր Հօրը ուղղուած ցաւակցական բոլոր գիրերը (հրատարակուած Կ. Պոլիս 1877):

Ո՞վ կրնար ինձ ըսել, թէ պատանեկութեանս ժամանակ՝ 1876ին որդեկորոյս Քահանայի մը ցաւին ի գիր կարգացած տողերս, իրեն ուղղած մխիթարութեան խօսքերս, ինձ համար ալ պիտի կրկնուէին եղեր՝ 57 տարի յետոյ, անդին ու աննման զաւակ մը կորսնցնելուս առթիւ:

*Մխոքս է՝ որ վարժարանին Տնօրէն եղած են հետզհետէ, նախ՝ Մարտիրոս Գ. Փափազեան, ուրկէ սկսած եմ Ֆրանսերէն լեզուի ընթերցանութիւնս։ Յետոյ Տէրոյենց Յովհաննէս Պատուելին՝ որ մեր ունեցած գիրքերը անպատճառ աչքէ կ'անցնէր եւ եթէ անոնց ընթերցումը մեզի յարմար տեսնար, վրան իր ստորագրութեանը հետ՝* «իրամայեալ է» *կը գրէր։ Տէրոյենցէն յետոյ միջոց մը Պարտիզակցի Վահան վարդապետը Տնօրէն եղաւ. եւ վերջ ի վերջոյ ալ Քրիստոստուր Ղազարոսեանը՝ որ Իւսկիւտարի երեք դպրոցները միանգամայն կ'այցելէր, եւ որուն օրով՝ 1876ին մեծահանդէս պարգեւաբաշխութիւն մը տեղի ունեցաւ Ս. Խաչ Եկեղեցւոյն մէջ՝ նախագահութեամբ Ներսէս Պատրիարքին եւ Դուրեան Միհրանի հետ ստացանք մեր շրջանաւարտի վկայականը։*

*Վկայականս առնելէս յետոյ, իբրեւ պատաշակերտ եւ ունկնդիր, կը յաճախէի դարձեալ Ս. Խաչ, եւ առ ի վարժութիւն երբեմն ալ դասեր կու տայի հոն վարի կարգերուն, մինչեւ որ բժշկութիւն ուսանելու համար մեկնեցայ Կ. Պոլսէն Բարիզ՝ 1879 Թուականին Հոկտեմբեր ամսուն մէջ։*

* * *

*Զեմ երկարեր ա՛լ եւս, եւ բաւ կը համարիմ ըսել՝ թէ Ս. Խաչի վարժարանը եղաւ մեծահամբաւ՝* Ճեմարանի *հետ զուգընթացաբար, եւ նաեւ անոր մրցակից–ուսումնակիցը,*

*որովհետեւ գրեթէ միեւնոյն դասատուներն էին, որ կը պաշտօնավարէին երկու Դպրոցներուն մէջ եւ բոլոր աշակերտներուն միջեւ կը մշակէին ուսումնասիրութեան եւ եղբայրական յարաբերութեան ջերմ եռանդը:*

1872*ին վարժարանին աջ կողմը գտնուած ընդարձակ պարտէզին մէջ շինուեցաւ լայն սրահ մը Թատրոնաձեւ, ուր ցորեկեայ բանախօսութիւններ ըրած են մեծանուն Փրանսագէտ–դրագէտ Յակոբ Ոսկան*, Օրագիր *Թերթին խմբագիր՝ Օգսէն Խօճասարեան եւ* Մանզումէի *խմբագիր Կարապետ Փանոսեան, եւ ուր՝ երբեմն ալ կը տրուէին Թատերական յաջող ներկայացումներ, որոնց գլխաւորն էր Վարդան Մամիկոնեանի Թատերգութիւնը:*



*Ս. Խաչի վարժարանը՝ Ս. Կարապետին նման ունեցաւ Սանուց եւ Սանուհեաց ընկերութիւններ, որոնց նպատակն էր հարստացնել Դպրոցին Մատենադարանը:* 1878*ին հաստատեցինք հոն* Ուսումնատարած *անուն ընկերութիւն մը եւ Կիրակի օրերը պանդուխտ ազգայիններու հայերէն լեզուի ու հաշուագիտութեան դասեր կու տայինք հոն, ես ու Սարգիս Սէմէրճեան քաջ Փրանսագէտ ընկերս, ու ներհուն չափագէտ Գրիգոր Զաքարեան: Այս ընկերութեան յաջորդեց* 1879*ին* Կրթասիրաց *ընկերութիւնը, որուն գործադիր անդամներէն եղած էի, Բարիզ մեկնելէս առաջ, եւ որ վերահաստատեց լսարանը ու*

նաեւ ժողովրդային Մատենադարան մը, որուն բացման ճառը ես խօսած եմ[123], եւ ուր՝ ցորեկ ու գիշեր տեղի ունեցած են, խիստ շահեկան բանախօսութիւններ: Անոնցմէ յիշատակելի են Օրմանեան Մաղաքիա վարդապետին «Միութիւն Հայութեան» եւ «Կարօտ եմք» գերընտիր բանախօսութիւնները, զորս կրթասիրաց ընկերութիւնը առանձին առանձին տետրակներու մէջ հրատարակել տուաւ 1879ին:

Եւ այսպէս՝ Սելամիէ ուսման եւ կրթութեան ամենաբեղուն անդաստան մը եղած է, ուրիշ թաղերու նախանձը շարժելու աստիճան:

Դեռ չեմ խօսիր Վարդանանց տօնի եւ դպրոցական տարեկան քննութիւններու եւ պարգեւաբաշխութիւններու մասին, որոնք տեղի կ՚ունենային Եկեղեցւոյն մէջ աննման շուքով, այլ կ՚ըսեմ միայն թէ Ս. Խաչ ալ Ս. Կարապետի հետ եղած էր հայկական աքանչելի կեդրոն մը՝ Հայաստանիկ մը, ուր բացի ազգային երկսեռ վարժարաններէն, ունէր նաեւ իր շուրջը մասնաւոր վարժարաններ, որոնցմէ կը յիշեմ Սիմոն Ֆէլէկեանինը (1874ին) եւ Եղիազար Մուրատեանինը (1871—1872) բայց կարճատեւ եղած ու փակուած խաղաղ:

Ս. Խաչի վարժարանը անցեալ դարու վերջերը իր ծրագրին մէջ ընդունեց կրթական

[123] Հրատարակուած Թէրճիմանը Էֆքեար թերթին մէջ 1879 Օգոստոս:

նորագոյն դրութիւն մը, այն էր՝ Ֆրէօպէլեան մանկապարտէզի դրութիւնը, որ առաջին անգամ այդ թաղին մէջ ծնունդ կ'առնէր շնորհիւ Տիկին Գայեանէ Մատաթեանի։

Այդ ճարտար ու գործունեայ մանկապարտիզպանուհին մեծ անուն թողած է Կ. Պոլսոյ մէջ, եւ պատճառ եղած, որ մանկապարտիզեան կրթական դրութիւնը տարածուէր հետզհետէ ու ընդունուէր ուրիշ թաղերու ազգային վարժարաններու Հոգաբարձութիւններէն, փոխան Ծաղկոցեան կոչուած քնաբեր եւ անախորժ կրթութեան, որ մատաղ մանուկներու նորընծիւղ մտքին հիւանդացուցիչ պատուհաս մ'էր բառին կատարեալ իմաստով։

Մանկապարտէզը պահած է իր գոյութիւնը, ու փոխադրուած՝ վերեւ յիշածս «Պատրիարքարան» կոչուած պարտիզաւոր ընդարձակ շէնքը, ուր մեծ յառաջդիմութիւն եւ զարգացում ունեցած է երբեմն։

* * *

Ս. Խաչ Եկեղեցւոյն ճիշդ ետեւի արեւելեան փողոցին վրայ կանգուն էր Օտեան Պօղոս Աղայի լայնարձակ տունը, ուր իր որդին մեծանուն Գրիգոր Օտեան՝ Տօքթ. Նահապետ Ռուսինեանի, Նիկողոս Պալեանի գլխաւոր գործակցութեամբ երկնած է Ազգային Սահմանադրութիւնը եւ Եկեղեցական քանի մը Հայրերու եւ աշխարհական ծանօթ ուրիշ անձերու հետ զայն խմբագրած 1860ին։

Օտեանենց (աւելի «Օտօհենց» կոչուած)

այդ ընակարանը՝ ժամանակի ընթացքին փոխակերպեցաւ եւ եղաւ՝ Տայեան գիշերօթիկ վարժարան օրիորդներու։ Ասոր ճիշդ քովը կար Նիզամեանի մը մեծամեծ տունը, ուր անմահ Ուսուցչապետ Ռէթէոս Պէրպէրեան փոխադրեց իր անուանի վարժարանը՝ ցերեկեայ եւ գիշերօթիկ։

Այս բազմարդիւն եւ պանծալի բարձրագոյն վարժարանը, Ռ. Պէրպէրեան՝ նախապէս՝ 1876 Հոկտեմբեր 1ին Գատըգիւղի մէջ բանալէն յետոյ, 1878ին կը փոխադրէր Իւսկիւտար–Սելամիէ, ուր խիստ փառաւոր կերպով՝ 1901ին անոր Քսանեւհինգամեակի Յոբելեանը[124] տօնուեցաւ, նախագահութեամբ Օրմանեան Մաղաքիա Պատրիարքին եւ այդ առթիւ՝ ես իբրեւ Ատենապետ ազգային ուսումնական խորհուրդին, պատիւ ունեցայ Մեծ Ուսուցչապետին ուղղել ներբողեան մը[125],

---

124 Ռ. Պէրպէրեան 1895ի տխուր դէպքերէն յետոյ ընտանիքովը գնաց Զուիցերիա եւ իր այդ բացակայութեանը միջոցին վարժարանը կրնար փակուիլ ի սպառ, եթէ անոր նախկին աշակերտներէն ուսուցիչ Պետրոս Կարապետեան կուրծք չի տար սպառնացող վտանգին։

Պէրպէրեան դպրոցը մնաց կանգուն եւ երբ Հիմնադիրը վերադարձաւ Կ. Պոլիս, մեծ եղաւ իր ուրախութիւնը տեսնելով իր ձեռակերտ կրթարանին անխափան զարգացումը։

Ռ. Պէրպէրեան շարունակեց իր գործը, բայց իւր յեղակարծ մահէն յետոյ, զաւակները վարժարանը փոխադրեցին Գահիրէ, ուր ունեցաւ ծաղկեալ վիճակ, բայց 1934ին փակուեցաւ այն չի կարենալով տոկալ տարիներէ ի վեր տիրող հրապարակի նիւթական անվերջանալի տագնապին։

125 Բացի իմ խօսածէս՝ որ հրատարակուեցաւ նոյն տարուայ Հանդէս Ամսօրեայի մէջ, ուրիշ անձեր արտասանեցին հոյակապ ճառեր, որոնց մէջ նկատելի

*նուիրելով իրեն իր լուսանկարը կրող գեղարուեստ շրջանակ մը՝ զոր Կ. Պոլսոյ ուսուցչական ամբողջ խումբը պատրաստել տուաւ ուսումնական խորհուրդին միջոցաւ, եւ որ կը բաղկանար՝ համակ ոսկեզօծ արծաթի բաղեղներու սղոսկուն ճիւղերէ, ի նշան անմահութեան կամ յարատեւութեան:*

*Ս. Խաչի աղջկանց վարժարանի ետեւի փողոցին մէջ՝ Պէրպէրեանի եւ Օտեան տան կարգին վրայ կար նաեւ Հայ–մայրապետ երկու քոյրերու նախակրթարանը, ուր կը յաճախէին փոքրիկ երկսեռ մանուկներ* այբ, բէն, գիմ *միայն սորվելու, եւ առանց ետեւն ալ՝ 1874ի ատեններըԱմերիկացի Միսիոնարներ հաստատեցին* Հօմսֆուլ *կոչուած փառաւոր շէնքը*[126] *իբրեւ աղջիկներու յատուկ վարժարան, ուր բազմաթիւ Հայ աշակերտուհիներ տարիներով բարձր կրթութիւն առին:*

*Այս դպրոցին պարտէզին մէջ միաժամանակ շինուեցաւ Հայ բողոքականներու* ժողովարանը, *ուր երբեմն ալ գիշերային բանախօսութիւններ տեղի կ՚ունենային գիտական նիւթերու վրայ: Հոն ես 1887 Մարտ 25ի գիշերը բանախօսած եմ* Մարմնամարզութեան *օգուտներուն վրայ:*

* * *

*էին Օրմանեան Սրբազանինը եւ Հ. Գաբրիէլ Մէնէվիշեանի գրաբար արտասանութիւնը:*

[126] *Յետոյ* Առնաուտքէօյի *բարձունքը փոխադրուած, Վոսփորի Եւրոպական կողմը:*

Սելամլիք Թաղը այսպէս Կ. Պոլսոյ հայաբնակ թաղերուն ամենահարուստն եղաւ դպրոցի տեսակէտով, նաեւ ամենաերեւելին իր բազմահոծ հայ բնակչութեամբ, որոնց մէջ նկատելի էին՝ Պալեան, Փիշմիշեան, Նորատունկեան, Օտեան, Պէյլէրեան, Փափազեան, Սէֆէրեան, Պէհզատ, Այնաւուրեան եւայլն եւայլն ընտանիքները, որոնք ունէին հոն իրենց բարեգործութեան անմոռանալի յիշատակները:

Սելամլիքի ընդարձակ լայն պողոտան վարէն մինչեւ աճիպատէմ, եւ տաղ-համամ ու գիլիհտար-պահճէ կոչուած տեղերը ամբողջ դրաւուած էր հայ երեւելիներու եւ բարեկեցիկ արհեստաւորներու տուներով. Սելամլիքի չուկան ամբողջապէս երկուստեք կը փայլէր սիրունակ խանութներով հայ նպարավաճառներու, ձկնավաճառներու, պտղավաճառներու, գինէվաճառներու եւ վարսավիրայ սափրիչներու, որոնց կարգին ողբացեալ Հայրս ալ ունեցաւ իր շատ գեղեցիկ սրճարանը՝ եզական իր տեսակին մէջ, զի անոր պատերուն վրայ Հայրս՝ նկարիչ Պէհզատ Ոսմէտի ձեռնասուն Միքէ ճարտարարուեստ անձին գծագրել տուաւ Հայկի, Վարդանի, Արա Գեղեցիկի եւ այլ հայ նախարարներու խաղաներկ մեծադիր պատկերները եւ այսպէս՝ այդ խանութը եղած էր հետաքրքրական վայր մը հայութեան, ուր ամէն երեկոյ կը յաճախէր Խ. Պ. Մխաքեան՝ որու քով կը գումարուէր

*միշտ Հայ մտաւորականներու ընտիր խումբ մը եւ ուր տեղի կ՚ունենային շատ անգամ գիշերային բանախօսութիւններ :*

*Այս սրճարանը այրեցաւ 1882ին, եւ Հայրս թէեւ կրցաւ զայն վերաշինել, բայց վախցաւ (եւ իրաւամբ) վերադծել տալ նոյն ազգային մեծ դէմքերու պատկերները :*

*Սելամիէի այս լայն պողոտային վրայ կը գտնուէր կնոջս Մեծ-Հայր (մօրահայր) Յարութիւն Փափազեանի կամ Տէր Բառնաբասեանի շքեղ բնակարանը, ուր առաջին անգամ՝ 1863ին տեղի ունեցած են թատերական ընտիր ներկայացումներ, որոնց մասին միշտ չեն մոռցած իրենց յիշատակութիւնն ընել Հայ թատրոնի պատմութիւնը գրողներ․ բայց սխալ է ըսել՝ թէ 1855ին ալ Օտեաններուն տանը մէջ տեղի ունեցած ըլլան նման ներկայացումներ, զի այդ միջոցին հոն Ազգ․ Սահմանադրութեան խմբագրիչ Յանձնաժողովը կը գումարուէր, մանաւանդ կը ծեծուէր նաեւ աւելի կարեւոր նպատակի մը ձեռնարկութիւնը, այն էր՝ կազմութիւնը* Բաժանորդական ընկերութեան, *որ կը հաստատուէր 1859ին Նախագահութեամբ Գր․ Օտեանի, եւ որուն նպատակն էր՝ բանալ գիշերօթիկ վարժարան մը ձրիապէս դաստիարակելու համար աղքատիկ 25 մանչ եւ 25 աղջիկ :*

*Գր․ Օտեան այս նպատակին գործադրութեանը համար կոչ մը կ՚ուղղէր ժողովուր-*

*դին՝* «որում փոքրիկ լուման հանք մ'է ան-սպառ» *կը գրէր*[127]:

*Սելամիէի պողոտայէն վեր Ս. Խաչ փողոցին ճիշդ բերանը կը գտնուէր նաեւ Մեծ Հօրս Սարգիս Ղուկասեանի տունը, ներքեւը իր խանութը, երեւելիներու ժամադրավայր, որուն առջեւը կար ամենախոշոր կնձնի ծառ մը, զոր տասը հոգի չուրջը ձեռք ձեռքի պար բռնելով հազիւ կրնային գրկել: Փողոցին այդ մասը ամբողջովին կը հովանաւորէր կնձնին, անոր ներքեւը կու գային նստիլ Թաղին ծերունիները, իրենց օրը անցնելու եւ իրենց կեանքի հին յիշատակներէն իրարու պատմելու:*

*Այդ ծառը* 1868*ին հարկ եղաւ արմատախիլ հանել, երբ Մեծ Հօրս տունն ալ որ շատ հին էր, վար առնուելով, տեղը նոր մը շինուեցաւ, ներքեւն ալ դեղարան մը, ուր սկսաւ աշխատիլ Մօրեղբայրս՝ Նշան Ղուկասեան, քաղաքային բժշկական վարժարանին քիմիաբանութեան դասատու անուանուելէ առաջ* 1876*ին:*

*Թաղին առաջնակարգ դեղարանն էր այն, անոր մէկ պատուհանին վրայ մօրեղբայրս գծագրել տուած էր մեծկակ կմախք մը մարդկային, ներքեւն ալ՝* «Ծանիր զքեզ» *խօսքը, որպէս զի այդու՝ ժողովուրդին լաւ հրաւիրակ մը ըլլար առողջապահութեան:*

* * *

[127] *Յուեկոուած* Արշալոյս Արարատեան *թերթին Զմիւռնիոյ 17 Մայիս* 1859:

Սելամիքէի բնակչութեան հետզհետէ զգալիօրէն բազմանալը պատճառ եղած է, որ անոր հիւսիսային կողմը հաստատուէին տակաւ Հայեր, և կազմէին ուրոյն թաղեր, նախ՝ Իճատիէ անունով, յետոյ Առապգատէ յորջորջումով, որոնց առաջինը Խ. Պ. Մխաքեան Հճարաւաճ անունով մկրտած էր, և երկրորդը՝ Արապորդի:

Իճատիէի մէջ կը բնակէին պետական պաշտօնեայ նշանաւոր Հայեր՝ ինչպէս արքունի Սիլիճի պաշի Կիրակոս աղա (Հայր Այվազեան Սահակ Եպիսկոպոսին), Ըոկաթ պաշի Գրիգոր էֆ. Ներսէսեան, Թաշճի պաշի Առաքել աղա, նաև ճարտարապետ Յովհաննէս Աղնաւուրեան, խասեան ու Քիպարեան և ուրիշներ, որոնցմէ՝ Գր. Ներսէսեան 1873ին հիմնեց հոն Երկսեռ վարժարան մը. աղջիկներունը կոչեց՝ Երմոճեան, ի յիշատակ իւր վաղամեռիկ Երմոճէ դստեր, ու մանչերունը Ներսէսեան՝ իւր Հօրը անունով: Այս վարժարանները կը պահեն ցարդ իրենց գոյութիւնը ժողովուրդին լումաներուն շնորհիւ:

Իճատիէի թաղը մերթ Ս. Խաչի և մերթ Գուզկունճուքի Թաղական Խորհուրդին իրաւասութեան տակ եղած է, մինչոյ մ՚ալ՝ տեղւոյն ազգայինները փափաքեցան առանձին Եկեղեցի մը ունենալ. հիմերն իսկ փորել տուին, քարերը բերին, բայց՝ կարելի չեղաւ շինութեան արտօնութիւնը առնել կառավարութենէն, գո՛ւցէ բարեբախտաբար, զի

*եթէ չինուած ըլլար, այդ ալ ճարակ պիտի ըլլար այն սոսկալի հրդեհին, որ 1920ի աշնան սկիզբը Թաղը ամբողջովին սրբեց–սկրդեց մոխիր դարձուց, կիսաւեր Թողլով նաեւ վարժարանը։*

* * *

*Ներսէսեան եւ Երմոնեան վարժարաններն ալ ունեցած են միշտ յառաջադէմ վիճակ, շնորհիւ Մալաթեանի եւ Հինտլեանի նման կարող դասատուներու եւ դաստիարակներու, եւ եղաւ՝ որ* Իճատիէ, Սելամիէ *եւ* Եէնիմահալլէ *վարժարանները քանիցս միացան իրարու՝ մէկ ծրագիրով, նախ՝ Քրիստոստուր Ղազարոսեանի եւ յետոյ՝ յայտնի մանկավարժ Համբարձում Իփէքճեանի ընդհանուր Տեսչութեամբ, սակայն այս յոյժ բաղձալի Միութիւնը երկար կեանք չունեցաւ*[128]։

---

[128] *Երբ բժիշկ վկայուեցայ ու Պարիսը Թողլով դացի Հաստատուիլ Իսկիւտար, արուեստս ի գործ դնելու համար, հոն իմ գլխաւոր մտածումս ու նուիրական պարտականութիւնս եղաւ, կրթութեանս օրրանն եղող Ս. Խաչի աշակերտ եւ աշակերտուհիներուն առողջապահութեանը հսկող ըլլալ անձնուիրաբար, եւ այս նպատակաւ 1886ին նամակներ ուղղեցի, ո՛չ միայն Ս. Խաչի, այլ եւ՝ Ս. Կարապետի եւ Իճատիէի վարժարաններուն Հոգաբարձութեանց, որպէս զի արտօնուէի սկսիլ բժշկական այցելութիւններս։ Անմիջապէս ընդունելութեան արժանացաւ առաջարկս, եւ ուղղած նամակիս պատճէնը հրատարակել տուաւ Եէնիմահալլէի Հոգաբարձութեան Ատենապետը (տե՛ս* «Արեւելք», *Թիւ 825, Գ. տարի, Կ. Պոլիս 4/16 Հոկտ. 1886)։*

*Թէ ի՞նչպէս կը կատարէի իմ բժշկական այցելութիւններս, գրած եմ այս մասին Պոլսական* Բիւզանդիոն *եւ այլ Թերթերու մէջ՝ մանրամասն կերպով եւ յետոյ ալ զանոնք ամփոփած եմ* «Դպրոցական Առող–

Իճատիէի մէջ թաղային վարժարաններէն զատ մասնաւոր դպրոցներ ալ բացուած են ցերեկեայ կամ գիշերօթիկ, որոնց նշանակելիներն էին՝ Գավուքճեան մանկապարտէզը, յետոյ Մեզպուրեան աղջիկներու յատուկ գիշերօթիկ բարձրագոյն վարժարանը, որ առաջին անգամ Կ. Պոլսոյ Հիսար Տիպի կոչուած տեղը 1865ին սկսելէ յետոյ, ընդհատուած ու վերաբացուած է, 1879ին փոխադրուելով Իճատիէ. խիստ փայլուն շրջաններ բոլորեց այդ վարժարանը եւ վերջնականապէս փակուեցաւ 1896ին: Հիմնադիրը՝ Մկրտիչ Մեզպուրեան ապա Պարիս գացած է եւ հոն իր կեանքը կնքած:

Ասոնցմէ վերջ՝ նոյն թաղին մէջ Պետրոս Կարապետեան՝ քաջ թրքագէտն ալ բացած է գիշերօթիկ վարժարան մը, որ քանի մը տարի յաջողապէս շարունակած միջոցին, յա՛նկարծ հրոյ ճարակ եղած է:

Իճատիէէն Գուզկունճուք տանող զառիվայրին վրայ էր երբեմնի այն ազգային վարժարանը, զոր յիշատակած եմ Գուզկունճուքի մասին գրած տողերուս մէջ եւ ուր թատերական ներկայացումներ ալ տրուած են մերթ ընդ մերթ:

* * *

Երկար է դեռ Իսկիւտարի հայ պատմութիւնը. կը բաւականանամ այսչափով, որ չափէն աւելի զարտուղութեան տարաւ ար-

ջապահութիւն» Հատորիկին մէջ, որ լոյս տեսաւ Վենետիկ Ս. Ղազարի Տպարանէն 1908ին:

դէն Ծանօթագրութիւններուս ընթացքը, ուստի կը փակեմ զայն աւելցնելով՝ թէ Սելամիէ թաղը ունեցած է շատ ընկերութիւններ, եւ բացի նախապէս յիշածներէս՝ որոնք էին՝ Բաժանորդական, Խնամակալ Տիկնանց Միութիւն, Սանուց, Սանուհեաց, Ուսումնատարած, Կրթասիրաց, հաստատուած է հոն Ընթերցասիրացը, որ ունէր արդարեւ իր յատուկ ընթերցարանը Սելամիէի մեծ պողոտային վրայ բացուող փողոցի մը մէջ, եւ որ 1872ին հրատարակած է վաղամեռիկ բանաստեղծ Պետրոս Դուրեանի «Տաղք եւ թատերգութիւնք» հատորը, նախաձեռնութեամբ Գուռնեան Աւետիս աշխոյժ երիտասարդին, որ սոյն ընկերութեան հոգին էր եւ պաշտողը հանգուցեալ բանաստեղծին: Այս ընթերցարանին մէջ ալ տեղի կ'ունենար երբեմնակի գիշերային բանախօսութիւններ:

Եղած են նաեւ Առեւտրական, Խնայողական, Երաժշտասիրական եւ նման ընկերութիւններ, որոնք գրեթէ առ օրին մեռած են: Այս ընկերութիւններէն յարատեւութիւն ունեցած է միայն Աղքատախնամը, 1880ին հաստատուած, որ իր գոյութիւնը կը պահէ մինչեւ այժմ եւ մեծ բարերարի դեր կատարած է ու կը կատարէ ամբողջ Իւսկիւտարի մէջ, անխտիր խնամելով հայ հիւանդներու հետ եւ օտարազգի կարօտներ:

*Իւսկիւտար կը պահէ ցարդ Որբանոց մը որ ազգային վարժարաններուն մէջն է հաստատուած :*

* * *

*Սելամիէի կամ Սելամսըզի պողոտայէն վեր՝* Աճի-պատէմ, Վանքին-Այազի *կոչուած տեղերէն դէպ արեւելք ընթանալով, կը հասնինք Ազգային ընդարձակ Գերեզմանատունը, որուն երկայնութիւնը կը տարածուի Հարաւէն Հիւսիս, եւ լայնութիւնը արեւելքէն արեւմուտք, եւ կը ծառայէ իբր Գնարան Իւսկիւտարի չորս թաղերու[129] ննջեցեալներուն :*

*Այս Գերեզմանատունը շա՛տ ու շատ հին է. ժամանակակից է Սուրբ Կարապետ Եկեղեցւոյն, որով անոր գոյութիւնը պէտք է տանիլ, դէպի 17րդ դարու սկիզբները, եթէ ոչ առաջ: Վասն զի՝ ինչպէս տեսանք Ս. Կարապետի մասին գրուածներուն մէջ, երբ «Ղըյ-*մաթ Իւսկիւտարցին» *Գրիգոր Պարոնտէր Պատրիարքի օրով* (1615—1647), *Երուսաղէմի Սուրբ Յակոբայ վանքին կը նուիրէ Իւսկիւտարի մէջ ունեցած իր ընդարձակ այգին, այդ նուիրատուութեան հետ կը յիշատակուի Գերեզմանատունն ալ, ուր 1640ին կը հանգչէր արդէն Զաքարիա Վանեցի Պատրիարքը, ուստի կրնանք աներկբայ կերպով անոր սկիզբը* 1615—1620 *թուականներուն մէջ ընդունիլ :*

---

[129] *Այսինքն՝* Եէնիմահալլէ, Սելամիէ, Իճատիէ, Գուզկունճուք :

*Այս Գերեզմանատունին համար մեր տղայութեանը լսած ենք ծերուններէ, թէ նախապէս փոսի պէս վայր մ՚է եղեր, անտերունջ, ու լքուած, որ հետզհետէ լեցուած է թաղուած մեռելներով :*

*Որպէս զի այս չիրմատանը Ազգային սեպհականութիւն ըլլայ* Ադամ *անուն* Ջորեյան *մը իւր բոլոր ունեցածը ծախելով կը գնէ անոր դէպի հիւսիս եղած ընդարձակ մասը եւ կը կցէ զայն արդէն եղածին, որով հինը կը նշանակուի իբրեւ Ս. Կարապետի մաս, իսկ նորն ալ՝ Ս. Խաչի :*

*Ադամ Ջորեյան կը հանգչի Գերեզմանատունին հիւսիսակողմը Ս. Խաչի թաղ կոչուած մասին մէջ. իր վրան կանգնուած է մարմարեայ բաւական խոշոր գեղեցիկ չիրիմ մը, որ կը կրէ 12 տող Արձանագրութիւն մը՝ սապէս.*

Է.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՀԱՆԳՍՏԵԱՆ ԱԴԱՄ
ԱՆՈՒՆ ԲԱՐԵՐԱՐ ԱՌՆ ՄԻՈՅ
ՈՐ ԷՐ ԱՐՀԵՍՏԻՒՆ ԶՈՐԵՊԱՆ
ԵՒ ՔԱՂԱՔԱՒՆ ԱՄԴԵՑԻ. ՎԱՃԱՌԵԼՈՎ
ՍՈՐԱ ԶԱՄԵՆԱՅՆ ԻՆՉՍ ԵՒ ԶԱՐԴԻՒՆՍ
ԻՒՐ Ի ՊԷՏՍ ԴԱՄԲԱՐԱՆԻՍ ԸՍՏԱ-
ՅԱՒ ԶԳԵՐԵԶՄԱՆԱՏՈՒՆՍ ԶԱՅՍ
ԵՒ ԵԹՈՂ ԲԱՐԻ ՅԻՇԱՏԱԿ ԱԶԳԻՍ
ՄԵՐՈՑ. ՈՒՍՏԻ Ի ՀԱՆԴԻՊԻԼՆ ՁԵՐ
ԱՅՍՄ ՇԻՐՄԻՍ ԽՆԴՐԷ Ի ՁԷՆՋ
ՄԻՈՎ ՀԱՅՐՄԵՐԻՒ ԱՍԵԼ
ԶՈՂՈՐՄԻՍ.
1718

*Ամդեցի Զօրեղան Աղամի մարմինը ծածկող այս քարը, որ հաւանաբար անոր մահէն շատ վերջը դրուած է, խիստ կարեւոր է. եթէ համարենք որ նա 1718ին յառաջացած տարիքի մէջ կնքեց իր կեանքը, զոր օրինակ 70 կամ 75 տարու, ծնած կ'ըլլայ այն 1643—1648 թուականներուն, որով կրնանք ենթադրել թէ Գերեզմանատունին այդ վերի մասը ինքը գնեց 1680—1690 թուին: Ասոր մօտիկները կը գտնուի 1761 թուականով շիրիմ մը որուն տապանագիրն է.*

է

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՀԱՆԳՍՏԵԱՆ
ԱՆԴԱՅ ՔՈՒՂԷՆ ԷՓԷԽՑԻ
ՏԷՐ ՄԱՀՏԵՍԻ ՅԱԿՈԲԻ ՈՐԴԻ
ՄԱՀՏԵՍԻ ՏԻՐԱՑՈՒ ՄԿՐՏԻՉԻ
ՈՐ ՓՈԽԵՑԱՒ ԱՌ ՔՐԻՍՏՈՍ ԹՎՆ ՀԱՅՈՑ
Ռ· Մ· Ժ· (= 1210 + 551 = 1761):

* *
*

*Ազգային նշանաւոր Եկեղեցականներ ու երեւելի գրագէտներ կը նիրհեն հոն իրենց վերջին քունը. անոնց մէջ կան հինգ հատ նախկին Պատրիարքներ Կ.Պոլսոյ, որոնց տապանագիրները անձամբ քաղած եմ ժամանակին եւ թէեւ հրատարակած խսկ եմ զանոնք 1918ի Բազմավէպին մէջ*[130]*, բայց հոս ալ աւելորդ չեմ համարիր անոնց կրկնութիւնը:*

*Այս պատրիարքներուն առաջինն է՝ Զաքարիա Վանեցին, 1640ին վախճանած, որ թաղուած է Ս. Կարապետի բաժնին մէջ եւ*

[130] «Բազմավէպ», Տապանագիրք Կ. Պոլսոյ Հայ Պատրիարքաց (էջ 169—186):

*որուն Տապանագիրը յիշած եմ արդէն Ս. Կարապետի վրայ գրածիս կարգը։*

*Զաքարիայի ձախ կողմը կը հանգչի Աստուածատուր Պատրիարքը՝ որ պաշտօնավարած է 1841—1844 եւ վախճանած է 1846ին։ Ասոր շիրիմը մեծ ուխտատեղի է, եւ ամէն շաբաթ օր՝ հաւատացեալներ կ՚երթան անոր վրայ աղօթելու, եւ իրենց երեսն ու ձեռքերը լուանալով, ջուրը կը սրսկեն շիրմին չորս կողմը, բժշկութիւն հայցելով կամ յաջողութիւն ու բարօրութիւն խնդրելով, զի կը պատմուի թէ հրաշքներ տեղի ունեցած են անոր գերեզմանէն. ահաւասիկ իր Տապանագիրը.*

ԱՍՏ Է ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ ՍՐԲԱԶԱՆ
ԱՐՀԻՆ

ԱՆՑԱՒՈՐՔ ԱՍՏԻ, ԴԱՐՁԻ՛Ք ՅԱՅՍ ՏԱՊԱՆ՝
ՀԱՅԵԼ ՄԻ ԱՆԳԱՄ, ՅԱՐՀԻՍ ՍՐԲԱԶԱՆ.
ԱՅՆ ՈՐ ԱՆԴՍՏԻՆ ԳՈՐԾՈՅ ԲԱՐՈՒԹԵԱՆ
ՎԵՀ ՀԱՆԴԻՍԱՑԱՒ, ԶԲՆԱՂ ՏԵՍԱՐԱՆ,
ՊԱՏՐԻԱՐՔ ՊՕԼՍՈՅՍ ԶԱՔԱՐԻԱ ԱՐՀԻՈՅՆ
ՋԵՌՆԱՍՈՒՆ ԸՆՏԻՐ՝ ՏԷՐՍ ՎԵՀԱՓՈՒՆ.
ՍՈՅՆ ԵՒ ԱԶԳԱՍԷՐ ԸՍՏ ԻՒՐՈՑ ՆԱԽՆԻՈՅՆ
Ի ՀՈԳ ԻՒՐ ՀՕՏԻՆ ԶԳԱՍՏ ԵՒ ԱՐԹՈՒՆ,
ՍԱ Ի ՅԱԶԳԱՅԻՆ, ԱՆԴ ԽՌՈՎՈՒԹԵԱՆ
ԵՂԵՒ ՊԱՏՐԻԱՐՔ, Ի ԽՆԱՄՈՅ ՏԵԱՌՆ
ՅՈՐԴՈՐՄԱՄԲ ՍՈՐԻՆ ՇԻՆԵԱԼ ԱՆՆԸՄԱՆ
ՍՈՒՐԲ ԿԱՐԱՊԵՏԻՆ ՏԱՃԱՐ ՀՐԱՇԱԶԱՆ.
ԱՆԴ ՀԱՆԳՈՅՑ ԶՆՈՐԱ, ՆՇԽԱՐ ՊԱՏՈՒԱԿԱՆ
ՓԱՅԼԵԱԼ ՀՐԱՇԻՒՔ ՅԱԶԳԸՍ ԱՄԵՆԱՅՆ,
ԻՆՔՆ ՎՃԱՐԵԱԼ, ՅԱՒԱԼԻՑ ԶԻՒՐ ԿԵԱՆ,
ՎԵՐԱՍԼԱՑԱՒ, ՅԱՆՄԱՀԻՑ ԽՈՐԱՆ։

ՅԱՄԻ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ 1846
ՓՈԽԵԱԼ ՅՈՒՆՈՒԱՐ 2, ԱՄԱՑ 78

*Գերեզմանատան ճիշդ մէջ տեղը, կը գտնուի դիրը Կ. Պոլսեցի Յովհաննէս Պատրիարքին, որ սխալմամբ Բաբերդցի կոչուած է, մինչ Գիտ Քահանայ Աղանեան եւ Աւետիս Պէրպէրեան (էջ 10) զայն* Կ. Պոլսեցի *ներկայացուցած են. երբ մանաւանդ իւր Տապանագիրն ալ* ուրիշ տեղացի *զայն չի գրեր եւ անոր Հայրենիքը կամ ծննդավայրը Կ. Պոլիս կը նշանակէ, ահաւասիկ այն.*

ՅԱՎՀԱՆՆԷՍ ՊԱՏՐԻԱՐԳ Կ. ՊՈԼՍԵՑԻ

ՊՈԼՍԵՑԻ ՔԱՋ ԴԵՏ՝ ՅՕՀԱՆՆԷՍ ԱՐՀԻՆ,
ԶԱՔԱՐԵԱՅ ՎԵՀԻՆ՝ ՀՈԳԵԾԻՆ ՈՐԴԻՆ.
ՆԵՐԲՈՂԻՒ ՅԻՇԵԼ՝ ԵԹԷ ԶԱՆՑ ԱՌՆԻՆ,
ԲՈՂՈՔԵՆ ՔԱՐԻՆՔ՝ ԸՍՏ ՏԵԱՌՆ ԲԱՆԻՆ.
ՄԻՆ ՍՄԱՆ ՍՄԻՆ՝ ՀԱՋԻՒ ՄԵԶ ՑԱՑՏՆԻՆ,
ՀԱՄԵՂ ԵՒ ԱՆԼՈՒՐ՝ ՎՍԵՄ ՅԱՏԵՆԻՆ,
ՔԱՋ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆ՝ ԲԱՆԻՑ ՔԱՐՈԶԻՆ,
ՁԵՂԵՒ ՄԵԶ ՑԱԳԻԼ՝ ՔԱՌԱՍՈՒՆ ՏԱՐԻՆ.
ԳԹԱԾ ԸՆՁԱՏԵԱՑ՝ ՀԱՅՐ ՄԵՐ ԱՆՆԸՄԱՆ,
ԿԱԼՈՎ ՀՊԱՏԱԿ՝ ՎՇՏԱՑ ԶԱՆԱԶԱՆ.
ՅԵՐԵՔՏԱՍԱՆ ԱՄ՝ ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ,
ԵՐԲԷՔ ՉՍՏԱՑԱՒ՝ ՕՐ ՀԱՆԳՍՏՈՒԹԵԱՆ,
ԲԱՅՑ ԿՐԿԻՆ ԹԵՒՕՔ՝ ԾՈԽ ԻՄԱՍՏՈՒԹԵԱՆ,
ԲԱՐՁՐԱՑՈՅՑ ԶԱԶԳ ՄԵՐ՝ ՅԱՉՍ ՏԷՐՈՒԹԵԱՆ.
ՈՒՍՏԻ ԵՏ ԱՐՔԱՅՆ՝ ԽԻԼԱՅ ՅԱՐԳՈՒԹԵԱՆ,
ՈՐ ՉԷ ԱՍՏ ԵՐԲԷՔ՝ ԵՂԵԱԼ ՅԱՒԻՏԵԱՆ.
ԲԱՅ ՅԱՆԹԻՒ ԲԱՐԵԱՑ՝ Ի ՊՈԼԻՍ ՄԻԱՅՆ,
ԵՕԹՆ ԵԿԵՂԵՑԻՔ՝ ՆՈՐ ՀԱՍՏԱՏԵՑԱՆ.
ԵՒ ՅԵՏ ՀՐԱԺԱՐՄԱՆ՝ ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ,
ԶՁՈՐՍ ԱՄ ԱՊՐԵԱԼ՝ ԷԱՌ ՍՈՒՐԲ ՎԱԽՃԱՆ.
Ի ԹԻՒ ՎԱԹՍՈՒՆԻ՝ ԿԵՆԱՑՆ ԼՐՄԱՆ,
ՍԼԱՑԱՒ Ի ՄԷՆՋ՝ Ի ՍՈՒՐԲ ՀԱՐՑ ԿԱՅԱՆ:

ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1817 ՅՈՒԼԻՍԻ 27

*Գերեզմանատան հիւսիսային կողմը կը գտնանք Կարապետ եւ Սարգիս պատրիարք–ներուն շիրիմները քով քովի· առաջինին վրայ կը կարդանք հետեւեալը՝ խուրակերտ գերեզ–մանին վրայ·*

«ՏԱՊԱՆ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՍՐԲՈՑ ԱԹՈՌ–
ՈՅՆ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ՄԻԱԲԱՆ ԿՈՍՏԱՆԴՆՈՒ–
ՊՕԼՍԵՑԻ ԿԱՐԱՊԵՏ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ, ՈՐ
ՈՒԹԱՄԵԱՑ ԺԱՄԱՆԱԿԱՒ ՊԱՏՐԻԱՐՔ
ԿԱՐԳԵՑԱՒ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍՈՅ, ՅՈՐՄԷ
ԿԱՄՈՎԻՆ ՀՐԱԺԱՐԵԱԼ ԱՌԱՆՁՆԱՑԱՒ Ի
ՏԱՆ ԻՒՐՈՒՄ Ի ԽՐԻՍՈՒՊՕԼԻՍ, ԸՆԴ ՀՈՎԱ–
ՆԵԱՒ ՍՈՒՐԲ ԽԱՉԻ ՉՔՆԱՂ ԵԿԵՂԵՑԻՈՅ,
ՅԱՄՍ ՏԱՍՆԵՒԻՆՆ ԵՒ Ի ՀԱՍԱԿԻ ՎԱԹՍՈՒՆ
ԵՒ ԵՕԹՆ ԱՄԱՑ ԿԵՆԱՑ ԻՒՐՈՑ ՀԱՆԳՈՒ–
ՑԵԱԼ ԵԴԱՒ ՅԱՅՍ ԳԵՐԵԶՄԱՆԻ, ԶՈՐ ԻՆ–
ՔՆ ԷՐ ՊԱՏՐԱՍՏԵԱԼ· ՈՒՐ ԱՅԺՄ ԽՆԴՐԷ
ՅԸՆԹԵՐՑՈՂԱՑԴ ԱՍԵԼ, ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ:
ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1850 ՅՈՒԼԻՍ 31»:

*Իսկ երկրորդին շիրմագիրն է սապէս·*

ՄԱՀԱՐՁԱՆ
Տ· Տ· ՍԱՐԳՍԻ ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ
ԱՆԴԻԱՆՈՒՊՕԼՍԵՑԻՈՅ ԵՒ ՊԱՏՐԻԱՐՔԻ Կ· ՊՕԼՍՈՅ

—

ՀԱՆԳԻ՛Ր, ՈԳԻԴ ԱՌԱՔԻՆԻ, ԸՆԴ ՏԽՈՒՐ ՇԻՐՄԱՒՍ
ԱՆՇՈՒՔ·
ԵՒ ԶՆՈՃԵԱՑ ՍԳԱՏԵՐԵՒ ԱՌԿԱԽԻՑԻ ՔՆԱՐ ՈՐԲԵԱՑ,
ՈՂԲԱԼ ՅԱՒԷՐԺ ԲԱՐԻՈՅ ՀՕՐԴ ԶԵԼՍ ՅՈՐԿԱՑԻՑ
ՄԱՀԱՑՈՒ,
ԸԶՀՈՎՈՒԱՊԵՏԴ ՈՂԲԱԼ ՀԱՅՈՑ ՎԱԹՍՈՒՆ ԵՒ ՄԻ
ՎԱՐԵԱԼ ԱՄՍ,

Ի ԴԱՄԲԱՐԱՆՍ ՀԻՒԼԷՔ ՄԱՐՄՆՈՅԴ ՆՆՋԻՑԻՆ ՆՍԵՄԱՍՏՈՒԵՐ,
ՈՐՊԷՍ ԵՐԲԵՄՆ Ի ՍԱՂԻՄ ՏԵԱՌԸՆ ՊՕՂԱՑ ՀԱՆԳԵԱՒ ՆՇԽԱՐ,
ՆԱ ՀՕՐԵՂԲԱՅՐ ՁԵՐ ԱՐԹՈՒՆ ԵՒ ՄԻԱԲԱՆ ՏԱՆՆ ՅԱԿՈՎԲԱՅ
ՋՀՈՎՈՒԱԿԱՆ ՎԱՐԵԱՑ ՊԱՇՏՕՆ ՊՈԼՍՈՅ Ի ԳԱՀ ՀԱՅԿԱԶԱՆՑ ԴԵՏ·
ՈՐԴԻՈՅԴ ԱՆԿԵՂԾ ԹԱՑԻՆ ԱՐԴԵՕՔ ՋՏԱՊԱՆ ՎԵՀԻԴ ԴԱՌՆ ԱՐՏԱՍՈՒՔ,
ԱՅԼ ԹԱՑՑԷ ԵՒ ՅԱՊԱԳԱՅՍ ԱՌԱՔԻՆԵԱՑ ԽՆԴԻՑ ԼԱԼՕՆ,
ՄԻՆՉ ՈՐ ՅԱՄՊՍ ՀԱՍՏԵԱՑ ՋԱԹՈՌ,
ԴԱՐՁՑԻ ՅԱՅՍ ՀԱՐԿ ՀՈՂԱԶԱՆԳՈՒԱԾ,
ԸՆԴ ՍՐԲՈՑ ԵՒ ԸՋՋԵՋ Ի ԽՈՍՏԱՑԵԱԼՆ ԱԾԵԼ ԴՐԱԽՏ:

1865 ՅՈՒԼԻՍ 28:

*Բացի այս հինգ պատրիարքներէն կը հանդչին հոն ուրիշ Եպիսկոպոսներ՝ ինչպէս* Պօղոս Թոխատեցի († 1675*ին*), *որուն տապանագիրը յիշացրած եմ արդէն*. Պաղտասար Եպ. Պոլսեցի *լուսարարապետ Ս. Երուսաղէմի* († 1809*ին*)՝ *զոր կը յիշէ Մկրտիչ Եպ. Ագաւնունի*[131]. *Գրիգորիս Եպ. Ալէաթճեան* († 1899 *Օգոստոս* 15), *որ Կիլիկիոյ կաթողիկոս ընտրուեցաւ* 1896*ին*, *բայց Սուլթան Համիտ զայն չվաւերացուց, վախնալով՝ որ Կիլիկիոյ մէջ յեղափոխական ընթացք նա կ'ունենայ, որովհետեւ Տարօնի Առաջնորդ եղած ժամանակը, Մուշի Թուրք կառավա-*

[131] Միաբանք եւ Այցելուք Հայ Երուսաղէմի, էջ 406:

րիչին հետ վէճ մը ունեցած եւ զայն ապտակած ըլլալուն համար պաշտօնանկ եղած ու Կ. Պոլիս էր բերուած տարիներ առաջ: Աշխոյժ եւ գործունեայ (բայց դիւրաբորբոք) Եկեղեցական մ'էր՝ բաւական հմուտ. Թաղուած է քովը իւր հօր եւ մօր՝ որոնց վրայ Սրբազանը ինքը՝ ողջութեանը, կանգնեց գեղեցիկ Դամբան մը, բայց ինքը կը ննջէ անշիրիմ:

Այս Գերեզմանատունը թաղուած են՝ Իւսկիւտարի երկու Եկեղեցիներուն ու Գուգկունճուքի Ս. Լուսաւորչին սպասաւորող բոլոր Հանգուցեալ Քահանաները իրենց մասնայատուկ թաղին մէջ:

Օտեան, Պալեան, Փիշմիշեան, Նորատունկեան, Նիզամեան, Սէֆերեան, Երկանեան, եւ այլ երեւելի ընտանիքներու անդամներ կը հանգչին այս Գերեզմանատունը: Հոս թաղուած են՝ նշանաւոր նկարիչներ Պէհզատ Ումէտ եւ Սագայեան Աբրահամ. ազգային Սահմանադրութեան հեղինակ եղողներէն Նիկողոս Պալեան († 1858) եւ ծանօթ բժիշկ՝ Տօքթ. Բարունակ Պէյ Ֆէրուհխան[132] († 1868), անուանին Տէրոյենց Յովհաննէս Պատուելի († 1888), Խաչատուր Պուէտ Միսաքեան († 1891), վաղամեռիկ Պետրոս Դուրեան[133] († 1872), սորա Եղբայրը Յարու-

132 Աստր ընդարձակ կենսագրութիւնը հրատարակած եմ, «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ 1895 Թուի Հոկտ. ամսու էջ 310 եւ Դեկտ. էջ 361:

133 Պետրոս Դուրեանի մահէն յետոյ, Իւսկիւ-

*Թիւն Դուրեան ուսումնական երիտասարդը († 1874), Ոսուցչապետ Ռէթէոս Պէրպէ-*

---

*տարի «Ընթերցասիրաց» ընկերութիւնը անոր Գերեզմանին վրայ կանգնեց բրգաձեւ սիրուն կոթող մը, որուն լուսանկարը յատուկ գրութեամբ մը հրատարակեցի՝ «Հանդէս Ամսօրեայ»ի 1900ի՝ Մայիս—Յունիս միացեալ թիւին մէջ (էջ 177—178), արտագրելով նաեւ Տապանագիրը՝ զոր շարագրած է Պետրոսի Եղբայրը Միհրան Դուրեան (ապա Եղիշէ Պատրիարք) եւ սրբագրած էր՝ Խ. Պ. Միսաքեան: Աւելորդ չեմ համարիր կրկնել հոս այդ Տապանագիրը, Եղիշէ Սրբազանին պատանեկութեան գրչին՝ գրեթէ առաջին քայլերէն.*

Աստ հանգչի մարմին Պետրոսի Դուրեան
Որ քրսանամեայ էջ ի գերեզման.
Երկաթագործի սա ծընաւ որդի
Բանաստեղծ թըռեաւ ի կենաց աստի:
Ի տարաժամու Յունուար քըսանի
Հազար ութ հարիւր եօթանասերկի,
Արեւն իւր էր դեռ ի յառաւօտին
Օրհասին սեաւ ամպք ըզնա ծածկեցին:
Մահ նորա բնաւից իւրոց սիրելեաց
Սուգ անմըխիթար եւ կըսկիծ էած.
Վըշտըմբեր կենաց նորա սոսկ վըկայ՝
Կընեայ մահարձանս աւասիկ աստ կայ:

Ծնեալ ի 1851, ի 20 Մայիսի:֊

*Բայց Պատրիարք Խրիմեան Հայրիկ կ'ուզէր՝ որ մահարձանին վրայ դրոշմուէր, նոյն իսկ բանաստեղծին* «Իմ Հանգիստը» *վերնագրով՝* 1871*ին գրած տաղը, զոր տարիներ յետոյ Եղիշէ Սրբազան փորագրել տուաւ շիրմին միւս էջին վրայ, եւ է այսպէս.*

Երբ մօտի հողակոյտիս,
Թուխ մոխրագոյն 'ւ աչեր ներա
Թէ ջուխտ մարգրիտ թափեն իմ վրա,
Զը ցաւագնիր ոսկերոտիս.

Այս իմ հանգիստ
Իմ լըռանիստ,
Այս օթեւան
Խաղաղութեան:

«Տաղք եւ թատերգութիւնք Պետրոսի Դուրեան», *Կ. Պոլիս* 1872, *էջ* 59:

*բեան*[134] *(† 1907), Վարդան Լութֆեան, Ուղուրլիկեան, Պօլիկեան ծանօթ գիտուն դրագէտները եւ դեռ ուրիշ վաղաժամրշած ծաղիկներ գիտութեան, որոնց ցանկը շատ երկար է գրել։*

---

[134] *Պէրպէրեանի նախկին սաները 1932ին գեղեցիկ գաղափարն ունեցան շիրիմ մը կանգնելու, իրենց Դաստիարակ–Ուսուցչապետին Գերեզմանին վրայ, եւ յաջողեցան ի գլուխ զայն հանելու։*

*Այդ շիրմին բացումը հանդիսաւոր կերպով կատարուեցաւ 1934ին, վրան կը կարդացուի հետեւեալ վերտառութիւնը.*

ԲԱՐԻՆ
ԳԵՂԵՑԻԿԸ
ՃՇՄԱՐԻՏԸ
—
ՈՒՍՈՒՑՉԱՊԵՏ
ՌԷԹԷՈՍ Յ. ՊԷՐՊԷՐԵԱՆ
1852—1907
—
ԱՆՀՈՒՆ
ՊԱՇՏՈՒՄՈՎ
ԿԱՆԳՆԵՑԻՆ ԱՅՍ ՇԻՐԻՄԸ
ԻՐ ԵՐԱԽՏԱԳԷՏ ՍԱՆԵՐԸ
21 ԱՊՐԻԼ 1932

*Ռ. Պէրպէրեան կը հանգչի քովը իր կնոջ, որ մեռաւ 1899ին եւ որուն վրայ ինքը Պէրպէրեան իր ողջութեանը կանգնեց գեղեցիկ կոթող մը, վրան գրել տալով հետեւեալ յուզիչ տողերը, արդիւնք իր գրչին.*

Ի
ՆՈՒԻՐԱԿԱՆ ՅԻՇԱՏԱԿ
ՏԻԿԻՆ ԶԱՐՈՒՀԻ
Ռ. Յ. ՊԷՐՊԷՐԵԱՆԻ
1864—1899

ԳԵՂ ԵՒ ՇԸՆՈՐՀ
ԱՆՁՆ ԻՒՐ ԲՈԼՈՐ
ԶԳՆԱՂ ԻՒՐ ՀՈԳԻՆ
ՍԻՐՈՅ ԲՈՅՆ ՋԵՐՄԻՆ.
ԱՌՆ ԻՒՐ ՊԸՍԱԿ
ԵՒ ՄԱ՛ՅՐ ԱՆՈՒՇԱԿ...
ՎԱ՛Խ, ԱՅԺՄ, ԱՆՄԽԻԹԱՐ
ԾԸՆՐԱԳՐԵՄՔ ՅԱՅՍ ՔԱՐ

Դուրեանի գերեզմանին կարգը կը հանգչին՝ մայրս († 1904), Հայրս († 1906), մօրեղբայրս Դեղարան-Քիմիագէտ Նշան Ղուկասեան († 1918) սորա Հայրը՝ որ էր մեր մօրահայրը՝ յայտնի վիրաբոյժ Ղուկաս աղա († 1869) նաեւ մեծ մայրս, մօրաքոյրերս իրենց պա:պերով ու պապու պապերով:

* *
*

Այս Գերեզմանատունը ունի երեք ջրհոր․ մին փորուած է Ս. Կարապետի թաղին մէջ, իսկ միւս երկուքը Ս. Խաչի մասին մէջ․ այս վերջինները իրենց վրայ ունին Արձանագրութիւն, որուն մէկ հատը կը յիշատակէ Սուրբ Կարապետի ջրհորը՝ որ չկրէր ո՛ր եւ է գիր:

Ս. Խաչին մէկ ջրհորը եւ Ս. Կարապետինը փորել տուած է Կեսարացի Սարգիս խալիֆայ Յովհաննէսեան, այն՝ որ Ղալաթիոյ եւ Եէնիմահալլէի եկեղեցիները շինած է եւ ունէր «արճունի ճարտարապետ»ի տիտղոսը, ինչպէս նշանակած եմ արդէն Ա. հատորիս (232) եւ Բ. հատորիս (438) մէջ, նաեւ Գումկուճուքի մասին գրածիս մէջ: Իսկ երրորդ ջրհորը շինել տուած է՝ Կէօկճեանց Թովմաս:

Սարգիս Խալֆային փորել տուածը 200 տարուան հնութեան կնիքը կը կրէ՝ ունենալով 1728 թուականը, ուրկէ 72 տարիներ յետոյ կը շինուի Կէօկճեանցինը: Ասոնց Ար-

*ձանագրութիւնները մէկ եւ հրատարակած եմ*[135] *արդէն, բայց հոս ալ զանոնք ցոյց տալ կա-րեւոր կը համարիմ :*

1·

Յիշատակ է ջրհորս այս եւ այն որ ի ՆԷնիմահալլէյի թաղի Գերեզմանին է ջրհոր, Կեսարացի Յոհաննէսի որդի բազում եկեղե-ցեաց եւ այլ բարեգործութեանց նպաստ Սար-գիս Խալիֆային եւ իւր արու զաւակացն : Թիւ Փրկչին ՌՁԻԸ :

2·

Պարգեւ ի Տեառնէ՝ է այս ջուր հորիս,
Ի յիշատակ իմ՝ եւ իմ ծընողքիս :
Մարիամ Ղուլեան՝ Կեօկնեանց Թովմայիս,
Որ ի յարեւելս՝ ծընեալ յԱգուլիս :
Շինուած ջըրհորիս՝ եւ սոյնոյ թաղիս,
Եւ հանդէպ սորին՝ ընդ միւս շինուածիս :
Ձերիս շինուածըս՝ յանձնելով զաւկիս,
Առ ի շէն պահել՝ որդւոց ի յորդիս :
Որք ըմպէք զայս ջուր՝ եւ հանգչիք վայրիս
Աղաչեմ ասել՝ ըզմի ողորմիս :
Թիւ Փըրկչին 1800 :

*Առաջինը կը գտնուի՝ Ս · Խաչի չիրմաս-տանի մուտքին անմիջապէս մօտը եւ ձախ կողմը · իսկ երկրորդը՝ դէպի հիւսիսային կողմի եզերքին վրայ :*

*   *
*

[135] Հայ Բժշկական Արձանագրաթանութիւն, *էջ* 52 *եւ* 92 :

Այս Գերեզմանատան ճիշդ մէջ տեղէն բաւական մեծ մաս մը ժամանակին յատկացուցած են Յոյներու, ասոնք սակայն՝ չարաչար կերպով գործածած են այդ նուիրատուութիւնը, ոտնձգութիւններ սկսած են ընել եւ այն աստիճան՝ որ տեղի տուած են սոսկալի կռիւներու, որոնք վերջ գտած են կառավարութեան ամենախիստ միջամտութեամբը: 1862ին էր՝ որ պատահած են այս տխուր դէպքերը[136], եւ պատճառը սա եղած է:

Իսկիւտարէ դէպի Արեւելք երկու ժամ հեռաւորութեամբ գտնուած Ալէմտաղի հայաբնակ գիւղին մէջ Հայ աղջկնակ մը կը մեռնի, մարմինը կ՚իջեցնեն Ս. Խաչ Եկեղեցի, ուր յուղարկաւորութիւնը կատարուելէ յետոյ, կը տանին Գերեզմանատուն եւ կը թաղին ընտանեկան դամբարանը: Յոյները կը կարծեն թէ՝ իրենց բաժնին մէջ թաղուած է այդ ննջեցեալը եւ գիշերով կու գան կը հանեն զայն ու կը թողուն անթաղ, ի՛նչ որ մեծ գայթակղութիւն կը պատճառէ, եւ տեղի կու տայ արիւնահեղ կռիւներու, որոնք կը յիշատակուին դեռ իբրեւ հայկա-յոյն ընդհարումներ:

1862 Թուականէն առջին ալ դարձեալ եղած են նման վէճուկագեր, բայց թեթեւ անցած են: Բարեբախտաբար՝ 1880ին նախագահութեամբ Ս. Կարապետ Եկեղեցւոյ

---

136 «Մասիս», 1862:

*Քարոզիչ Իզմիրլեան Մատթէոս Սրբազանին Հայերէ եւ Յոյներէ կազմուած է յատուկ Յանձնաժողով մը՝ որ ազգային հանգանակութեամբ Գերեզմանատունը ամբողջապէս որմնափակած է, եւ Հայոց եւ Յունաց սեպհական տեղերու սահմանները ճշդած ու որոշած է մասնաւոր աշտարակիկներով:*

*Գերեզմանատան հարաւակողմը անկիւն մ'ալ կը պատկանի Հրեաներու, բայց ասոնք երկար ատենէ ի վեր մեռել չեն թաղեր հոն:*

* *
*

*Այս Գերեզմանատան մէջ 1875ին փոխադրուած է՝ իմ շարադրած մէկ տապանագիրս, որ դաստիարակներէս՝ Կարապետ Արսլանեանի զոքանչին համար էր եւ պատրաստած եմ զայն յատուկ խնդրանքով. պատանեկութեանս առաջին ոտանաւորներէն էր այն եւ է սապէս.*

Է

ՀԱՆԳԻՍՏ
ԲԱՐԵՊԱՇՏՈՒՀԻ ԵՓՐԵՄ ՏԻԿՆՈՋ
ԿՈՂԱԿՑԻՆ ՅԱՐՈՒԹԻՒՆ ԱՂԱՅԻ ՁԻՁԷԿՃԵԱՆ
ՈՐ ԿՈՐՈՅՍ ԶԱՐԵՒ Ի ՀԱՍԱԿԻ 60 ԱՄԱՑ

ՄԱՀՆ Է ՎԱԽՃԱՆ ԷԻՑ ՀԱՄԱՑՆ,
ԱՆԴԱՐՁ ՎՃԻՌ ԱՍՏՈՒԱԾԱԿԱՆ.
ՈՐՈՎ ԵՍ ՀՈՂ ԷԻ՝ ՚Ի Ի ՀՈՂ
ՓՈԽԵԱԼ ԾԱԾԿԻՄ ՄԱՀՈՒԱՆ Ի ՔՈՂ.
ԶԻՍ ՍԳԱՑԻՆ ՈՐԴԻՔՍ Ի ԼԱՑ,
ՄԱՐԴՆ ԱՐԺԱՆԻ Է ԱՐՏԱՍՈՒԱՑ.
ԶԱՅՍ ԿԱՐԴԱՑԷ՛Ք ՎԵՐԱՅ ՇԻՐՄԻՍ,
ԹԷ ՃՇՄԱՐԻՏ ԶԻՔ ԿԵԱՆՔ ՅԱՍՏԻՍ:

Հոն՝ կեանքիս մէջ առաջին անգամ ըլլալով, 1877 Սեպտեմբեր 24ին արտասանած եմ Դամբանական մը, առընթեր գերեզմանին Սարգիս Նազմաճեան դպրոցական ընկերիս, որ Քեռորդին էր մեծանուն Գրիգոր Օտեանի եւ կը խոստանար մեծ ապագայ։

Յարգելու համար յիշատակը այդ վաղամեռիկ Պատանւոյն, պարտք ինձ կը համարիմ զետեղել հոս այդ Դամբանականս, զոր կը կարծեմ թէ դեռ երէկ եմ արտասանած.

«Յուղարկաւորք.

Քանի՜ թախծութեամբ կը մօտչիմ աս հողակոյտիս՝ որ վայրկեան մի առաջ մեր ընկերական բուրաստանէն գեղաբոյր ծաղիկ մը յափշտակեց, ծաղիկ մը դեռ նոր փթթած, հա՛զիւ արշալուսոյ ցօղին մէկ քանի շիթը ծծած. այս ծաղիկն էր՝ Նազմաճեան եւ Օտեան անուանի գերդաստաններուն ձեռատունկը, Սարգիս Պատանին՝ որ իւր եօթնեւտասնամեայ գարնան գեղածիծաղ առաւօտին մէջ, մինչ Հայրենեաց վշտահար ճակտին զարդն եւ իւր ընտանեաց փայլն ըլլալու կը պատրաստուէր, օրհասին սեւ ամպերը ծածկեցին հուպ ընդ հուպ նորա արեւը՝ մարելով ի սպառ այն մեծամեծ յոյսերը՝ զորս իւր վարժապետները կը տածէին եւ ոչնչացնելով այն վսեմ նպատակները՝ զորս վաղամեռիկ Հայրենասէրը կը թաղուցանէր իւր մատաղ ուղեղին մէջ։ Բա՛րէ, ի՞նչ տխուր տպաւորութիւն մը կ՚ազդէ յիս աս սպատուեր գերեզմանը, ի՞նչ խորհրդաւոր յիշատակներ կը զարթուցանէ մտքիս մէջ աս եղերերգակ մանուկներու դասը։...

Սիրեցեալդ իմ Սարգիս, տարի մը յառաջ չէ՞ր, որ այս մանուկներէն շրջապատուած, դէպի աս հանդիպակաց բլուրը կ՚ուղեւորէինք մեր ընկերական խրախճանքին հանդէսն ընելու, այո՛, հերուն ճիշդ այս օրս էր, որ ընկերներդ Զամլըճայի բլեր ստորոտը

ժողվուած, զքեզ մերթ անոր հովանաւոր մայրեններուն ներքեւը կը բազմեցունէին եւ մերթ վճիտ աղբիւրներուն եզերքը կը հանգչեցունէին. այսօր էր՝ որ փոխան գինւոյ բաժակաց, խաղողի ողկոյզներ ի ձեռին, ուխտեցինք մեր եղբայրական խնջոյքը նորոգել ամէն տարի… բայց աւա՜ղ… չէի կարծեր այն ատեն, թէ այն ուխը այսօր ուղխինահոս արցունքով պիտի կատարենք. ուրեմն այն օրուան ժպիտներդ յաւիտենական հրաժեշտի ողջոյննե՞րդ էին զորս կու տայիր ընկերներուդ. ո՜հ, չէի կարծեր ես յայնժամ թէ նոյն պարմանիներու երամը, տարի մը վերջ քու Բնարանիդ շուրջը կը բոլորէր, դառնապէս բողոքելով մահուան գիշատիչ ճիրաններուն դէմ, վա՜հ, չէի կարծէր վերջապէս, թէ նոյն օրը քեզ հետ ուրախութեան երգեր հնչեցունող ձայները, տարի մը յետոյ քու նորաակիրդն արեւիդ վերջալոյսոյն Հանգստեան տխուր տաղերն եղեր երգեն այսօր… Թառամեցան սիրարոյր շրթունքդ եւ ես չկրցայ անոնց վերջին մրմունջը լսել. չորացան քո սիրագիր մատունքը, աւա՜ղ չկրցայ յետին համբոյրս դրոշմել անոնց վրայ. չի կրցայ կ՚ըսեմ, Եղբայր իմ, յետին ողջոյնս քեզ նուիրել, որպէս վաղ ընդ փայթ խափուսիկ ստուերի մը նման… Ե՛րթ ապա… Ե՛րթ, վեհաղնդ մանուկ, ճախր առեալ Թռի՛ր սրաթեւ արծուի նման, պատռէ՛ աշխարանքի հովտիս սեւաման կամարը. սլացի՛ր, աղէ՜, անմահութեան կայանը եւ Արարչին աթոռին առջեւ, հեշտամրմունջ ձայնիւդ սփոփանք խնդրէ՛ վշտահար ծնողքիդ եւ եղբայրներուդ համար, սփոփանք քու բարեկամներուդ եւ ընկերներուդ համար, որոնք արտասուաթոր աչքերով յաւիտենական քունիդ մահիճը կը կնքեն… ես չպիտի մոռնամ զքեզ երբ գարնան զուարթ օրերուն մէջ երգերովդ հնչեցուցած դաշտերը ման առնում… չպիտի մոռնամ երբէք զքեզ, երբ այցելեմ այն լոյսի եւ երջանկութեան տաճարին՝ ուր մեր մանկութեան խնծղալի ժամերը սահեցան…:

Բերէ՛ք արդ, բերէ՛ք, վարդի թերթեր եւ շուշանի փունջեր, ո՛ ընկերներ, բերէ՛ք ու ծաւալեցէք

ձեր Եղբօր շուրջը, եւ երբ մերթ ընդ մերթ ձեր քայլերը ուղղէ՛ք դէպի հոս, ձեր աչքի աղի արցունքը հոսեցնելով այս գերեզմանին վրայ, յիշեցէ՛ք թէ այդ սեւ սեւ հողերուն տակ կը հանգչի սիրտ մը՝ որ սիրոյ համար կը բաբախէր, կը պահուի ձեռք մը, որ ընկերսիրութեան եւ միաբանութեան պատկերը միշտ կը գծէր...։»

Իսկիւտարի ազգային Գերեզմանատունը գրեթէ դասարան մը ըրած էինք մեզի, եւ երբ երեկոյեան արձակուրդի ժամը հնչէր, մենք՝ խմա՛ Յարութիւն Մրմրեան, Մելքոն Կիւրճեան, Միհրան Դուրեան եւ ես, կ'ուղեւորէինք հոն եւ ուշի ուշով կը կարդայինք Տապանագիրներ, որպէս զի Ոտանաւոր գրելու վարժութեան տեղեակ ըլլայինք, եւ այսպէս՝ Պալեանց, Փիշմիշեանց[137], Նորատունկեանց, Դուրդեանց եւ ուրիշներու շիրիմներուն վրայ դրոշմուած գեղեցիկ տողերը, ինչպէս նաեւ Եկեղեցականներու Գերեզմանագիրները կարդալով գոց կ'ընէինք... ո՜հ անմեղութեան եւ քաղցր երազներու օրեր...

Գերեզմանատան ճիշդ հարաւակողմը կը տարածուի Պաղլար-պաշի (Այգեգլուխ) կոչուած լայնարձակ պողոտայն, որ երկուստեք ունէր երբեմն Հայ Երեւելիներու փառաւոր տուները, տեսարան ունենալով Մարմարայի հիասքանչ՝ ծովը Բիւթանական ու Իշխանաց կղզիներով։

Այս պողոտային վրայ կը յիշեմ տղայու-

---

[137] «Ժամանակ», Կ. Պոլսոյ, 8 Մայիս 1933։ Յօդուած Մելքոն-Ասատուրի՝ Փիշմիշեանց Տապանագիրները։

թեանս՝ երկիցս ներկայ եղած ըլլալս ամենահոծ բազմութեան մը, առթիւ յուղարկաւորութեան երկու նշանաւոր Հայերու, մին բժիշկ Բարունակ Պէյ Ֆէրուհխանի 1868ին[138] եւ միւսը բանաստեղծ Պետրոս Դուրեանի 1872ին[139], որոնց մասին գրած եմ արդէն տարիներ առաջ:

Գերեզմանատան հիւսիսակողմն ալ շինուած է դէպի Ջամլըճա բլուրը առաջնորդող երկարաձիգ ճանապարհը Թօբհանէլի-օղլու կոչուած, որուն ճիշդ սկիզբը կը գտնուէր առենօք Յակոբ Վարդովեանի հիմնած Հայկական թատրոնը, ուր նշանաւոր հանդիսացած են Պէնլեան, Նալեան, Մաղաքեան, Սիսակ եւ Ֆասուլեաճեան, Ռշտունի եւ Թրեանց, Ադամեան, Մնակեան, Փափազեան եւ ուրիշ հեղինակաւոր Դերասանները, եւ Տիկին Արուսեակ, Գարագաշեան Քոյրեր, Նուարդ, Սիրանոյշ, Հրաչեայ Դերասանուհիները:

Այս թատրոնը որ ամառները Իւսկիւտար եւ ձմեռներն ալ Կ. Պոլիս ի Կէտիկ Բաշա թաղին մէջ կու տար իր ներկայացումները, խիստ փայլուն ու շքեղ շրջաններ ունեցած է, մինչեւ այն օրը՝ երբ Թուրքերէն լեզուաւ ներկայացումներ տալ սկսաւ Յ. Վարդովեան:

Հայ թատրոնին արեւը ա՛յլ եւս մարեցաւ այդ պահուն, կորաւ ամէն ինչ, Դերասաններ

---

[138] «Հանդէս Ամսօրեայ», 1895, Թիւ Հոկտեմբերի եւ Դեկտեմբերի:
[139] Անդ, 1900, Թիւ Մայիս—Յունիս, էջ 177—178:

ու Դերասանուհիներ հետզհետէ մեռան, ողջ մնացողներն ալ դէս ու դէն ցրուեցան, եւ Յակոբ Վարդովեան, որ իր մասնաւոր վարչութեամբը այնչափ հզօր զարգացուցիչն եղած էր Հայ բեմին, թրքանալով վերջացուց իր կեանքը :

* * *

Այս Թատրոնէն վեր՝ լայն ճանապարհին երկու երկայնքը կանգուն էին Հայ մեծատուններու ապարանները իրենց բեղուն այգիներով, ինչպէս կը տեսնայինք մեր տղայութեանը, Ալաթճեան, Գափամաճեան, Սմբատեան, Միքրօյեան, Զուհաճեան, Փիշմիշեան, Փափազեան, Զօլաքեան, Տահինեան, Քիւրքճիխանլեան շքեղ բնակարանները, որոնց կարգին մեծ հայրս ալ (մօրահայրս) ունէր համեստունակ տուն մը իր այգիով, ուր կ'երթայինք ամառները. բայց ատոնց բոլորն ալ անհետանալով անհետացան հետ ընդ հետ... :

Այս պողոտայէն վեր կէս ճամբուն վրայ շինուած է հասարակաց պարտէզ մը[140], ուրկէ յետոյ կ'ելլուի՝ Չամլըճա կոչուած հիանալի բլրակը, որուն ծոցէն բղխած անուշ ջուրը խիստ համբաւաւոր է եւ որուն Սօսի

[140] 1869ին Ս. Խաչ վարժարանի աշակերտներու խմբովին տարին այս պարտէզին շուրջը, ուր շապիկ հագած կարգաւ կեցանք ու երգերով ողջունեցինք Ֆռանսայի Էօժէնի կայսրուհին որ Սուլթան Աբդիւլ-Ազիզ Թագաւորին հետ կը վերադառնար Ալէմտաղի գիւղէն :

եւ Նոճի ստուար ծառերուն շուքին տակ կը սիրէին երթալ յաճախ Իւսկիւտարի Հայ ժողովուրդը եւ Հայ բանաստեղծները, դիտելու եւ վայելելու Վոսփորի գեղածիծաղ տեսարանը եւ երազելու... չգիտեմ ի՞նչ...

Պետրոս Դուրեանի սիրական վայրն էր Զամլըճան, շա՜տ ու շա՜տ անգամներ կ'երթար հոն հանգչելու՝ իր սիրելի ընկերոջ՝ Լութֆեան Վարդանի հետ, որ իրմէ առաջ վաղամեռիկ եղած է:

Աստ յիշատակին նուիրած է նա իր «Հեծեծմունք» վերնագրով սրտառուչ տաղը, որուն մէջ կը գրէ·

«Ո՜հ, կը յիշե՞ս Զամլըճայի
Սարը նստած լո՜ւռ մըխային,
Ուր շուք տային մեզի նոճիք
Սեւ հովանոց վշտահարի...[141]»:

Իւսկիւտարի Հայ բնակչութեան նախամեծար զբօսավայրն էր այս Զամլըճան որ Մեծ անունով որակուած է, զի անկէ քիչ հեռու դէպի հարաւ կը գտնուի Փոքր Զամլըճայի բլրակը՝ սիրուն եւ գեղատեսիլ, իշխելով Մարմարայի ծովին ու Իշխանաց կղզիներուն: Բաղցրահամ ջուր մ'ալ սա ունի, ասոր մօտերը հին ատենը Հայերն ունին եղեր ընդարձակ այգեստաններ, ինչպէս կը գրէ Երեմիա Չէլէպի ըսելով՝

[141] Տաղք եւ թատերգրութիւնք Պետրոսի Դուրեանի, Կ. Պոլիս, Տպգր. Արամեան, 1872, էջ 47:

Տող 154 եւ 155 ․

«ԵԷՑՆԿի մահպլէս ի վեր՝
յաջ անեալ բազում այգեստան,
Շատէրն Հայոց մինչ մերձ՝
ի սուլթան Մուրատին Զամլուճան» ։

«Սուլթան Մուրատի Զամլուճա» *բառը*, «Փոքր Զամլըճան» *է, ուր դեռ քանի մը տարի առաջ գոյութիւն ունէին Հայերու սեպհական սքանչելի այգիները, ինչպէս նաեւ Քէօշէեան Յակոբի խիստ ընդարձակ պարտէզն ու այգին, այժմ բոլորովին փճացած եւ օտարի ձեռքն անցած* ։

*Իւսկիտարէն դէպի Արեւելք ընթանալով, երկու ժամ հեռաւորութեամբ, գեղեցիկ ու խորհրդաւոր մեծ անտառի մը գիրկին մէջ կը գտնուի, կամ լաւ եւս է ըսել՝ կը գտնուէր՝* «Ալէմտաղի»[142] *կոչուած դուստ հայաբնակ գիւղակը, որ ունէր* «Ս․ Նշան» *անունով քարուկիր սիրունակ եկեղեցի մը՝ շինուած Աղաւնի Ստեփան Պատրիարքի օրով, ինչպէս կը յայտնէ՝ դրանը վերեւ փորագրուած վերտառութիւնը, զոր անձամբ քաղած եմ 1894ին եւ է ․*

ՆՈՐՈԳԵՑԱՒ Ի ՀԻՄԱՆՑ ՀՐԱՇԱԳՈՐԾ ԵԿԵՂԵՑԻՍ ՍՈՒՐԲ ՆՇԱՆԻ ԱՐԴԵԱՄԲՔ ԱԶԳԻՍ ՀԱՅՈՑ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ ՏԵԱՌՆ ՍՏԵՓԱՆՆՈՍԻ ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ 1835 ՅՈՒՆԻՍ 15[143]։

142 *Զոր Խ․ Պ․ Միտաքեան,* «Աշխարհալեառն»*է թարգմանած իւր մէկ Ռոտանաւորին մէջ*։
143 «Պատմ․ Ա․ Պէրպէրեանի», *էջ* 488։

*Որչափ որ 1835 Թուականը կը կրէ «Սուրբ Նշան» բայց աւելի հին է անոր գոյութիւնը, զոր ուսած եմ Եկեղեցւոյն Թաղական Խորհրդարանին մէջ կախուած Աստուածամօր պատկերէ մը, այժմ զո՛ւցէ կորսուած, որուն վրայ գրուած էր՝ վեց տող, Թէ՝*

ՅԻՇԱՏԱԿ Է ԱՅՍ
ՊԱԼԸԽՃԻ ՕՂԼՈՒ ՄԻՆԱՍԻՆ
ԵՒ ԸՆԿԵՐՈՋԸՆ ԷԼԻՋԻՆ
Ի ԴՈՒՌՆ ԱԼԷՄՏԱՂՈՒ
ՍՈՒՐԲ ՆՇԱՆԻՆ
ԹՈՒԻՆ ՌՄԼԹ (1239 + 551 = 1790)։

*Բացի այս հին պատկերէն, կայ եւ արծաթ սկիհ մը որ Ալէմտաղէն Թուեր դացեր է Սոֆիայի Եկեղեցին, եւ որ ունի հետեւեալ Արձանագրութիւնը·*

«Ցիշատակ է սկիհս այս Փիշմիշեան հանգուցեալ Կարապետ ամիրայի դուստր, Նազլը խաթունին եւ որդւոյն Սիմէոն աղայի, ի դուռն Ս. Նշան եկեղեցւոյն որ ի Ալէմտաղի, թուին ՌՄԿԱ (= 1261 + 551) = 1812[144]»։

*Կը պատմուէր Թէ այս գիւղի Հայերը ի սկզբան յանցապարտներ են եղած եւ դէպի 18րդ դարու սկիզբը այն տեղ աքսորուած, որոնք ի պատիժ եւ* «ի ճաւութիւն մեղաց իւրեանց», *ամէն տարի պարտաւոր էին Իւսկիւտարի Թուրք* Իմարէթին (*աղքատանոց*) *համար անտառէն փայտ հայթայթել չգիտեմ որքան, եւ իրենք ալ ապրիլ փայտ ծախելով·*

---

144 «Նոր-Լուր», *Կ. Պոլիս*, 11 *Ապրիլ* 1935։

քառ սյամ՝ Ալեմտաղցի Հայերը ուրիշ ար-
հեստի ընաւ հետամուտ եղած չեն եւ բաւա-
կանացած են փայտ կտրելով ապրիլ…:

Սակայն ամէն տարի Մայիսին՝ Կ. Պոլսոյ զանազան թաղերէն հոծ բազմութիւն մը Հայերու՝ կը դիմէր հոն օդափոխութեան, եւ գիւղը կը կենդանացնէր, անոր սքանչելի ջուրերովն ու անտառային մաքուր զովութեամբը կ՚ազդուրուելու, եւ ի՜նչ առողջարար տեղ մ՚էր Ալեմտաղին, զոր սիրած է անմահն Մկրտիչ Պէշիքթաշլեան եւ գրած է՝ «Առ զեփիւռն Ալէմտաղի» հիասքանչ Երգը զոր կ՚երգէինք՝

«Դու փափկաթեւ մանկիկ զեփիւռ
Աղբերց վրայէն լուսակարկաջ,
Անուշ հոտով ծաղկանց բափիւռ
Ի՞նչպէս թըռչիս ինձ ընդ առաջ,
Ու խունկ եւ զով ընծայելով
Զիս ողջունես հեզիկ շնչով…»:

Նաեւ՝

«Յալէմտաղըն այն գեղեցիկ
Գացի ժուռ գալ անհոգ մոլար,
Ուր բիւր վըտակ բիւրեղ ծոցիկ[145]
Մատուցանին տընկոց դալար…»:

Մենք ալ կը սիրէինք ընտանեօք երթալ հոն յաճախ եւ անտառին խորհրդաւոր լռութեանը մէջ, ծառերու ստուերին տակ, ա-

[145] Մատենագրութիւնք Մկրտիչ Պէշիկթաշլեանի, Տիպ Փարիզու, էջ 63:

նոնց տերեւներուն հեղիկ շրշիւններովը օրօրուիլ, յափրանալ, ու հեռանալ պահ մը աշխարհի տաղտուկներէն... այլ աւա՜ղ, որ այս Հայկական գիւղը բնաջինջ կորաւ, եւ Ս. Նշան Եկեղեցին եղաւ Թուրք զինուորներու պէտքերուն ամբարանոց:

Ս. Խաչի Թաղականութիւնը կը մատակարարէր այս գիւղը: Ս. Նշան ունեցած է համանուն նախակրթարան մը. երկու ալ Քահանայ՝ Տէր Գրիգոր Կարապետեան[146] եւ Տէր Միքայէլ Սերաստացի, որ հոն վախճանած ու թաղուած է, մինչ Տէր Գրիգոր կը հանգչի Իսկիւտարի Գերեզմանատունը:

Ալէմտաղի գիւղը Երուսաղէմի վանքին Միարան մը տուած է, անունն էր՝ Գէորգ Վարդապետ Ալէմտաղցի[147], որ 1802ին Աւետի Ժամագիրք մը (տպուած ի Կ. Պոլիս 1786ին) կը նուիրէ Ռէմլէի Ս. Գէորգ Եկեղեցւոյն, ինչպէս կը գրէ Մկրտիչ Եպ. Աղաւնունի:

* * *

[146] Այս Քահանայն 1859ին աւազակներէ յարձակում կրած է գիշերով, եւ անոնց դիմադրելով՝ ստացած է իր փորին վրայ դանակի ուժգին հարուած մը, որ աղիքները դուրս թափած է: Գիւղացիները վազած են Իսկիւտար եւ տարած են Մեծ Հայրս՝ վիրաբոյժ Ղուկաս աղա Ղուկասեանը, որ քահանային աղիքները ներս դրած ու վերմակի ասեղով փորը կարած ու բժշկած է: Տէր Գրիգոր գրեթէ ութսունամեայ վախճանած է, եւ շատ անգամ պատմած է ինձ Մեծ Հօրս այս ճարտարութիւնը:

[147] Միաբանք եւ Այցելուք Հայ Երուսաղէմի, էջ 66:

*Ալէմտաղին ժամ մը հեռու կը գտնուի* Խաչ Յունաց *անուն բարձր լեռ մը որուն գագաթին վրայ յունական հին վանքի մը աւերակները կան․ մեծ ուխտատեղի մ'էր․ զաւակ բնաւ չունեցողները քարեր գրկելով կը տանէին հոն ու կը նետէին աւերակին մէջ՝ զաւակի տէր ըլլալու յոյսով։ Խաչ-Յունաց բարձրաբերձ հիանալի գագաթ մ'է, ուրկէ Սեւ ու Մարմարա ծովերը եւ զիրենք միացնող Վոսփորեան նեղուցը համանգամայն կը պատկերի։*

*Սուլթան Ազիզ Թագաւորն ալ շատ սիրած էր այս գիւղը որուն անտառի մուտքին մօտ, ընդարձակ պարտէզով պալատ մը շինել տուած էր ճարտարապետ Պալեան Սարգիսին*[148]*․ տարին մէկ երկու անգամ կ'երթար հոն, քանի մը օր կը մնար, եւ առատ պարգեւներ կը յղէր գիւղացի Հայերուն։* 1869*ին տարած է հոն Եօժէնի Կայսրուհին, ինչպէս ըսած եմ արդէն։*

*Բայց թողունք Ալէմտաղին դառնանք*

---

148 *Այս պալատը շինուելէն յետոյ երբ Սուլթան Ազիզ Մայիս ամսի մէջ հոն կ'երթայ, կը հարցունէ իրեն թէ՝* «սիրե՞ց արդեօք Ալէմտաղին», «այո՛» *կը պատասխանէ Սուլթանը,* «շա՛տ սիրեցի բայց աւելի պիտի սիրէի, եթէ ճամբուն երկայնքը ծառեր ըլլային» *կ'ըսէ․ Սուլթանին այս խօսքին վրայ Գիւղացի Հայերը անմիջապէս անտառէն խոշոր խոշոր ճիւղեր կը կտրեն ու ճամբուն երկու կողմերը կը տնկեն առժամեայ կերպով, եւ երբ Սուլթան Ազիզ երեք չորս օր յետոյ գիւղէն կը վերադառնայ, զարմանալով կը տեսնայ թէ դալար ծառեր կը հովանաւորէին իր ճանապարհը, ուրախ կ'ըլլայ ու գիւղացի Հայերուն դրամական պարգեւներ կը յղէ։*

Իւսկիւտար, նորէն գնանք Ենիմահալլէ եւ Ս. Կարապետի առջեւէն չարունակենք մեր ուղեւորութիւնը դէպի Գատըգիւղ, ինչպէս կը պահանջէ Երեմիա Զէլէպիի Տեղագրութիւնը:

Ս. Կարապետ Եկեղեցւոյն առջեւէն դէպի հարաւ յառաջանալով կը հասնինք Քաղկեդոնի ծովեզերեայ գիւղը, բայց նախ անցնելու է Գառաճա-Ահմէտ[149], Սելիմիէ ու Հայտար-բաշա կոչուած զուտ Թրքաբնակ թաղերէն:

Երեմիա Զէլէպի իր Հիւր Վարդապետը պտտցնելով ցոյց կու տայ անոր՝ Իւսկիւտարի ծովահայեաց գեղեցիկ տեղերը եւ զայն կ՚առաջնորդէ նախ Հայտար-բաշա, որուն համար կը գրէ.

Տող 183 եւ 184.

«Այլ յառաջ եւս արքունի՝
կոչեցեալն հայտար փաշան[150],
Ասեն Կոստանդեայ պալատ՝
Ուր սուրբ հարքն ժողովեցան»:

---

[149] Գառաճա-Ահմէտ տեղին անունը նշանակած պահուս, միտքս կու գայ, որ տուն մը այդ զուտ Թրքաբնակ թաղին մէջ, Թուրքի մը տունը փոխադրեց՝ «Մանզումէի էֆքեար» հայատառ Թրքերէն թերթին խմբագիր Կարապետ Փանոսեան, իր հաստատած համանուն գիշերօթիկ մանչերու վարժարանը, որ երկար կեանք չունեցաւ, ինչպէս եւ իր «Ագապեան» աղջիկներու գիշերօթիկ Դպրոցը, զոր 1869 Յունուարին բացաւ Սամաթիա թաղին մէջ, բաւական մեծ աղմուկ յարուցանելով Ազգին մէջ:

[150] Հայտար-բաշայի երկաթուղւոյ կայարանէն էր, որ 1915 Ապրիլ 11/24ի գիշերը՝ 250 Հայ մտաւորականները առաջնորդուեցան դէպի աքսոր եւ դէպի սպանդ:

Ինչպէս կը տեսնենք, Երեմիա Հայտար-բաշա վայրը նշանակած պահուն. «կ'ըսուի թէ»՝ կը գրէ. «Կոստանդիանոսի Պալատը այս տեղ էր, եւ թէ հոն սուրբ Հայրերը ժողով գումարեցին»։ Այս մասին Սարգիս Դպիր Սարաֆ-Յովհաննէսեան ալ իր Պոլսական Պտոյտին մէջ կը գրէ հետեւեալը.

«Եւ այլ յառաջ երթեալ՝ գոյ արքունի տեղի մի հարթագետին, որ կոչի Հայտար-բաշա, յանուն միոյն ի վեզիրացն Սուլթան Սիւլէյմանին առաջնոյ։

«Ասեն թէ՝ անդ էր ի հնումն Պալատ մի՝ Մեծին Կոստանդիանոսի»։

Թէ՛ Երեմիայի եւ թէ՛ Սարգիսի գրածները երկրայական են, զի որոշապէս չեն յայտներ, թէ Հայտար-բաշայի ո՞ր կողմն էր Կոստանդիանոսի Պալատը։ Իսկ Երեմիայի 184րդ տողին մէջ յիշատակուած ժողովը, Նիկիոյ ժողովն է որ Կոստանդիանոս կայսեր հրամանաւ գումարուած է 325 թուին եւ որուն մասնակցած է մեր Արիստակէս Հայրապետը եւ «Հանգանակը» տարած է Հայաստան[151]։

* * *

Երեմիա վերոյգրեալ տողերուն յաջորդաբար կը յաւելու հետեւեալները ըսելով.

---

151 Պատմութիւն Հայաստանեայց Սուրբ Եկեղեցւոյ, Մ. Վրդպ.ի Մուրատեանց, Երուսաղէմ 1872, էջ 61։

Տող 186·

«Այլ յառաջ Գատի քէօյն է,
Ուր տանիկք եւ յոյնք բնական
Սորա սաի Հալգետոն՝
Պղնձի քաղաք է թարգմանն·
Չորրորդ ժողովն աստ եղեւ՝
Այազմայք ընդ նմին քիլիսան» ։

*Հայատար–բաշայէն Գատըգիւղ կ'իջնայ Երեմիա Չէլէպի, բայց Հայերու խօսք չ'ըներ հոս, եւ կը բացատրանայ յիշատակելով* Քաղկեդոնի *նշանաւոր* ժողովը (*Չորրորդը*), *որ տեղի ունեցած է* 451 *թուին* ։

* * *

*Սարգիս Դպիր Սարաֆ–Յովհաննէսեան իւր Պոլսական* Տեղագրութեան *մէջ Գատըգիւղի մասին գրած ժամանակ կը յիշատակէ հոն Հայեր ու Հայ Եկեղեցի՝ ըսելով*·

«Եւ զկնի սորա՝ է Գիւղն այն՝ որ կոչի Գատըքէօյի, ուր բնակին տանիկք եւ յոյնք, եւ սակաւիկ Հայք ։ Եւ է անուն եկեղւոյս յունաց խպզիտոն, եւ բատ Հայոց Քաղկէդոն ։ Եւ ի մէջ թաղին փոքր Եկեղեցի մի Հայոց, հնացեալ յոյժ եւ խարխուլ յանուն Սուրբ Աստուածածնին» ։

*Որոշապէս յայտնի չէ թէ ե՞րբ հաստատուած են այս տեղ Հայեր ու ե՞րբ ունեցած իրենց Եկեղեցին* ։

Առանց հեռանալու բիւզանդական կայսրութեան օրերէն, ո՛ր ատեն Քաղկեդոն ունէր հայ բնակչութիւն՝ հարկաւ փոքրաթիւ, ինչպէս ցոյց կու տայ Պատմութիւնը, ես կ՚ընդունիմ թէ Երեմիա Չէլէպիի Ստամպօլոյ Պատմութիւնը աւարտած տարին՝ այսինքն 1684ին, Գատըգիւղի մէջ չկար դեռ Հայութիւն կամ Հայ Եկեղեցի եւ այս պատճառաւ՝ կ՚ենթադրեմ թէ ԺԸ. դարու սկիզբներն էր՝ որ Հայ գաղութ մը հոն գոյութիւն ունեցած է. եւ իմ այս ենթադրութիւնս կը հետեւցնեմ նախ՝ Գիւղին Հին Ազգային Գերեզմանատունին դրանը վերեւը փորագրուած թուականէն, որ է «1740». յետոյ Սարգիս Դպիրի այն տողերէն, որով կ՚իմացնէ թէ՝ «Եկեղեցին հնացեալ յոյժ էր եւ խարխուլ», ուստի՝ առանց վերապահութեան կրնանք ընդունիլ, որ դո՛նէ 1700ին եթէ ոչ առաջ կային հոն Հայեր, որոնք շինած էին հարկաւ իրենց համար փոքրիկ աղօթատեղի մը, անշո՛ւշտ փայտաշէն, որ Սարգիս Դպիրին աշխատասիրութեան ատենը՝ այսինքն 1800ին արդէն փլչելու մօտ վիճակի էր հասած:

Այս խարխուլ Եկեղեցին հիմէն կը շինուի՝ շնորհիւ Նորատունկեան Տեար Գաբրիէլի պապին՝ Յարութիւն ամիրայի Նորատունկեան, ինչպէս կ՚իմանանք անոր չա՛տ գեղեցիկ կերպով գրուած Տապանագրէն որ կը գտնուի Գատըգիւղի Հին Գերեզմանատունը, եւ է հետեւեալը.

ՆՈՐԱՏՈՒՆԿԵԱՆ ՅԱՐՈՒԹԻՒՆ ԱՄԻՐԱՅ
ՆԻԶԱՄ ՈՒՍՏԱՍԻ

ԸՆԴ ԱՍՊԱՐԷԶ ԸՆՉԵՂ ԿԵՆԱՑ ՋԻԳ Ի ՃԵՄ
ՄԵՐԹ Ի ԺՊԻՏ՝ ԲԱՂԴ, ՄԵՐԹ Ի ՆԵՆԳ ԲԱԶՄԱԴԷՄ
ՊՍԱԿԱՀԱՄԲԱՐ ԿԱՏԱՐԵԼՈՎ ԶԸՆԹԱՑՍ ԻՄ
ԼԻԱԲԱՂԴԻԿ Ի ՀՈՂ ՇԻՐՄԻՍ ԱՄՓՈՓԻՄ:
ՀԱՅՐ ԲԱԶՄԱԾՆՈՒՆԴ ԵՒ ԽԻՏ ԹՈՌԱՆՑ ՆԱԽԱՀԱՒ
ԶԵՂԵԱԼ Ի ՍԻՐՏ ԱՍՏՈՒԱԾԱՅՆՈՑ ՃԱՇԱԿԱՒ.
ԱՍՏ ՔԱՂԿԷՏՈՆ ՎԵՐԱՆՈՐՈԳ Ի ՀԻՄԱՆՑ
ՏԱՃԱՐ ՑԻՄ ՁԵՌՆ ԵՏԵՍ ԿԱՆԳՆԵԱԼ ՎԵՀԱՊԱՆԾ
ՈՒ ԱՆԴ ՄԵՆԱՍՏԱՆ ՍԵԲԱՍՏԻԱՅ ՀԱՅԱՊԷՍ
ՆՊԱՍՏԵԱԼ ՑԻՆԷՆ Ի ՆՈՐ ՇԻՆԻՑ Ի ՀԱՆԴԷՍ,
ԸԶՔԵԶ ՀՈԳԻՍ, ԱՌ ՔԵԶ ԿԱՆԽԵԱԼ ՕՐՀՆԷ, ՏԷՐ,
ՔԵԶ ԻՄ ԱՍՏԷՆ ԿՄԱԽՔ ՄՆԱՆ ԱՆՀԱՄԲԵՐ,
ՈՐ ԶԵՐԾՈՒՑԵՐ ԶԻՍ ՅԱՂԷՏԻՑ ԱՇԽԱՐՀԻ
ԸՆԴ ՍԳՈՒՇԱՒՈՐ ՇԱՒԻՂ ՅԱԼԻՍ ԱՄԵՀԻ
ՏԷ՛Ր, ՄԻՆՉ Ի ԴԱՏ ՏԻԵԶԵՐԱՑ ՓԱՌՕՔ ԳԱՍ
ԸՍՏ ԱՐԺԱՆԻՍ ՏԱԼ ԶՎԱՐՁ ԵՒ ԿԱՄ ԶՊԱՏՈՒՀԱՍ
ՄԻ՛ ԶԻՍ ՅԱԶԵԱՑԴ Ի ԳՈՒՄԱՐԷՆ ՄԵՐԺԷՐ՝ ՏԷ՛Ր,
ԸՆԴ ՔԱՒԵԼՈՑԴ ԸՆԿԱ՛Լ ԵՒ ԶԻՍ ՄԱՐԴԱՍԷՐ
ՄԵՌԵԱԼ ԵՕԹԱՆԱՍՈՒՆ ԵՒ ԵՐԵՔ ԱՄԱՑ
1843 ՅՈՒՆՈՒԱՐ 5

1814 *Յուլիս 4ին է*[152] *որ տեղի կ'ունենայ Գասըրգիւղի Եկեղեցւոյն այս շինութիւնը* «ի հիմանց», *սակայն պահելով* Սուրբ Աստուածածին *անունը, զոր կը փոխեն ապա եւ կ'ընեն* «Սուրբ Թագաւոր» *որով ճանչցուած է ցարդ:*

*Բայց կ'երեւի թէ այս երկրորդ շինութիւնն ալ երթալով կը հիննայ, որովհետեւ* 1858*ին քարուկիր ու գեղեցիկ կը վերաշինուի*

---

152 Պատմութիւն Ակնայ Պէրպէրեանի, *էջ* 78 *եւ* 451:

*այն, ինչպէս կը յայտնէ Եկեղեցւոյն ճակատը դրոշմուած Արձանագրութիւնը՝ որ է․*

ՈՂՈՐՄՈՒԹԵԱՄԲՆ ԱՍՏՈՒԾՈՅ
Ի ՀԻՄԱՆԷ ԿԱՌՈՒՑԱՒ ՍՈՒՐԲ ԹԱԳԱՒՈՐԻ
ՏԱՃԱՐՍ ԱՐԴԵԱՄԲՔ ՄԵԾԱՊԱՏԻՒ
ՄԱՀՏԵՍԻ ԿԱՐԱՊԵՏ ԱՂԱՅԻ ՄՈՒՐԱՏԵԱՆ
ԿԱՐՆԵՑԻՈՅ Ի ՅԱՒԷՐԺԱԿԱՆ ՅԻՇԱՏԱԿ
ԱԶՆՈՒԱԿԱՆ ԻՒՐՈՑ ԱԶԳԱՏՈՀՄԻՆ։
Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ Տ․ Տ․ ՄԱՏԹԷՈՍԻ
ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ
ԵՒ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ Կ․ ՊՕԼՍՈՅ
ՏԵԱՌՆ ՅԱԿՈԲԱՅ ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ
ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1858 ՍԵՊՏ․ 30

*Սուրբ Թագաւոր Եկեղեցւոյ այս վերաշինութիւնը կատարող* Կարապետ Մուրատեանն *մեռած է* 1862*ին եւ թաղուած Եկեղեցւոյ բակին ձախ կողմը, ունենալով փառաւոր Մահարձան մը, որուն վրայ կը կարդացուի՝*

ԱՍՏ ՀԱՆԳՉԻ
ՄԱՀՏԵՍԻ ԿԱՐԱՊԵՏ ՄՈՒՐԱՏԵԱՆ
ՎԱԽՃԱՆԵԱԼ 1862

*պարզունակ տողերը․ իսկ սորա հանդիպակաց կողմը, այսինքն Եկեղեցւոյն հարաւակողմը թաղուած է Հիմնադրին կինը, որ ունի իր շիրիմը հետեւեալ Արձանագրութեամբ․*

ԱՍՏ ՀԱՆԳՉԻ
ՄԱՀՏԵՍԻ ԽԱԹՈՒՆ ՄՈՒՐԱՏԵԱՆ
ՎԱԽՃԱՆԵԱԼ 1870

Փոքրիկ՝ բայց սիրուն է «Ս. Թագաւոր» իր հրաշակերտ ճարտարապետութեամբը, եւ համբաւուած է իբրեւ հրաշագործ, ուր ամէն շաբաթ օր ուխտի կ՚երթան Կ. Պոլսոյ այլեւայլ թաղերէն:

Ունեցած է ընտիր քարոզիչներ՝ ինչպէս Գարեգին վարդապետ Սրուանձտեանց (յետոյ Եպիսկոպոս), Եղիշէ վարդապետ Այվազեան (Տրապիզոնի Առաջնորդ), Մելքիսեդէկ Արքեպիսկոպոս Մուրատեան (կաթողիկոս ընտրուած, եւ երկու անգամ Առաջնորդ եղած Զմիւռնիոյ եւ հոն վախճանած), Եղիշէ Արքեպիսկոպոս Դուրեան (Պատրիարք Երուսաղէմի), Գնել Եպ. Գալէմքեարեան եւ ուրիշներ, որոնց ցանկը երկար է գրել. բայց չմոռնանք յիշել՝ թէ հին ատենները այ աքսորավայր եղած է դահրնկէց մէկ երկու պատրիարքներու: Գրիգոր Խամսեցին՝ երբ 1802 Հոկտեմբեր 11ին[153] վար կ՚առնուէր, խոկոյն կ՚աքսորուէր Գատըգիւղ, հոնկէ ալ Էջմիածին՝ ուր կը վախճանի 1812ին[154]: Գատըգիւղ աքսորուած է նաեւ 1815ին՝ Աբրահամ Պատրիարք Գօլեան[155], երբ նոր աւարտած էր Եկեղեցւոյ երկրորդ շինութիւնը:

Զգիտենք թէ նախնի ատենները Ս. Աստուածածին կամ Ս. Թագաւոր քանի՞ քահանայ կը պահէր, բայց կը յիշեմ մեր տղայու-

---

153 Պատմ. Աւետիս Պէրպէրեան, էջ 49:

154 Դիւան Հայոց Պատմութեան, Գիւտ Քահանայ Աղանեանի, Գիրք Ժ., էջ 465:

155 Պէրպէրեան, անդ, էջ 80:

թեանը, թէ մէկ հատ միայն կը պաշտօնավարէր՝ Տէր Յարութիւն անուն փառահեղ եկեղեցական մը՝ որ ամենայն ինչ էր հոն: Ասոր փախճանելէն յետոյ պաշտօնավարած են ուրիշներ, որոնցմէ նշանակելի են՝ Տէր Յովհաննէս Աւագ Քահանայ Հիւնքեարպէյէնտեան՝ քաջահմուտ լեզուագէտը, երբեմնի Հովիւը Բարիզի Հայոց. եւ Տէր Վռամշապուհ Քիպարեան՝ իբրեւ Ղարիպ տէրտէր, բայց ապա՝ Եպիսկոպոս եւ Բարիզի ու Պէլճիքայի Հայ գաղութին Հոգեւոր հովիւ, որ համբաւաւոր Աղեքսանդր Մանթաշեանի մօտ պատճառ եղած է Բարիզի Ս. Յովհաննէս գեղեցիկ Եկեղեցւոյն հիմնարկութեանը:

Ս. Թադէոսի վերջին շինութեանը հետ՝ անոր բակին աջ կողմն ալ կը կառուցուի երկսեռ Նախակրթարան–Դպրոց մը «Համազասպեան—Մուրատեան» անուն, որ շատ չանցած անբաւական կը համարուի. վասն զի Գատըգիւղի Հայ բնակչութեան թիւը բազմանալով կը բազմանար, Հայ երկսեռ մանուկներու թիւը զգալապէս կ'աճէր, ուստի 1873ին թաղային իշխանութիւնը ժողովուրդին հետ համախորհուրդ հարկ կը տեսնէ, Եկեղեցիէն հեռու մեծկակ հող մը գնել ու կանգնել երկսեռ նոր վարժարան մը ընդարձակ, որ կը կոչուի՝ «Արամեան»: Սակայն տարիներ վերջը Մաթոս եւ Արիկ Ոսնճեան յայտնի բարերար հարազատները, այս Դպրոցին տեղը կը հիմնեն ուրիշ շէնք մ'ալ՝ իբրեւ

Մանկապարտէզ, որով Դպրոցին անունը այն ատենէն ի վեր կը փոխուի «Արամեան–Ունեան»ի ։

* * *

Փայլուն ժամանակներ ունեցած է այս վարժարանը, շնորհիւ կարող եւ ազգասէր անձերէ բաղկացած Թաղական խորհուրդի մը՝ որուն երկար ժամանակ ատենապետած է՝ կնոջս Հայրը, Կարապետ Գափամաճեան, ծնած Կելլիկըլու ։

Այս Դպրոցին մէջ դասախօսած են՝ Պօլէտ Խաչատուր Միսաքեան, բանաստեղծ Յովհաննէս Սեթեան, Միհրան Ասքանազ, որոնց հետ անօրէն ու միանգամայն դասատու եղած են՝ չափազէտ Գրիգոր Զաքարեան, Տոքթ. Ն. Տաղաւարեան, Մինաս Ծալեան, մանաւանդ մեծանունն Ռէթէոս Պէրպէրեան, որ 1876ին վարժարանին Հոգաբարձութեան Ատենապետ՝ Տեար Գաբրիէլ Նորատունկեանի հետ անհամաձայնութիւններ մ՚ունենալուն առաջաւ, կը հրաժարի ու կ՚երթայ անմիջապէս գիւղին մէջ կը բանայ՝ մանչերու յատուկ իր անուանակիր առանձին վարժարանը, զոր 1879ին վերջնապէս փոխադրեց Իւսկիւտար–Սելամիէ՝ Ս. Խաչի եռեւը, ինչպէս պատմած եմ արդէն ։

Գատըգիւղ կամ Քաղկեդոն՝ համակ ծովապատ տափ–տափարակ տեղ մ՚է, բայց Կ. Պոլսոյ ամենահարուստ հայ Թաղն էր եւ ընչեղ ու ծանօթ ընտանիքներու բնակավայրը ․

հոն՝ երեւելի յոյն հասարակութեան հետ կողք կողքի կ'ապրէին՝ Կիւլպէնկեան, Մանուկեան, Ֆընտըքլեան, Ունճեան, Կ. Գափամաճեան, Հարենց Աղասեան, Գոնչէկիւլ եւ ուրիշներ, որոնք ունէին իրենց չքեղ ապարանները ու առատ նուէրներով կ'օժանդակէին, թէ՛ եկեղեցւոյն ու դպրոցին, եւ թէ՛ ազգային ամենակերպ բարեգործական Հաստատութիւններու:

Մասնաւոր վարժարաններ ալ պակաս չէին եղած հոն, ինչպէս՝ Խաչեան Մանկապարտէզը, Սպանդարեան վարժարանը եւ Թորոսեան Դպրոցը, որոնք կարճատեւ կեանք ունեցած են, թէեւ արդիւնաւոր:

* * *

1869ին Վենետիկի Մխիթարեան Միաբանութիւնը հաստատած է հոն, Մօտայի ծոցին վրայ իշխող, ու Ֆէնէր-Պահչէսին, Մարմարայի ծովը եւ Իշխանաց կղզիները դիտող՝ ամենագեղեցիկ վարժարան մը՝ բարձրագոյն եւ գիշերօթիկ, որուն առաջին տեսուչն եղած է Հ. Վարդան Վ. Ծիշմանեան՝ ինչպէս գրած է ինձ ժամանակին Վենետիկէն Գեր. Հ. Յովհ. Թորոսեան, Ս. Ղազարի Աթոռակալ բազմահմուտ վարդապետը, եւ տարիներու ընթացքին ալ՝ սոյն վարժարանը վարած են հետզհետէ՝ Հ. Աբրահամ Վ. Ճարեան, Հ. Արիստակէս Վ. Գասգանթիլ, Հ. Մեսրոպ Վ. Սահակեան, Հ. Աթանաս եւ Հ. Յակոբ Տիրոյեան եւ Հ. Յովհաննէս Վ. Թորոսեան եւ

ուրիշներ, ընծայելով Ազգին ուսեալ ու կիրթ բազմաթիւ զաւակներ: Սակայն՝ աւա՜ղ, որ այս վարժարանին փառաւոր շէնքը, զոր Մխիթարեանութիւնը աւելի ընդարձակելու միտք ունէր, այրեցաւ 1915ին ու կը մնայ ցարդ այրացաւեր:

Բացի Մխիթարեաններէն, Ֆրանսացի մայրապետներու Միաբանութիւնն ալ Մօտայի մէջ հաստատած էր աղջիկներու յատուկ ընտիր վարժարան մը, ուր բաւական թուով հայ աղջիկներ կը դաստիարակուէին երբեմն:

Գիւղը ունէր եւ ունի՝ կոկիկ թատրոն մը, ուր երբեմն երբեմն հայերէն լեզուով ներկայացումներ տեղի կ՚ունենային, եւ որու բեմին վրայ բազմիցս ծափեր խլած են՝ մեծարուեստ Ադամեան, Մնակեան, Ֆասուլեաճեան, Սիրանոյշ եւ այլ յայտնի դերասաններ ու դերասանուհիներ:

* * *

Գատըգիւղի մէջ Հայ-Կաթոլիկ ազգայինները ալ ունին իրենց յատուկ Եկեղեցին՝ հաստատուած 1890էն նախ՝ իբրեւ մատուռ, որ փայտաշէն ըլլալուն՝ վար կ՚առնուի 1909ին եւ տեղը կը կառուցուի արդի քարուկիր սիրունակ Եկեղեցին, կոչուելով «Ս. Լեւոն» ի պատիւ Լեւոն ԺԳ. Պապին, որովհետեւ սա բարի եղած էր ծախքերուն կարեւոր մէկ մասը անձամբ հոգալու:

Այս Եկեղեցին կը գտնուի Բէքմէզ-Թառլասի կոչուած թաղամասին մէջ. քովը ունի Երիցատուն եւ Դպրոցիկ մը, բայց 1900ին Անարատ Յղութեան անձնուէր Քոյրերը կը հիմնեն Ս. Լեւոնէն բաւական հեռու տեղ մը, յատուկ վարժարան, որ կը շարունակէ ցարդ կրթել Հայ աղջիկներ:

Եւ այսպէս ահա, Գատըգիւղ եղած է տակաւ առ տակաւ, հայաբնակ բաւական կարեւոր քաղաքիկ մը՝ կրթասէր եւ ուսումնասէր, որ կը տարածուէր մինչեւ Ֆէնէր-Պահչէ եւ Հայտար-բաշայի մօտ՝ Եէլ-տէյիրմէնի (հողմաղացք) կոչուած բլրակը, ուր նաեւ գոյութիւն ունեցած է հոծ հայ բնակչութիւն իր մանկապարտէզներով եւ դպրոցով:

Գատըգիւղի այս շքեղ ու վառ կենդանութիւնը մարած է այժմ դժբախտաբար... Հայ բնակչութիւնը մեծապէս նուազած ու նուաղած է հոն, բայց Արամեան-Ունճեան Դպրոցը կանգուն է եւ եկեղեցին կը պահէ դեռ, թէեւ անփառունակ կերպով, իր վաղեմի ուխտատեղիութեան համբաւը:

Հաստատուած են հոն զանազան բարենպատակ ընկերութիւններ վաղամեռիկ, որոնցմէ կ՚ապրի միայն «Աղքատախնամը» զարմանելով Հայ եւ ամենազգի աղքատ ու կարօտ հիւանդներ:

* *
*

Գատըրգիւղ կամ Քաղկեդոն՝ բիւզանդական պատմութեան մէջ ալ ունի կարեւոր էջեր, զորս հակառակ քանի մը պատմագիրներու տարակարծութեան, կրնանք «Ազգային» համարել. էջեր՝ տխուր ու սեւ, աւա՜ղ, եւ արդիւնք՝ վայրագ թշնամութեան:

Մօրիկ Հայկազնը, որ աննշան պարտիզպանի մը զաւակ, ծնած կ՚ըսուի Օշականի մէջ՝ 539 թուին[156]: Իր զինուորական քաջագործութիւններովը մեծ հռչակ կը հանէ, 575ին Տիբեր կայսրը զինքը Արեւելեան բանակին ընդհանուր Սպարապետ կը կարգէ[157]. Մօրիկ Հայկազն թշնամիներու մեծազանգուած գունդերու կը յաղթէ, Հռոմէական փառքը կը պանծացունէ, Պարսից ամբարտաւանութիւնը կը խորտակէ, ինչպէս գրած է Հ. Տէր Սահակեան (էջ 43): 582 Օգոստ. 5ին, Տիբէրի աղջկան՝ Կոստանդիայի հետ կը նշանուի[158], եւ նոյն տարին Տիբէրի կամքովը Բիւզանդիոյ կայսր կը հռչակուի[159], ու Տիբէրի մահէն (589 Օգոստոս 14) յետոյ Ս. Սոփիայի եկեղեցւոյն մէջ կը պսակուի նշանածին հետ: Մօրիկ կայսր իւր շինարար գոր-

---

156 Հ. Կարապետ Տէր Սահակեան, Հայ կայսերք Բիւզանդիոնի, Վենետիկ 1905, Հատոր Ա., էջ 26:

157 Անդ, էջ 27 եւ Հ. Մատթէոս Մաղաք–Թէոփիլեան, Կենսագրութիւն Երեւելի Արանց, Վենետիկ 1839, Հատոր Ա., էջ 872:

158 Հայ կայսերք Բիւզանդիոն, Ա., էջ 41:

159 Անդ, էջ 43:

ծունէութեամբը ու բարերարութիւններովը 20 տարի թագաւորելէ ետքը՝ դաւադրութենէ մը խոյս տալով ապաստանարան կը փնտռէ Ցիրիոն կոչուած (արդի Բալամըրշը) ծովախորշին Սուրբ Աւթոնոմ եկեղեցին, ուրկէ քիչ հեռու՝ ինքը 596ին՝ իր ծախքովը կանգնած էր ծերանոց մը[160], որու մասին Դոկտ. Զամպաքօ բաշա մեծանուն բժիշկը ունի գրած լաւ յիշատակութիւն «Les Leproseries de Constantinople» վերնագրով հրատարակած աշխատութեանը մէջ[161]:

Դաւադիրները սակայն, Մօրիկի ետեւէն կը հասնին. զինքը, կնոջն ու զաւակներուն հետ Եկեղեցիէն բռնաբար դուրս կը հանեն եւ նաւակի մէջ դնելով կը բերեն Եւտրոպեայ ծոցին՝ այսինքն Ֆէնէր–Պահչէէն մինչեւ Մօդա տարածուած ծովածոցին նաւահանգիստը եւ հոն՝ հրամանաւ Փոկասի՝ որ նենգութեամբ կայսերական գահը բարձրացած էր, նախ՝ Մօրիկի աչքին առջեւ իր չորս զաւակները կը մորթեն, կինը կ'աքսորեն եւ յետոյ ալ զինքը կը գլխատեն, մարմինները Մարմարայի ծովը կը նետեն, իսկ կայսեր եւ որդիներու գլուխները կը տանին Պոլիս եւ ցիցերու վրայ՝ ի տես կը դնեն Հեպտոմոն դաշ-

---

[160] Անդ, էջ 43 եւ Հ. Ղ. Ինճիճեան, Ամարանոց Բիւզանդեան, էջ 52—53:

[161] Revue Médico-pharmaceutique de Constantinople, 1909 Յունիս, էջ 125:

տին մէջ[162]։ 602 թուին էր որ կը կատարուէր այս եղեռնը։

* * *

Օտար Պատմագիրներ տարիներ յետոյ Մօրիկ Հայկազնի գովքը կը հիւսեն եւ անոր չարաչար սպանութենէն ճիշդ երեք դար յետոյ՝ կայսր Ռոմանոս Լեկարէն երկիւղած յարգանք կ՚ընծայէ անոր յիշատակին եւ յուղարկաւորութեան մեծաշուք հանդէսներ կատարել կու տայ[163], բայց ի՞նչ օգուտ...։

* * *

Գաղըգիւղի մէջ իբրեւ աքսորական ապրած է՝ նաեւ Բիւզանդահայ կայսրներուն նշանաւորագոյնը՝ Յովհաննէս Զմշկիկ որ գահ բարձրացած է 969 Դեկտեմբեր 10ին[164], եւ որ՝ «ձիթենեաց անտառ» (bois des oliviers) կոչուած տեղը (այսինքն՝ արդի Պալամըշին եաեւները) հաստատած էր 975ին «Ուրկանոց-Հիւանդանոց» մը, որու մասին՝ Զմշկիկի ժամանակակից՝ Լեւոն յոյն սարկաւագը գրած է գրուատալից էջեր, զորս իրեն առաջնորդ առնելով՝ Դոկտ. Զամպաքօ փաշա եւս 1909ին հրատարակած է հմտալից յօդուած մը այդ

---

[162] Հայ կայսերք Բիւզանդիոնի, Հատոր Ա., էջ 122—123 եւ Հ. Ղուկաս Ինճիճեան, Ամառանոց Բիւզանդեան, էջ 160։
[163] Հայ կայսերք Բիւզանդիոնի, Ա., էջ 124։
[164] Հայ կայսերք Բիւզանդիոնի, Բ., էջ 153, 174։

Ուրկանոցին վրայ[165], իսկ անկէ առաջ՝ 1899ին Ն. Քարամեան «Լումայ» հանդէսին մէջ լոյս կ՚ընծայէր Զմշկիկ կայսեր մասին խիստ գեղեցիկ աշխատութիւն մը որ կ՚արժէ կարդալ[166].

«Յովհաննէս Զմշկիկ Բիւզանդիոյ կայսեր հարստութիւնը չա՛տ մեծաքանակ էր. Պատրիարքի ցանկութեան համաձայն Յովհան իր այս մեծ կարողութեան կէսը բաշխեց մայրաքաղաքի շրջարնակ գիւղացիներին, իսկ միւս կէսը նուիրեց այն մեծ Հիւանդանոցին, որ կար Կ. Պոլսում բորոտների եւ ամէն տեսակ վարակիչ հիւանդութիւնների համար:

«Կ. Պոլսի այս Հիւանդանոցը շինուած էր Ասիոյ ափում, այժմեայ Իւսկիւտարում[167]: Զմշկիկի մեծաքանակ օժանդակութիւնների շնորհիւ ընդարձակուեցաւ նրա շէնքը: Նոր կայսրը մինչեւ իր կեանքի վերջին օրերը մեծ խնամք էր տանում դրա վրայ: Ո՛չ միայն առատաձեռնութեամբ հարստացնում էր, այլ նաեւ յաճախ այցելութեան էր գնում, հիւանդներին սիրտ էր տալիս. վշտակցում էր այդ թշուառներին, չընայելով իր նրբաճաշակութեան, փափաւհեղութեան, պատում էր

---

[165] Revue Médico-pharmaceutique de Constantinople, տարի 1909, էջ 125:

[166] Լումայ, 1899, Յուլիս, էջ 53—101 եւ 1900 Յունիս, էջ 90—147:

[167] Իւսկիւտարի եւ Գատըգիւղի միջեւ՝ Հայդարփաշայի Թրքական ընդարձակ Կոռնոցին մէջ՝ մինչեւ այժմ կայ Ուրկանոց մը, որու վրայ գրած է Դոկտ. Զամպաքօ իր Histoire des Leproseries հմտալից աշխատութիւնը. սակայն Զմշկիկի հաստատածը այդ չէր:

իր խակ ձեռքով գարշելի վէրքերն ու գզուելի ուռոյցներն, «ուշք չընդարձնելով ամենեւին, իւր ծիրանու եւ իւր վեհափառութեան վրայ»: Ո՞վ չէ յիշում արդեօք Զմշկիկ կայսեր դաշնակից ու բարեկամ Աշոտ ողորմած Հայոց Թագաւորին, որ առանց թշուառ հիւանդների ու բորոտների սեղան չէր նստում: Ո՞վ է արդեօք օրինակ առնողը․ կա՞ յորը թէ նրա ազգակից Հայ Թագաւորը, թէ այս յատուկ էր ժամանակի Հայութեան ոգուն...»:

Բայց թողունք այս հին ու հնագոյն պատմութիւնները ու փակենք զանոնք, չմոռնալով՝ թէ Գատըգիւղ ունեցած է Ազգային Գերեզմանատուն, որ այժմ ճիշդ քաղաքին կեդրոնը կը գրաւէ շրջապատով մը գոցուած, դուռը վերեւը ունենալով՝ «Գերեզմանատուն Հայոց, 1740» պարզ արձանագրութիւնը:

Ասոր դիմացն է Յոյներունն ալ, բայց քառասուն տարիէ ի վեր հոն մեռել թաղելը արգիլեց կառավարութիւնը, որովհետեւ գիւղը հետզհետէ ընդարձակուելով քաղաքի ձեւ առաւ եւ բազմաթիւ տուներ սկսան շինուիլ անոնց բոլորտիքը:

Գիւղէն չա՛տ հեռու Գուռպաղլը-Տէրէ (գորտաձոր) կոչուած վայրը յատուկ տեղեր որոշուեցան եւ Հայ, Յոյն ու Լատին ժողովուրդին համար նոր գերեզմանատուններ կազմուեցան քով քովի:

Նախկին գերեզմանատունին մէջ կը հանգչի իմ մեծ մայրս (հօրամայր)՝ Տիկին Հնազանդ, եւ կնոջս մեծ Հայրը (մօրահայր)

Յարութիւն Փափազեան կամ Տէր Բանարասեան, որ Իւսկիւտար–Սելամէէի իր տունին մէջ Հայ թատերական ներկայացումներու նախաձեռնարկ եղած է, ինչպէս գրուած է արդէն:

Նոր գերեզմանատունը թաղուած է՝ Տէր Յովհաննէս Աւագ Քահանայ Հինքեարպէյէնեան (Հէլլէնագէտ ու Եբրայերէնի հմուտ). ինչպէս նաեւ Ս. Խաչի դպրոցական հին ընկերներէս ու Բարիզեան բժշկութեան դասակիցներէս՝ Դոկտ. Նիկողոս Խամերեան՝ քաջարուեստ ակնաբոյժը, եւ Հայտար–բաշայի թրքական Հիւանդանոցին վերաբուժապետ գնդապետ Դոկտ. Մկրտիչ Սանճաքճեան վաղեմի բարեկամս, եւ ծանօթ գրագէտ ու թատերագիր Սրապիոն Թղլեանը, պատանեկութեանս տանի դասատուներէս:

Երեմիա Չէլէպի այսպէս իր ուղեգրութեան 186—189 տողերուն մէջ Գատըգիւղի վրայ արագ ակնարկ մը նետելով հանդերձ, անոր չուրջբոլորը գտնուած պարտէզ ու այգիներն ալ դանց չ՚առներ նշանակել, մանաւանդ՝ Ֆէնէր–Պախչէսի (Լապտերապարտէզ) կոչուած սիրուն հովալեգուակը[168],

---

[168] Այս հովալեգուակի մասին Սարգիս Դպիր Սարաֆ–Յովհաննէսեան ալ իր Պոլսական «Պտոյտ»ի ընթացքին գրեթէ Երեմիա Չէլէպիի հետեւելով կը գրէ սապէս՝ «Եւ յետ սորա (խմ՛ Գատըգիւղի) է Մօտա Պուռնին, որ է բազուկ մի ի դուրս ելեալ: Եւ ապա ծոցն Գալամիշի եւ եղեղատ նորին: Եւ յետ սորա է՝ Ֆէնէր–Պաղչէսին, որոյ ի հանդիպոջ շինեալ է աշտարակ մի, որ կայ կայացեալ որպէս արձան ի վրայ հաստահիմն քարանց եղելոց ի մէջ ծովուն, եւ ի գլուխ

*որու ծայրը՝ կ'ըսէ, կը վառի փարոս-լապտէր մը, որ ցորեկը մինչեւ կէսօրուայ ճամբայ հեռուանց կ'երեւի ծովէն եւ գիշերներն ալ արուեստակ աստղին պէս կը լուսաւորէ, որպէս զի դէպի Վոսփոր կամ Նիկոմիդիոյ ծոցը դացող նաւերը զգուշաւոր կերպով ճամբորդեն եւ այն տեղուանքը գտնուած ժայռերուն չզարնուին մութին մէջ: Կը յայտնանշէ՝ թէ* «Փէնէր-Պահչէ»*ն զբօսավայր մ'է, դէմը կ'իյնայ Արեւմուտքը եւ ձախ կողմէն ալ կը տեսնուին խումբ մը մանր կղզիներ:*

*Այս կղզիներուն անունները կու տայ յետոյ՝* 227*րդ տողին մէջ, իսկ հոս՝* 199—220 *տողերով կ'արձանագրէ պատմական կարեւոր երկու կէտ, որոնց կ'արժէ անդրադառնալ համառօտ տեսութիւն մը գծելով. կարդանք ուրեմն նախ Երեմիայի գրածը* (*տող* 199—218).

Ընդ ձախմէ առաջի կանգնեալ՝ 199
Մանունք են կըղզինքն համայն,
Ի քամակն ունի յեզերք՝
Զճանապարհն Նիկոմիդեան,
Որ հարիւր չափ մղոնաւ՝
Հինգ վեց ժամն գան եւ կամ երթան,

---

նորին լուցեալ վառի Ֆէնէր (Լապտէր) ի գիշերի՝ վասն նաւացն ի քարանց զգուշութեան, ի մռայլ մթութեան:

Եւ Ֆէնէր-Պահչէսին ծայր մի որպէս քիթ ի դուրս ի ծով ելեալ՝ եւ վայելչապէս ծառովք սօսեաց եւ նոնեաց զարդարեալ՝ տեղի է զբօսանաց...» *եւ այլն*:

Եւ ցամաքաւ յետ կողմէ՝
　Երկու օրն կամ երեք ճամբան։
Կըղզին Ներսէսի սրբոյն՝
　Իբրու սատ զոլ ի յաքսորման,
Ջուր մի բարեհամ դեռ կայ՝
　Անպակաս որ հանդիպին այն։
Ի մէջ եւ ի գլուխ կըղզւոյս՝
　Տեղի է եւ ժամու խորան։
Աւերեալ որպէս բազումքըն՝
　Խորանին սատ մին[169] նըշմարան։
Ընդ Փիլիպպոսի սրբոյն՝
　Յորժամ ել գնալ ի Պուրսայն։
Սա ճանապարհի վերա՝
　Ջերկու օր կացաք ի խնդման։
Երեւելիք յամանակն՝
　Եւ աւուրք զոլ խաղաղութեան։
Մեզ լաւ երեւիւր յայնժամ՝
　Թէ իրաւ ելանել արժան։
Ուր ճուկըն գըլըն պալըդի՝ (*Թըռաճուկ*)
　Ճագուկ էր ի կըղզիս գըտան։
Երկու կազ չափու երկայն՝
　Յեզր ծովու արքն մեր կալան։
Շատ խնդաց Կաթողիկոսն՝
　Որ եղեւ համայնիցս քաւական։
Ընդ բարեաց մեր այս աւելորդ՝
　Լայն եւ արճակ եղաք ի գըօսան։
Վեմ եդ պատարագ մատոյց՝
　Ի շնորհացն առ մեզ ըսփռեցան.

---

[169] *Այսինքն՝ թէ միայն խորանին տեղը կը նշմարուի։*

Որպէս եւ այլ աշխարհի՝
Միշտ յուսամք զգութն տեառնական
Տամք ի քաղաքն յետ դարձան՝
Ընդ նմա մեք հետեւական:
Ի Պուրսայ քարով մնայ՝
Արար մեզ գոլ անդարձական:

* * *

Ուրեմն երբ 199րդ տողովը Երեմիա կ'ըսէ՝ թէ Ֆէնէր–Պահչէի ձախէն մանր կղզիները տեսարան մը կը պարզուի, յաջորդ 200 եւ 201 տողերումն ալ չմոռնար դէպի արեւելեան կողմերը թռչիլ, ու յիշել Նիկոմիդիան եւ յարել՝ թէ 100 մղոն է անոր հեռաւորութիւնը եւ հոն ուղեւորելու ճանապարհը կը գտնուի Ֆէնէր–Պահչէի ետեւները՝ ծովեզերքն ի վեր, ու կը յարէ՝ թէ ծովով հինգ վեց ժամէն հոն կ'երթցուի կամ նոյնքան ալ վերադարձի համար, իսկ ցամաքէն 2 կամ 3 օրէն:

Գիտենք որ Նիկոմիդիա քաղաքը վաղ ժամանակներէ սկսած, հայաբնակ եղած է եւ ունեցած է Արմաշի Չարխափան Ս. Աստուածածին վանքը, ուր Երեմիա Չէլէպի երկու անգամ ուխտի է գնացած. նախ իր Տէր Հօրը հետ՝ 1661ին եւ յետոյ՝ իր մօրը մահուան տարին՝ 1663ին, ինչպէս մանրամասն տեղեկութիւն կու տան այս մասին Ծանօթագրութիւններուս Ա. եւ Բ. հատորին՝ 156—160 եւ 722—723 էջերը:

Երեմիա՝ Նիկոմիդիոյ մասին երկար չի

գրեր ու անմիջապէս անցողակի իմն կը յիշատակէ՝ Կ. Պոլսոյ մէջ տեղի ունեցած ազգային երկու կարեւոր եղելութիւն, զորս՝ մեր հին պատմիչները բազմիցս եւ երկարօրէն նիւթ ըրած են իրենց գրչին:

Կ'արժէ որ քիչ մը կանգ առնենք ատոնց վրայ, ինչպէս ըսի արդէն, եւ զետեղենք հոս զանոնք ամփոփ կերպով:

* * *

Երեմիա՝ երբ իր 199րդ տողովը կ'ըսէ՝ թէ Ֆէնէր-Պահչէսիի ձախ կողմէն տեսարանը մանր կղզիներ կը ներկայացնէ, 203րդ տողովն ալ կ'ուզէ յայտնել թէ՝ Սուրբն Ներսէսի աքսորատեղին՝ գո՛ցգես այդ կղզիներէն մէկ հատը եղած ըլլայ, որով Ս. Ներսէսի կղզի[170] յորջորջումով զայն կ'որակէ եւ յաջորդ տողովը՝ քարեհամ ջուր մը կայ հոն՝ կը գրէ, եւ յետոյ՝ կը յաւելու՝ թէ, կղզիին գագաթը աւերակ եկեղեցւոյ մը խորանին փլատակները կ'երեւին դեռ, եւ թէ՝ Փիլիպպոս կաթողիկոսը Կ. Պոլսէն (Բիւթանական) Պուրսա քաղաքը գացած միջոցին, ճանապարհին վրայ դուրս կ'ելլէ այդ կղզին, հոն «վէմքար» կը դնէ ու պատարագ կը մատուցանէ, երկու օր կը մնայ, գոհ ժամանակ կ'անցընէ, որովհետեւ՝ ո՛չ միայն եղանակը լաւ, այլ եւ խաղաղութեան օրեր կը տիրեն եղեր:

---

[170] Զոր կը յիշատակէ նաեւ Հ. Ղուկաս Ինճիճեան (Կղզին Ներսէսի) տե՛ս Աշխ. Չորից մասանց աշխարհի, Հատոր Զ., էջ 507:

*Այս կարճ բայց նշանակալից գրուածը կը հետաքրքրէ զիս եւ կը սորվէ ինծ գիտնալ՝ թէ* 1· Ներսէս Հայրապետը (*Պարթեւ*) ո՞ր տարուոյն աքսորուած է· *եւ* 2· Ո՞ր կղզին աքսորուած է· 3· Ե՞րբ աքսորէն վերադարձած է, *եւ* 4· Ե՞րբ կամ ո՞ր թուականին է վախճանած :

*Բայց աստի՝ հարկ է նաեւ չմոռնալ այցելութիւնը Փիլիպպոս կաթողիկոսին : Ասոր մասին թէեւ նախապէս փոքր ինչ գրած եմ (Հատոր Ա·, էջ* 147), *այլ կարեւոր է հոս ալ զայն վերյիշել, իբրեւ առընչութիւն ունեցող ներկայացուցած հարցումներուս :*

*Դիւրին չէ արդարեւ լուծել խնդիրը, նկատի ունենալով պատմագիրներու ակնյայտնի տարակարծութիւնները այս մասին, ուստի պիտի ջանամ կարելիութեան սահմանին մէջ պարզել զայն, յենլով կարեւոր տուեալներու վրայ, զորս քաղած եմ Հայ եւ օտար աղբիւրներէ :*

* * *

*Մեր պատմագիրները (Փաւստոս, Խորենացի, Սոփերք Հայկականք) կ՚աւանդեն՝ թէ Ներսէս Հայրապետին ոխերիմ թշնամի եղած էր Վաղէս Թագաւորը, որ տիրած է Քրիստոսի* 364—378 *թուականներուն եւ անպայման կ՚ուզէր մեռցնել տալ զայն՝ զի Հայրապետն Ներսէս մերժած էր եւ չէր ընդունած արիանոսեան վարդապետութիւնը : Վա–*

ղէս աւագանիներու միջամտութեամբը մահու վճիռը կը փոխէ աքսորի՝ եւ Ներսէսը աքսորել կու տայ ամայի ու անջրդի կղզի մը, ուրկէս զի հոն սովամահ ըլլայ:

Ոմանք գրած են՝ թէ Ներսէս Հայրապետ ինը տարի մնաց աքսորին մէջ, բայց ասի չա՛տ մեծ սխալ մ'է մեր Ազգ. Պատմութեան համար. ճիշդը այն է՝ թէ ինը ամիս միայն տեւած է այդ աքսորը, ինչպէս 15րդ դարու Գրիչ Առաքել Սիւնեցի Ներսէս Հայրապետին վրայ շարադրած իր ոտանաւոր ներբողեանին մէջ[171] կը գրէ՝ ըսելով.

«Աքսորեցաւ Ներսէս[172] յանջրդին կղզին
Ինն ամիս մնացեալ եւ անդ աղաւթէր
Յամէն ժն օր մին հետ ճաշակէր,
Մինչեւ վաղէս արքայն սատակեալ լինէր
Եւ մեծըն Թէոդոս անդ թագաւորէր»:

Արդէն Օրմանեան Սրբազան իր «Ազգապատում»ին մէջ (էջ 373) եւ Մարկուարտի

---

[171] Առաքել Սիւնեցիի այս գործը տպուած է նախ 1737ին Կ. Պոլիս «ի Գիրս Մեսրոպայ Երիցու», ի Տպարանի (Նորակազմ) Աբրահամու, եւ երկրորդ անգամ 1775ին ի Մատրաս: Այս տպագրութիւնները տեսած չեմ ընաւ, բայց ունիմ անոր մէկ ձեռագիրը որ 1661ին ընդօրինակուած է «Ալէքսիանոս» անուն Դպիրէ մը:

[172] Մեծն Ներսէս Հայրապետը շատ անգամ շփոթուած է մեր մէջ՝ Ներսէս Պատրիկի հետ, որ այն ալ Մեծ տիտղոսը ունի բիւզանդական պատմութեան մէջ. սակայն գիտնալու ենք, որ ժամանակի ահագին տարբերութիւն կայ երկուքին միջեւ: Ներսէս Պատրիկ ապրած է Զ.րդ դարու մէջ Յուստինիանոսի ամենաքաջ զօրապետը եղած է. նաեւ ընդհանուր կառավարիչ Իտալիոյ. մեռած է Հռոմ քաղաքին մէջ 568ին:

«Հայկական թեմերու սկզբնաւորութիւնը» վերնագրով աշխատութեան թարգմանիչը Պ. Է.[173] ինը ամիսը հաւանական կը գտնան, ուստի պէտք է ընդունիլ՝ թէ Ներսէս Հայրապետ աքսորուեցաւ Վաղէսի թագաւորութեան վերջին տարին՝ այսինքն 378ին եւ մնաց 9 ամիս, որովհետեւ՝ երբ Թէոդոս Ա. Մեծը, Վաղէսի մահէն յետոյ գահ կը բարձրանայ, անմիջապէս աքսորէն բերել կու տայ զայն, մեծ պատիւներ կ՚ընէ անոր եւ 381ին Կ. Պոլսոյ մէջ գումարել տուած Բ. ընդհանրական ժողովին նախագահ կը կարգէ, ինչպէս կ՚աւանդէ Առաքել Սիւնեցի[174].

---

173 Հանդէս Ամսօրեայ, 1934, էջ 114 եւ «Dictionnaire Larousse» յօդուած «Narsès»:

174 Այս «Առաքել Սիւնեցի»ի համար Հ. Գարեգին Զարպհանալեան իր Պատմութիւն Հայերէն Դպրութեան մէջ (Բ. տպ. Վենետիկ 1905, էջ 195) կը գրէ թէ՝ «կաթողիկոսական աթոռը բարձրանալով մեռաւ ի Հայոց ՌՁԲ (= 1082 + 551 = 1633) եւ կը յաւելու (յենլով յիշատակի մը վրայ՝ որուն անունը եւ աղբիւրը չի տար) թէ՝ «Սուգ մեծ եղող մեզ եւ Ազգիս»:

Բարիզի Նուպարեան Մատենադարանին մէջ՝ Երուանդ Անտոնեանի հետ աչքէ անցուցինք կաթողիկոսական բոլոր ժամանակագրութիւնները եւ Առաքել Կաթողիկոս Սիւնեցիի յիշատակութիւնը ո՛չ մէկ տեղ գտանք, ո՛չ Չամչեանի եւ ո՛չ Օրմանեանի աշխատութիւններուն մէջ չկայ այդ անունը: Կարելի է խորհիլ թէ ուստի՞ գտած է զայն Հ. Գարեգին Զարպհանալեան:

Հ. Գ. Զարպհանելեանի Պատմութիւն հայերէն դպրութեան, Բ. հատորի, Բ. տպագրութեան (Վենետիկ 1905) մէջ, էջ 195, տ. 1 (վարէն)—196, տ. 25 յառաջ բերուածները կը վերաբերին Մովսէս Գ. Տաթեւացի կաթողիկոսին (1629—1633)· եւ հրատարակիչներու անուշադրութեամբը միայն զետեղուած են Առաքել Սիւնեցւոյ անուան կից: Փոխադրելու է էջ 197, տ. 2 «զՄովսէս Սիւնեցի» եւ անուանս տակ իբրեւ ծա-

«Առաքեաց թագաւորն եւ զՆերսէս քերին
Եւ ի ստամպոլ քաղաք ընդնայ մեծարեցին
Գըլուխ սուրբ ժողովոյն ըզՆերսէս կացուցին
Ճ եւ Ծիցն որ անդ միաբան լինէին»։

* * *

*Այն տեղեկութիւնները*[175] *այսպէս գրելէս յետոյ, կ'անցնիմ Երեմիայի 205—207 տողերուն, որոնց մէջ կը կարդանք, թէ «Ներսէս»ի անունը կրող կղզիակ մը կայ եւ անոր մէջն ու գագաթը կը գտնուի աւերակ եկեղեցի մը նաեւ խորանի մը փլփլած տեղը։*

*Այս կղզին Մարմարայի* Իշխանաց *կոչուած կղզիներուն խումբին մէջ եղածն է, Գնալըի կամ Բրօթիի եանեները եւ Հեռուն,*

նօթութիւն դնելու է այն ամբողջ հատուածը. այսպէս նախատեսնուած պէտք է ըլլար հեղինակէն, որուն մահէն ետքը լոյս տեսած է Բ. տպագրութիւնս։ Մովսէս Տաթեւացւոյ (Սիւնեցւոյ) մասին տեսնել իմ աշխատութիւնս Մովսէս Գ. Տաթեւացի Հայոց կաթողիկոսն եւ իր ժամանակը. Վիեննա, 1936 (նախ լոյս տեսած Հանդէս Ամսօրեայի մէջ, 1933—1934 տարիներու ընթացքին). հոն յառաջ բերուած են նաեւ Զարպհանելեանի յիշած տեղիքները ուղղակի աղբիւրներէն։ Հ. Ն. Ա.

[175] Ներսէս հայրապետի առ Վաղէս դեսպանագնացութեան եւ կայսեր հրամանաւ աքսորի մասին մանրապատում կը խօսի Փաւստոս. դէպքը պատմական չէ։ Իսկ Ներսէսի մասնակցութիւնը Կ.Պոլսոյ 381ի տիեզերական ժողովին հրապարակի վրայ դրած է Մ. Խորենացի, մեղանչելով ուղիղ ժամանակագրութեան դէմ։ Ներսէսի մահուան տարին 373 անվիճելի է։ Յետնագոյն շրջանի հայ մատենագիրները, որոնց թուին մէջ են Առաքել Սիւնեցի եւ Երեմիա Չէլէպի, կոյրզկուրայն հետեւած են Մ. Խորենացւոյ։ Այս մասին տես Հանդէս Ամսօրեայ, 1904, էջ 38—46։
Հ. Ն. Ա.

Եսաը (*տափակ*) *անուն կրողը, որուն գագաթը արդարեւ կը տեսնուի աւերակ խորանի տեղ մը՝ զոր տեսած եմ ես* 1900*ին, երբ* «Հէլպիկ» *Պէլճիքացի սեղանաւոր բարեկամս իր առագաստանաւովը կիրակի առտու մը պտոյտի համար հոն տարաւ զիս՝ Մեծ Կղզիէն:*

*Ըմպելի ջուր մը իրաւ կը հոսի հոն, այդ կղզիին մէջոց մը տէր եղաւ Եգիպտոսի խտիվ Իսմայիլ-բաշային, եւ յետոյ Անգլիացի մը, որ գեղեցիկ շէնք ու պարտէզ շինել տուաւ հոն:*

«Ներսէսի կղզի» *անուանումը կ'երեւի՝ հինէն ի վեր աւանդութեամբ սերունդէ սերունդ անցած է, որովհետեւ Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանէ շատ ժամանակ առաջ՝* Սիմէոն Դպիր Լեհացի՝ *իր* 1608—1619 *թուականներուն կատարած ճամբորդութիւններու մէջոցին՝ երբ Կ. Պոլիս ալ կ'այցելէ, այդ առթիւ շարադրած* Ուղեգրութեան *մէջ*[176] *կը գրէր,*

«Եւ անտի եկաք Իզմիտ: Եւ սա մեծ սկելէ էր, եւ պէնտէր քաղաք եւ շէն: Կայր ի նմա երկու երէց եւ հարիւրութսուն տուն Հայի: Կացաք անդ ամիս մի եւ եկաք դարձեալ ի Ստամպոլ եւ հանդիպեցաք ի վերայ ծովու ատա մի, ուր պիղծն վաղէս արկեալ զՍուրբն Ներսէս ի ծովն, բայց ի նա ոչ ելաք[177]»:

176 *Հրատարակուած Հ. Ն. Ակինեանէ* Հանդէս Ամսօրեայի *մէջ* 1932—1934 *Հոկտեմբեր—Դեկտեմբեր*, էջ 683:

177 *Այս Սիմէոն Լեհացին՝ որ սարկաւագութեան*

Եւ անշուշտ աւանդուած հին եւ նուիրական այս յիշատակին համար էր որ Փիլիպ–

---

ատրճան ունեցած է, գրասէր, աշխատասէր անձ մը եղած է. իր ժամանակը պարապ չէ անցուցած, եւ ընդօրինակած է՝ թէ՛ Կ. Պոլսոյ մէջ եւ թէ՛ այլուր, կարեւոր ձեռագիրներ. այսպէս՝ 1609 Օգոստոս 20ին, Կ. Պոլսոյ Ս. Սարգիս Եկեղեցւոյն մէջ Աղաբէկ Սասունեցւոյ խնդրանքով կ՚ընդօրինակէ «Մխիթար Գօշի Դատաստանագիրքը», որուն Յիշատակարանն է.

«Եւ արդ ես յետինս եւ անարժանս ի մանկունս Եկեղեցւոյ թափառնիկս եւ յունայնս ի գործոց բարեաց, մեղապարտ Սիմէոն դպիրս··· շնորհիւ Տեառն սկսայ եւ ողորմութեամբն նորին կատարեցի զՍուրբ գիրքս որ կոչի կանոնք··· բայց կատարեցաւ սա ի մեծ թվիս Հայոց ՌԾԸերորդի (1058 + 551 = 1609) եւ ի յամսեանն Օգոստոսի ԻԸ··· ի Հայրապետութեան Տէր Մելքիսէթի եւ ի բռնակալութեան Սուլթան Ահմատին, ի մայրաքաղաքն Կոստանդնուպոլիս, ընդ հովանեաւ Սրբոյն Սարգսի զօրավարին եւ որդւոյն նորա Մարտիրոսի, ի դառն եւ անբարի ժամանակս··· եւ այլն» (Հանդէս Ամսօրեայ, 1932 Յուլիս—Սեպտ.)։

Ուստի Ս. Սարգիսի մէջ ընդօրինակուած ձեռագիրները՝ զորս յիշատակած եմ արդէն Երկրորդ Հատորիս մէջ (էջ 790—795) կ՚ըլլան թուով վեց, որոնց ամենահինը վերոյգրեալն է։

Սիմէոն Լեհացի Վլանկա թաղին Ս. Նիկողայոս Եկեղեցւոյն մէջ ալ ընդօրինակած է՝ 1615ին Շարակնոց մը, զոր նշանակած եմ արդէն (Հատոր Բ., էջ 795—796)։ Բայց՝ խորհնէ Գարուի Ս. Նիկողայոս Եկեղեցւոյն մէջ նաեւ 1618 Յունիս 19ին կ՚ընդօրինակէ «Սողոմոնի գրքերն եւ ԺԲ. մարգարէները», այս ընդօրինակութեան Յիշատակարանը հետեւեալն է եւ կը քաղեմ Հ. Ն. Ակինեանի գործէն (Հանդէս Ամսօրեայ, 1932, Թիւ Յուլիս—Սեպտեմբեր)։

«Փառք··· Արդ ես տկարս··· սկսայ եւ յանգ ելեալ կատարեցի ի վայելումն··· կուսակրօն Տէր Յակոբ եւ քաջ կրօնաւորին··· բայց գրեցաւ գիրս թվ. ՌԿԷ (1067 + 551 = 1618) Յունիս ԺԹ., աւուր ամառնամտի, ի դուռն սուրբ Նիկողայոս Սքանչելագործի, որ կայ յԱտրանու դուռն ի քաղաքն Կոստանդինուպոլիս ձեռամբ թերավարժ գրչի Լէհցի Սիմէոն Դպրի···»։

Աւելորդ չըլլայ կրկնել՝ թէ այս Ս. Նիկողայոս Եկեղեցին 1627ին մղկիթի վերածուած է բռնութեամբ,

պոս կաթողիկոս Կ. Պոլսէն դէպի Պուրսա ըրած ծովագնացութեան միջոցին՝ կը հանդիպի այդ կղզին ու պատարագ կը մատուցանէ, Ներսէս Պարթեւի հոգւոյն համար հարկաւ, ինչպէս կ՚իմացուի Երեմիայի 207, 208 եւ 209 տողերէն:

* * *

Գիտենք՝ որ մինչեւ ցարդ դէպի Պուրսա ճամբորդութիւնը ծովով կը կատարուի՝ անցնելով առջեւէն կղզիի մը՝ որ Թուրքերէն Սիվրի կամ Ինսիզ ատասի (այսինքն՝ ցից անմարդաբնակ) կը կոչուի եւ որ համակ ժայռ մ՚է ահաղին եւ սրադագաթ, որուն վրայ կարելի չէ եկեղեցի շինել: Ահա այս կղզիէն բաւական հեռու՝ բայց անոր դրացին է Եասը ատասի ըսուածը որ տափատափարակ կղզի մ՚է եւ վրան ունի աւերակ մը, ինչպէս յայտնեցի վերեւ:

Ներսէսի աքսորակղզին այս կրնայ եղած ըլլալ, մանաւանդ որ՝ Պատմութիւնը կ՚ըսէ,

---

ինչպէս պատմած եմ առաջին Հատորին մէջ (էջ 341—343):

*

Այս Սիմէոն Լեհացին 1629ին ալ Լվովի մէջ կ՚ընդօրինակէ Ջուղայեցի Յովհաննէս բժշկի յանձնարարութեամբ «Յաղագս կազմութեան եւ գոյացութեան մարդոյ եւ այլ բժշկական խրատներ» անունով ձեռագիր մը, զոր կը յիշատակէ Հ. Ներսէս Ակինեան (Հանդէս Ամսօրեայ, 1932, Թիւ Յուլիս) ընդօրինակիչին Ուղեգրական նկարագրութիւնները եւ պատմութիւնը հրատարակելով:

*թէ նա աւելի հեռուները պիտի աքսորուէր, բայց փոթորիկ մը արգելք եղաւ եւ տանող նաւը հող հանեց զինքը։*

*
* *

*Սպասելով որ աւելի լուսատու աղբիւրներ կարենանք ունենալ մէկ օր այս մասին, գիտենք Երեմիայի միւս տողերը* (207—209), *որոնք կը խօսին Փիլիպպոս կաթողիկոսի վրայ։*

*Փիլիպպոս կաթողիկոս, որու մասին Ծանօթագրութիւններուս Ա. հատորին մէջ գետեղած եմ արդէն քանի մը տեղեկութիւններ, Աղբակեցի էր, եւ Էջմիածնի կաթողիկոս ընտրուած է* 1631*ին, յաջորդելով Մովսէս կաթողիկոսին, որուն սիրելի էր եւ անկէ ալ ձեռնադրուած էր*[178] *Եպիսկոպոս։*

*Մեր Եկեղեցական Պատմութեան մէջ լաւանուն եւ մեծ յիշատակ թողած կաթողիկոսներէն է։ Սա* 1637*ին կ'երթայ Սպահան եւ կը յաջողի Ս. Լուսաւորչի աջը Էջմիածին բերելու*[179]*։* 1640*ին Դպրոց կը բանայ Էջմիածնի մէջ եւ* 1651 *թուին Առաքել Դաւրիժեցիի գրել կու տայ հանրածանօթ պատմութիւնը*[180]*։*

1651 *Յուլիսին կաթողիկոսը ճամբայ կ'ելլէ դէպի Կ. Պոլիս, բայց նախ կ'երթայ*

---

[178] *Պատմ. Առաքել Դաւրիժեցւոյ, Ամստերդամ,* էջ 309։
[179] Անդ, էջ 608։
[180] Անդ, էջ 624։

Կարին եւ անտի Երուսաղէմ[181], ուր Սսոյ Ներսէս կաթողիկոսին հետ եկեղեցական կարգ մը խրատութիւններու մասին համաձայնութիւն կը գոյացնէ:

1652ին Երուսաղէմէն կ'երթայ Կ. Պոլիս ցամաքի ճամբով[182] կը ժամանէ հոն Յունիս 20ին եւ գրեթէ ամբողջ տարի մը կը մնայ. Պատրիարք կը կարգէ Յովհաննէս Մուղնեցին եւ կը վճարէ պատրիարքարանին մեծագումար պարտքերը:

1653 Ապրիլ 26ին կը թողու Կ. Պոլիսը եւ նաւով կ'երթայ Պուրսա քաղաքը, ուղեկից ունենալով իրեն Երեմիա Չէլէպին եւ ուրիշ ազգայիններ, որոնք կէս ճամբան կ'այցելեն «Կզզին Ներսէսի», ինչպէս վերեւ պատմուած է, եւ հոն երկու օր մնալով կը ճաշակեն համեղ Թրաձուկը (տող 211):



Պուրսայի[183] մէջ մեծ ընդունելութիւն կը գտնայ Փիլիպպոս կաթողիկոս, հիւր կ'ըլլայ

181 Չամչեան Պատմ. Հայոց, Հատոր Գ., էջ 628—629:

182 Առաքել Դաւրիժեցի, էջ 332:

183 Պուրսա քաղաքը Բիւթանիոյ, վաղ ժամանակներէ սկսած ունէր Հայ գաղութ մը բաւական նշանաւոր: Ֆաթիհ երբ Կ. Պոլիսը առաւ, Պուրսայէն Յովակիմ Եպիսկոպոսը բերել տուաւ եւ զանիկա Պատրիարք հռչակեց:

Պուրսա նշանաւոր եկեղեցականներ ունեցած է. Գէորգ Դ. կաթողիկոսը հոն առաջնորդ եղած է, եւ հետզհետէ եղած են հոն ուրիշ առաջնորդներ որոնց մանրամասն ցանկը հրատարակուած է տարիներ առաջ Պոլսական թերթերու մէջ:

*մեծահարուստ Անտոն Չէլէպի հայուն*[184]*, որու մասին խօսած եմ Ծանօթագրութիւններուս Բ. հատորին մէջ (էջ 574 եւ 575)։*

---

*Պուրսայի մէջ 1888ին առաջին անգամ ըլլալով հաստատուած է չերամարուծական վարժարան, որուն Տնօրէն եղած է Եղբայրս Գէորգ Թորգոմեան եւ չերամի հունտերու սքանչելի տեսակները հասցուցած է։*

*[184] Այս Անտոն Չէլէպիի մասին Երեմիա Չէլէպի շատ լաւ չի խօսիր, հակառակ որ վերջերս (տե՛ս «Ապագայ», Բարիս, 19 Յունիս 1934) բարեկամս, բանասէր Տիար Հ. Պէրպէրեան, զայն կը ներկայացունէր իբրեւ մեծատաղանդ եւ բարեգործ անձ մը։*

*Իրաւ է թէ նա օտարներու քով մեծ յարգ ու պատիւ ունեցած անձ մը եղած է, ինչպէս Հ. Պէրպէրեան ցոյց կու տայ վաւերական աղբիւրներու շնորհիւ, բայց վերջ ի վերջոյ անոր Լիվօռնօ փախչիլը, կասկած կու տայ թէ ունեցած փարթամ վիճակը յանիրաւի վաստկուած բան մ՚էր։*

*Երուսաղէմի վանքը գտնուած Երեմիա Չէլէպիի* Օրագրութեան *մէջ արձանագրուած են անոր մասին հետեւեալ տողերը զորս յղած է ինձ 1934 Յունիս 20ին Գեր. Մեսրոպ Սրբազան Նշանեան.*

*«Ֆիլիպպա կաթողիկոսին Պոլիս գտնուած միջոցին՝ եւ հոնկէ դեռ չի մեկնած, կը գրէ՝ Երեմիա թէ.* «Եւ օրս Անտոն Չէլէպուն հայրն մեռաւ եւ գնացաք կաթողիկոսին եւ վարդապետն ի վերայ նորա, եւ բազում քահանայք եկեալ յեկեղեցեացն, եւ զգեստաւորեցան դպիրք զշապիկս եւ սարկաւագունք եւս սաղաւարտիւ եւ ուրարաւ եւ բուրվառով եւ աւետարանաւ… կաթողիկոսն… խաչիւ եւ զաւազանաւ, լուցեալ մոմեղինօք եւ այսպիսի զարդուք եւ ուխտիւ մինչեւ ի դիրս գերեզմանաց Ղալաթոյ այնպէս գնացաք: *(Այս տողէն իմանալու չենք թէ Անտոն Չէլէպիի Հայրը Ղալաթիոյ Եկեղեցին թաղուած է, ո՛չ. այլ Բանկալթիի Ազգ. Գերեզմանատունը, որ* Ղալաթացի բնակչաց, պանդխտից է *կ՚ըսէ Երեմիա Չէլէպի (Հատոր Ա., էջ 79, տող 286)։* Այսօր տեսաք զփառս վայելչութեան եկեղեցւոյ, զոր լինէր ի ժամանակս թագաւորաց, եւ յետ… թաղմանն եղեալ եկաք ի տուն Չէլէպուն, հացկերոյթ արարեալ հոգոյն, եւ անտի ելեալ գնացաք»:

*Այս տողերը ապացոյց են թէ ո՛ր աստիճանի ընչեղ ու թագաւորական կեանք վարող անձ մ՚էր Անտոն Չէլէպին, որ կաթողիկոսին խնդրանքին վրայ՝ բառ*

*Կաթողիկոսը Պուրսայէն կը մեկնի, միշտ ցամաքի ճամբով, եւ դէպի 1654ի վերջերը կը հասնի Էջմիածին եւ հոն դարձեալ շինարար գործերու հեղինակ ըլլալէ յետոյ, կը վախճանի 1655ին*[185] *եւ կը թաղուի Ս. Հռիփսիմեանց Եկեղեցւոյն մէջ, ուր կ'ունենայ իր շիրիմը հետեւեալ Արձանագրութեամբ, զոր կը կարդանք Հ. Ղ. Ալիշանի* «Այրարատ» *հոյակապ Երկասիրութեան 240 էջին մէջ, այսպէս.*

«Հազար հարիւր չորս թուին, մարտի քսան եւ հնգին վախճանեցաւ Հաղփակեցի Փիլիպպոս սքանչելագործ կաթողիկոսն ամենայն Հայոց, եւ եդաւ սուրբ նշխարք նորա յայսմ շիրմի, որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի»։

*Երեմիա Չէլէպի այսպէս՝ Ներսէսի կզզին եւ Փիլիպպոս կաթողիկոսին Կ. Պոլիս գալը ու անոր հետ իր ալ Պուրսա երթալը յիշատակելէ յետոյ, կը վերադառնայ Կ. Պոլիս եւ դարձին՝ կը թուէ տեսնուած գիւղերն ու ա–*

---

*Առաքել Դաւրիժեցիի (էջ 332—333), յանձն կ'առնէ Էջմիածնի զանգատունը ամբողջապէս շինել, բայց՝ ըստ Օրագրութեան Երեմիա Չէլէպիի 2000 ղրշ. միայն կու տայ այդ նպատակին համար։*

*Կարեւոր եւ նկատելի դիրք ունեցող Հայ մը եղած է Անտոն Չէլէպին, չեմ ուրանար, բայց անոր Եղբայրը տաճկցած էր՝* Հասան աղա *եղած, ինչպէս կը գրէ Երեմիա Չէլէպի (Հատոր Բ., էջ 547, 574, 575) եւ անոր շնորհիւը դիզած էր իր յորդառատ հարստութիւնը առանց իր Ազգին օգուտ մը ընծայելու, որով իրաւամբ* «Նանիր» *ածականը գրուած է անոր անունին քով։*

185 Առաքել Դաւրիժեցի, *էջ* 339, 425 *եւ* Չամչեան Պատմ. Հայոց, *Հատոր* Գ., *էջ* 656։

*ւաններն ու անոնց հետ՝ իշխանաց կղզիները՝ սապէս.*

Տող 227.

Գըզըլ՝ Հէյպէլի՝ Սիվրի, Գընալի՝
Պուրղազ եւ Դաւշան
Ուրոյն անուանք են կղզեացս՝
Մէջ սոցա եւ Պէօյիւկ ատան:

*Սարգիս Դպիր Սարաֆ-Յովհաննէսեան ալ իր Պոլսական պտոյտին վերջընթեր էջին վրայ կը նշանակէ այս կղզիները իրենց անուններով՝ սապէս.*

«Եւ ի Ֆէնէր Պաղչէսիէն տեսանին մօտակայ կղզիքն ի մէջ ծովուն, որոց անուանքն են թուրքերէն Գընալը, Սիվրի ատա, Պէօյիւք ատա, Եասը ատա, Պուրղազ ատասի, Դավշան ատասի, Գըզըլ ատա, եւ Հէյպէլի, եւ կըղզին Ներսէսի»:

*Երեմիա եւ Սարգիս Դպիր միեւնոյն կարգաւ չեն ներկայացուներ կղզիներուն անունները, բայց փոյթ չէ, եւ պէտք է որ պտոյտ մը ընենք անոնց մէջ, զի հայկական յիշատակներ եւ բնակչութիւն կը գտնանք հոն:*

*Թողլով Ներսէսի կղզին, որ, կը կրկնեմ,* Եասը *(տափակ) կոչուածն է, եւ որու վրայ խօսեցանք, նկատի կ՚առնեմ նախ* Գընալը *կամ* Բոռթի *կղզին, որ նաեւ* Էրմէնի Ատասի *(Հայու կղզի) անունը կը կրէ, որովհետեւ վաղուց՝ Հայեր միայն սկսած են բնակիլ հոն, գրաւելով ամբողջ ծովեզրը եւ բարձունքը:*

*Ի սկզբան մատուռ մ'ունեցած են հոն Հայերը, բայց յետոյ՝ Յակոբ Պատրիարքի օրով կառուցած են քարուկիր գեղեցիկ Եկեղեցի մը, որուն ճակատը կը կարդանք հետեւեալ Արձանագրութիւնը, զոր քաղած եմ անձամբ 1900ին.*

ԿԱՌՈՒՑԱՒ ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՍ
ՅԱՆՈՒՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ԼՈՒՍԱՒՈՐՉԻՆ,
Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ Կ. ՊՈԼՍՈՅ
ՏԵԱՌՆ ՅԱԿՈԲԱՅ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ
ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1857 ՍԵՊՏ. 22

*Սիրուն Եկեղեցի մ'է Գընալըի Եկեղեցին. անոր առաջին Քահանայն եղած է Տէր Դիոնեսիոս, որ միանգամայն խրոխտանն կը կրթէր է գիւղին մանուկները:*

*Ճանչցած եմ զինքը իր ծերութեանը մէջ, բարի, անձնուէր, եւ անշահախնդիր քահանայ մ'էր, վախճանած է ի խոր ծերութեան 16/29 Յունիս 1912ին, որու մասին* Բիւզանդիոն *թերթը կը գրէր հետեւեալը, զոր Գնալը կղզիի հայութեան ամբողջ պատմութիւնը կարելի*[186] *է համարել:*

*«Երէկ գիշեր Գնալը կղզիին մէջ վախճանեցաւ աւագերէց Տ. Դիոնեսիոս Ա. քահանայ, որ Կ. Պոլսոյ քահանայական դասուն աւագագոյն անդամն էր թէ՛ իր տարիքով եւ թէ ձեռնադրութեան կարգովը: Վախճանեալ քահանան առաջին հիմնադիրներէն մին եղած է կղզիին Հայ բնակչութեան եւ անոր դպրո–*

---

[186] Բիւզանդիոն, *Թիւ* 4641, 17/30 *Յունուար* 1912:

ցին ու եկեղեցւոյն: Անցեալ դարուն յիսուն-նական թուականներուն երբ քանի մը Հայեր Գնալըն բնակելի ընելու գաղափարը կը յղա-նան եւ արտօնութիւն ձեռք բերելով տուներ կը շինեն, իրենց առաջին գործերէն մին կ'ըլ-լայ եկեղեցւոյ մը հիմ դնել: Միեւնոյն ատեն գաղափար կ'ունենան դպրոցի մը կազմակեր-պութեան եւ իբր մանկավարժ Պատ. Ծիրմէ-ճեանը Սամաթիայէն տեղափոխելու Գնալը: Հոն, անիկա առաջին դասարանը կազմած է, հնօրեայ ծառի մը տակ, փոքր մանուկներն իր շուրջը ժողովելով եւ անոնց կարդալ սոր-վեցնելով: Երբ քիչ ետքն եկեղեցին ալ կա-ռուցուած է, անձնուէր վարժապետը կո-չուած է նաեւ հովուութեան, 1857ին նորա-շէն եկեղեցւոյն վրայ քահանայ ձեռնադրուե-լով: Տ. Դիոնեսիոս քահանայ խղճմտու-թեամբ շարունակած է երկար տարիներ թէ՛ հովիւի եւ թէ ուսուցիչի կրկնակ պաշտօն-ները, այս փոքր կղզիին մէջ, առանց հետա-մուտ ըլլալու աւելի ճոխ պաշտօններու եւ աւելի պերճ թաղերու: Վերջերս, աչքերը տկարացած էր, սակայն միշտ իր պարտքը կը կատարէր, Կիրակի օրերն եկեղեցական պաշ-տամանց ներկայ գտնուելով եւ գոց արտա-սանելով բոլոր աղօթքներն եւ ընթերցուած-ները: Ինք Գնալըի կազմակերպութեան ա-ռաջին վկան եւ գիւղին նահապետն էր»:

Ինչպէս սոյն տողերէն կ'երեւի, Տէր Դիո-նեսիոս նախ ծառի մը շուքին տակ կը ժողվէ եղեր գիւղին տղաքը, բայց յետոյ՝ երբ Հայ

բնակչութիւնը շատնալ կը սկսի հոն, կը կառուցուի Ս. Ներսէսեան անունով երկսեռ վարժարան մը[187], որ քանի մը տարի առաջ այրեցաւ:



Եկեղեցւոյ աջ ու ձախ դաւիթին մէջ կան մէկ մէկ պատկեր, որոնք 1859 Դեկտեմբեր 9 թուականը կը կրեն եւ ստորագրուած են՝ «Պատկերհան Անանիա խասգիւղցի»ի կողմէ: Առանցմէ դատ տաճարին մէջ ալ կան՝ «Խաչելութեան» մեծ պատկեր մը՝ 1852 թուականաւ, եւ «Ս. Աստուածածնայ» փոքրադիր նկար մը, 1830ին Սամաթիա գծուած, զոր 1919ին նուէր կու տայ ծանօթ գրագէտ Յ. Գ. Մրմրեան, ինչպէս գրուած է վրան:

Գիւղը ունի իր Գերեզմանատունը ծառազարդ ու ծաղկազարդ, որ կը գտնուի Եկեղեցւոյն ճիշդ ետեւը եւ ուր կը հանգչի վերոյիշեալ բազմերախտ Քահանայն՝ Տէր Դիոնեսիոս:

Բայց այս Գընալը (կամ Բոօթի) կղզին՝ Քաղկեդոնի պէս Բիւզանդահայ պատմութեան մէջ ունի էջեր:

Այսպէս՝ Վարդան անուն Հայը, որ 803ին ինքզինքը կայսր հռչակած էր, անյաջողութեան հանդիպելով կը քաշուի Բոօթի կղզին եւ հոն իր շինել տուած վանքին մէջ կը սկսի ճգնիլ ու պարապիլ երկրագործութեամբ,

---

[187] Տարեցոյց Ս. Փրկչեան Ազգ. Հիւանդանոցին, 1901, էջ 245:

բայց թշնամիները զինքը հանգիստ չեն թողուր, կ'երթան կը բռնեն ու աչքերը կը կուրցունեն 804ին, եւ այդպէս կոյր աչքով կը վերջացնէ հոն իր օրերը[188]:

Նոյնպէս Լեւոն Ե. Հայկազնը, որ «Մեծ կայսր» տիտղոսը վայելեց եւ թագաւորեց 813—820, չարաչար կը սպաննուի եւ կը թաղուի կղզիին գագաթը գտնուած Յունական վանքը[189], ուր անոր գերեզմանատեղին՝ իբրեւ թէ Հայագէտ Զօլագիտէս 1867ին ցոյց տուած ըլլայ կղզեբնակ ազգայիններու:

Կ'ըսուի թէ Բիւզանդահայ կայսրուհիներ ալ հոն թաղուած ըլլան ժամանակին, բայց ո՞ր աստիճանի ստոյգ է այս, կը վարանիմ գիտնալ:

Գընալըէն յետոյ կը գտնուի Պուրկազ (կամ Անթիկոնի) կղզին, ապա Հէյպէլի (կամ Հալքի) անուն բաւական մեծ կղզին, երկուքն ալ յունաբնակ: Միայն թէ այս կղզիներէն երկրորդին մէջ կան չորս հատ հայերէն արձանագրութիւն՝ 18րդ դարու վերաբերեալ, որոնք կը գտնուին այդ տեղի Յոյն Աստուածաբանական Դպրոցի Եկեղեցին, եւ հրատարակուած են Կ. Պոլսոյ «Ծաղիկ» թերթին մէջ[190]:

Սոյն Արձանագրութիւններուն առաջինը փորագրուած է պարտէզին մէջ գտնուած

[188] Հ. Կ. Տէր Սահակեան, Հայ կայսերք Բիւզանդիոնի, Ա., էջ 158:
[189] Անդ, Ա., էջ 194 եւ Բ., էջ 346:
[190] Ծաղիկ, Կ. Պոլիս, Գ. տարի, Թ. 32, 11 Սեպտեմբ. 1893:

*Ջրհորի մը բերանը ծածկող կլորակ քարի մը վրայ սապէս.*

ԱԿՆԱՑ ԳԷՂԷՆ ՋՕՐԷՑԻ ԼՈՒՍՀՈԳԻ ՄԱՀՏԵՍԻ ՄԻԽԱՅԷԼԻ ՈՐԴԻ ՄԱՀՏԵՍԻ ՆԻԳՕԼԱՅԻՆ ՅԻՇԱՏԱԿՆ Է· 1792 ՍԵՊՏ· 25:

*Միւս երեքը կը գտնուին եկեղեցւոյն մէջ։ Նախ՝ խորանը ծածկող փայտեայ վարագոյրին երկու կողմը կանգուն պղնձի խոշոր աշտանակներուն մէկ հատին վրայ՝*

ՅԻՇԱՏԱԿ Է ԱՅՍ ՔԱՐԵԱՑ ԱՇՏԱՆԱԿԸՍ ՄԱՀՏԵՍԻ ԵՂԻԱՅԻ ՈՐԴԻ ՅԱԿՈԲԻՆ ԹՎԻՆ ՌՄԻԱ (1772)։

*Յետոյ՝ Երրորդութեան պատկերի մը վրայ՝*

ՊՈՒԻՇԱՏԱԿ (*իմա՛ այս յիշատակ*) ԷԿԻՆԼԻ ՋՕՐԱԿԼԸ ՀԱՃԻ ՄԻՔԱՅԷԼ, ՀԱՃԻ ՍԱՀԱԿ, ՀԱՃԻ ՄԵԼԻՔ, ՌՄԻԷ (1778)։

*Իսկ Չորրորդը՝ Աստուածածնի պատկերի մը վրայ՝ սապէս.*

Ի ՅԻՇԱՏԱԿ Է ՋԱՅՍ ՋՕՐԷՑԻ ՄԱՀՏԵՍԻ ՆԻԳՕԼԱՅԻՆ ԵՒ ԿՈՂԱԿՑԻՆ ՄԱՀՏԵՍԻ ՄԱՐԻԱՄԻՆ ԹՈՒԻՆ 1779:

*Այս Արձանագրութիւնները՝ զորս անձամբ ալ երբեմն կարդացած եմ, ունին իրենց Յունարէնն ալ, ի՛նչ որ ապացոյց է թէ ատոնք բոլորն ալ Յունադաւան Հայերու (Հայ-Հոռոմներու) յիշատակներ են։*

* * *

Հէյպէլիէն *յետոյ է* Մեծ կղզին, *աւելի* Բուէնքիրօ *անունով ճանչցուած* *, *որ չա՛տ մեծ է եւ ուր ամառները հոծ բազմութիւն մը Հայերու օդափոխութեան կ՚երթար*:

*Գեղեցիկ տուներ եւ հովոցներ ու անտառներ ունեցող սիրուն կղզի մ՚է ուր Հայ կաթոլիկ ազգայինները միայն՝ ունին քարուկիր կոկիկ Եկեղեցի մը, որ Աբէլեան դերդաստանի բարերարութեամբը կառուցուած է* 1858*ին եւ որուն դուռը վերեւ կը կարդացուի շինութեան յիշատակութիւնը հետեւեալ բոլորագիր վերտառութեամբ*.

ՏԱՃԱՐՍ ՍՈՒՐԲ ԿԱՌՈՒՑԵԱԼ ՅԱՄԻ 1858. ԾԱԽԻՒՔ ԲԱՐԵՊԱՇՏ ԱՆՏՈՆԻ ԱԲԷԼԵԱՆ ԵՒ ՆՈՒԻՐԵԱԼ ՅԱՆՈՒՆ ԵՒ Ի ՓԱՌՍ ՍՐԲՈՅ ԿՈՒՍԻՆ ՎԵՐԱՓՈԽԵԼՈՅ ՅԵՐԿԻՆՍ:

*Միջոց մը Մանկապարտէզի պէս բան մը բացին հոս Հայերը, բայց երկար չի տեւեց. Եկեղեցի մ՚ալ շինելու խորհուրդը յղացան, սակայն անհետեւանք մնաց գործը*:

*Կղզեբնակ Հայերը յատուկ Գերեզմանատուն չունին հոս եւ իրենց ննջեցեալները փոխադրել կու տան* Գրնալը. *միայն թէ մեծ կղզին ետեւները անտառին մէկ անկիւնը յոյները յատկացուցած են տեղ մը, ուր օր մը պտոյտիս պահուն հանդիպած եմ ցիր ցան արձանագրութիւններու, զորս* 1914*ին ընդօրինակած եմ եւ կը դնեմ հոս, զանոնք*

* *Այս կղզիները խմբովին* «Իշխանաց կղզի» *ալ կոչուած են*:

*մոռացութենէ փրկելու համար ։ Ջուրս հատ ճին եւ չգիտեմ թէ կը մնա՞ն ցարդ ։*

*Առաջինը բաւական մեծկակ չիրիմ մ'է մարմարեայ, վերեւը դամնէ պսակի մէջ առնուած խաչ մը եւ ներքեւը երկաթագիր 12 տող փորագրուած հետեւեալը.*

ԱՍՏ ՀԱՆԳՉԻ
ՏԿ. ԳԱԹԻԿ Գ. ԲՐԻՄՕՖ
ԾՆ. 1879 ՕԳ. 17
ՎԽՃ. 1911 ՕԳ. 20
ԲԱՐԻ ԳՈՐԾՈՎ ԼԱՒ ԱՊՐԵՑԱՒ
ԿԵԱՆՔ ՎԱՂԱՆՑՈՒԿ
ԱՌԱՔԻՆՈՒԹԵԱՄԲ ՀԱՅՐԵՆԻ ՏԱՆ
ԿԱՑ ՆԵՑՈՒԿ
ՍԷՐՆ ԱՌ ԱՄՈՒՍԻՆ ԱՆՋՆՈՒԷՐ
ԵՒ ԱՆՊԱՅՄԱՆ
ԸՆԾԱՅԵՑԻՆ ՀԱՃԵԼԻ ԱՍՏՈՒԾՈՅ
ԵՒ ՄԱՐԴԿԱՆ

*Բաց սատի, քիչ հեռուն կը տեսնուի երկաթեայ խաչ մը վրան երկաթագիր եւ անթուական գրուած.*

ՊԵՏՐՈՍ ՇԸՐՎԱՆ

*Աստր մօտերը փայտեայ խաչ մը՝ վրան յունարէն նաեւ հայերէն տղեղ տառերով նշանակուած.*

ԲԻԷՌ ՏԷՐՏԷՐՕՖ
ՎԱԽՃԱՆԵԱԼ Ի 13Ն ԱՊՐԻԼԻ
1910

*Ջորրորդը փայտեայ փոքրիկ խաչ մը վրան.*

ԳՐԻՍ ՊԷՐՊԷՐԵԱՆ
1912 ՆՈՅ. 28

Դեռ կային ուրիշ հողակտորներ անգիր, անթուական, որոնք կը պատկանէին անտէր, անտիրական պանդխտութեամբ Մեծ կղզի ինկած Հայերու։

* *
*

Երեմիա Չէլէպիի է. գլուխը կ՚աւարտի այսպէս, բայց Ը. եւ վերջին գլուխին չանցած, կը գրէ «Բոնութիւն Պօստանճիի պաշուն ի ծովս», «Այլ իմն բան Պօստանճիի պաշունն», «Նորին այլ իր եւ բան» վերնագրով երեք մասեր, զորս կցած եմ ես է. գլուխին եւ շարունակած անոր թուագրութիւնը։

Չ՚արժեր որ պատմեմ հոս հին տեղի այդ Պօստանճիի պաշի կոչուած աւագակներուն ըրած գազանաբարոյ ու սոսկալի խժդժութիւններուն մասին Երեմիայի գրածները, բայց քանի՛ որ առաջին մասին 234 տողին մէջ կը յիշէ «Խարթալ» կոչուած գիւղը, հարկ կը համարիմ, որ Ը. Գլուխի ծանօթագրութիւններուն չանցած, այցելութիւն մը ընենք այդ տեղը, որ ունի Հայ բնակչութիւն եւ ազգային կարեւոր յիշատակներ։

* *
*

Գարթալ՝ գիւղ մ՚է Բոէնդիրօի (Մեծ կղզի) հանդէպ, Ասիական կողմը ծովեզերքին վրայ, ուր օտարազգի ժողովուրդի կողքին կը բնակին բաւական թուով Հայեր, որոնք ունին «Ս. Նշան» անունով քարուկիր սիրուն Եկեղեցի մը որ շինուած է 1857ին եւ ունի իր ճակատը հետեւեալ Արձանագրութիւնը.

ՈՂՈՐՄՈՒԹԵԱՄԲՆ ԱՍՏՈՒԾՈՅ ԿԱՌՈՒՑԱՒ ՏԱՃԱՐՍ Ս. ՆՇԱՆԻ ԱՐԴԵԱՄԲՔ ԱԶԳԻՍ ՀԱՅՈՑ ԵՒ ԱՌԱՏԱՆՈՒԷՐ ՕԺԱՆԴԱԿՈՒԹԵԱՄԲ ՔՐԻՍՏՈՍԱՍԷՐ ՀԱՐԱԶԱՏԱՑ ՆՈՐԱՏՈՒՆԿԵԱՆ ՍԻՄՈՆԻ, ՅԱԿՈԲԱՅ ԵՒ ՄԱՀՏԵՍԻ ԳՐԻԳՈՐԻ[191] Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ Տ. ՅԱԿՈԲԱՅ Ս. ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ. ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1857 ՍԵՊՏ. 1:

*Որչափ որ* 1857 *թուականը կը կրէ* Ս. Նշան *Եկեղեցին, բայց աւելի հին է անոր սկզբնաւորութիւնը:*

*Եկեղեցին ունի ձեռագիր Աւետարան մը, զոր* 1893*ին տեղւոյն Ազգ. Վարժարանը այցելած օրս գտայ հոն, խել մը անպէտ կարծուած եւ մէկդի նետուած պատառատուն գիրքերու կոյտի ներքեւ:*

*Քովս առի զայն, մաքրել տուի եւ Եղբորս հետ արծաթեայ ոսկեզօծ պահպանակներ շինել տալով, յանձնեցինք զայն Իզմիրլեան Մատթէոս Սրբազանին եւ խնդրեցինք որ կիրակի օր մը երթայ Գարթալ յատուկ պատարագ մատուցանէ, օծէ այդ Աւետարանը եւ յանձնարարէ որ անկորուստ պահուի եկեղեցւոյն մէջ այդ թանկարժէք Ձեռագիրը, որովհետեւ* «Ս. Նշան» *Եկեղեցւոյ շինութեան ամբողջ պատմութիւնը կը պարունակէ այն:*

*Բոլորագիր է, չա՛տ գեղեցիկ, եւ ա՛յնպիսի խնամքով գրուած, որ ընա՛ւ չի տարբերիր տպագրուածէ: Ունի գեղերանգ խորաններ, սքանչելի զարդագրեր, ծաղկէնկար–*

---

[191] *Սա Հայրն է Գաբրիէլ Նորատունկեանի, երբեմնի Նախարարին Թուրքիոյ:*

*ներ ու գունազեղ թռչնանկարներ, նաեւ կարեւոր յիշատակարան մը, որ թէեւ 1691 թուականը կը կրէ, բայց կ՚ենթադրեմ որ աւելի առաջ եղած ըլլալու է անոր ընդօրինակութիւնը, ինչպէս պիտի յայտնեմ զայս քիչ յետոյ:*

*Ձեռագրին սկիզբի երկրորդ թերթին առաջին էջին վրայ կը կարդանք՝ հետեւեալ Յիշատակագրութիւնը, որ կը յայտնէ Ս. Նշան Եկեղեցւոյ նախնական շինութեան՝ ի՞նչ կերպով եւ ո՞ր թուականին տեղի ունեցած ըլլալը, սապէս.*

«Ի թըւականիս Հայոց ՌՄԻԵԻՆ (1776) իշխանութեան տանկաց թագաւոր էր Սուլդան Համիթ նոցա, թվականն ՌՃՁԹին (1740) պատերազմն հետ Մոսկոֆին»:

Այս նեղութեան ժամանակին շինվեցաւ Սուրբ Նըշան եկեղեցիս. մէջն էր եւ սպասաւոր Տէր Յովակիմ եւ Տէր Պօղոս քահայնայք. իշխան եւ վերակացու՝ Եաղմուր օղլու մահտեսի Միքայէլ, խալփայ օղլու Գաբոէլ, խառդանի Պօղոս, Արեւելցի տիրացու Յովհան եւ բոլոր ժողովուրդեամբ մեծ հըրաշք երեւեցաւ ի գիւղս:

Ի հարապետութեանս Տիեառն Սրբազան Սիմէոն կաթողիկոսի, Կաթող. կոստանդնուպոլսոյ պատրիարք եւ առաջնորդ Աստուածաբան Զաքարեայ վարդապետին հրամանաւ հիմնեցաւ հաստատեցաւ նորոգեցաւ կառուցաւ շատ նեղութիւն եւ վիշտք կըրելով, մինչ ի մահ յանձն առնելով կաշառք եւ տուքանք

տալով մեծ եւ փոքրըս աշխատելով յօժվե-ցաւ ձեռամբ Սուրբ Երուսաղէմայ նըւիրակ Գաբրէլ վարդապետին յարին արքէպիսկո-պոսէ» :

*Որեմն 1776ին է որ կը շինուի Ս. Նշան եւ ի՜նչ մեծ նեղութիւններով, որոնց համար ուրիշ Յիշատակութիւն մը՝ որ նոյն թերթին երկրորդ էջին վրայ գրուած է, աւելի ման-րամասնութիւն կու տայ՝ հետեւեալ կերպով.*

«Ի յետին ժամանակս ի թագաւորու-թեանն Օսմանցւոց յառաջին ամի Սուլթան Համթին, եւ ի հայկազնէիս թուականութեանն ՌՄԻԵին (1776) եւ ի ծայրագոյն պատրիար-գութեան եւ ի կաթողիկոսութեանն Տեառն Սիմէոնի ամենայն Հայոց Սրբազան գահա-կալի, եւս ի պատրիարգութեան սրբոյ քա-ղաքին եւ մեծի Պօլսոյ Յովակիմ եւ Զաքա-րիա երջանիկազարդ վարդապետացն : Եւ հրա-մանաւ նոյնոյ արքային Օսմանցւոց Սուլթան Համթի, եւ Զաքարիա Պատրիարգին մեծի Պօլսոյ : Պատճառաւ տօնանմային վասն միոյ գաւակի գոլոյ թագաւորին, եւ յետ մեծի պա-տերազմին երկուց քաջաց ազգաց, այսինքն Օսմանցւոց եւ Մոսկոփաց ընդ միմեանս, տէր յաջողեաց, զոր կարացաք շինել յանուն սրբոյ Նշանի պայծառակառոյց եկեղեցի, զոր Տէր պահեսցէ հաստատ ի խնամս իւր : Եւ թէ ով ոք եղեւ վասն սորին շինման գլխաւորապէս ձեռներէց եւ առաջնորդ, զորս յականէ յա-նուանէ աստ յիշատակեմ եւ թէպէտ բոլոր

գիւղացիքն այսօրիկ ուղիղ սրտիւ եղեն ջանօղք. բայց խմբագլուխք եղեալ են սոքա. այսինքն Տէր Յովակիմ, Տէր Պօղոս, Եաղմըր օղլու մահտեսի Միքայէլ, խալֆայ օղլու Գաբրիէլ, Ղառղանի Պօղոս եւ արեւելցի տիրացու Յոհան. բազում կաշառս եւ առատ պարգեւս եւ երբեմն տուգանս եւս տալով, եւ յանախապէս կերպիւ կերպիւ տանջանս կրելով եւ յոլով խօսք եւ հայհոյանք լսելով եւ համբերելով հազիւ հազ վերջացուցին զշինումն գեղեցկակերտ յօրինմամբ եւ ամենավայելուչ ձեւով, որ ըստ իւրեանց դիտաւորութեան. վասն յորոյ տէր տացէ բարի վայելումն ամենեցուն: Նախ օծող սորին Երուսաղէմայ նուիրակ Գաբրիէլ արքեպիսկոպոս վարդապետն եղեւ ըստ նախասահմանութեանն Աստուծոյ: Որեմն յորժամ զայս ընթերցեալ իմանայք ո՛վ պատահօղք բանիս, մի՛ դանդաղիք զողորմիս հանելոյ պատնառացն սորին ի խորոց սրտէ, որ եւ Տէր ողորմեսցի ձեզ ամէն»:

*Այս երկու յիշատակութենէն զատ, ձեռագրին Զորրորդ թերթին՝ առաջին էջին վրայ Երրորդ* յիշատակութիւն *մը եւս սկսուած է գրուիլ, բայց կիսատ թողուած է. անշուշտ օտար մէկն էր որ ուզած է Եկեղեցւոյն շինութեանը մասին բան մը աւելել բայց չէ կրցած աւարտել, ո՞վ գիտէ ինչո՞ւ համար:*

*Ահաւասիկ այդ սկսուած եւ չի վերջացած յիշատակութիւնը, որ է.*

«Եւ ի հայրապետութեան Տեառն Սիմէոն Սրբազան կաթողիկոսի ամենայն Հայոց եւ ի պատրիարգութեան սրբոյ Երուսաղէմի Տեառն Պօղոսի երջանիկազարդ Աստուածաբան վարդապետի եւ ի Կոստանդնուպոլիս . . .» (*կիսատ մնացած*) :

Այս Յիշատակարանները հարեւանցի իսկ կարդալով՝ դիւրին է մակաբերել, թէ Ս. Նշանի 1776ի շինութենէն առաջ, մատուռ մը գո՛նէ գոյութիւն ունեցած ըլլալու է Գարթալի մէջ, քանի՛ որ կը յիշուին Տէր Յովակիմ եւ Տէր Պօղոս անուն Քահանաներ, որոնք անշուշտ կը պաշտօնավարէին հոն արդէն եւ որոնք ահա ուրիշ ազգայիններու հետ մեծ ջանք կ՚ունենան Եկեղեցւոյն շինութեան արտօնութիւնը ձեռք բերելու :

Յայտնի կ՚ըլլայ ուրեմն, թէ 16րդ դարու վերջերն իսկ, Հայեր բնակութիւն հաստատած էին Գարթալի մէջ, եւ կ՚ենթադրեմ՝ որ անոնք այգեգործութեամբ կը պարապէին, որովհետեւ Գարթալի Հայերուն շինած գինին, վաղուց մեծ համբաւ ունէր, ինչպէս կը լսէինք մեր Պապերէն մեր երիտասարդութեան ժամանակ :

* *
*

Այս ենթադրութեանս ապացոյց կրնայ համարուիլ այն թանկագին Յիշատակարանը զոր կը ներկայացնէ Պալըքլը Ազգ. Գերեզմանատունին մէջ գտնուած մեծկակ

Ջրհորը, եւ զոր իրենց ծախքովը փորել կուտան ՌՃԾԵ (1706) թուին, Ակնայ Ապուչեխ գիւղացի Կիւրղի եւ Մարիամի զաւակները՝ Մարտիրոս, Յովհաննէս եւ Գաբրիէլ եւ իրենց ընկերը՝ Հանի Սարգիս: Ջրհորը շինել տալով հանդերձ, պահապան մ'ալ կը կարգեն քովը եւ անոր ապրուստը ապահովելու համար Գարթալի մէջ այգի մը կը դնեն, եւ տարեկան եկամուտը այդ նպատակին կը յատկացունեն:

Ասի՝ կ'իմանանք Ջրհորին բերանը կանգուն քառակուսի երկու սիւներուն վրայ փորագրուած երկաթագիր Արձանագրութենէն, զոր 1913 Յուլիսին Վիեննական Մխիթարեան ողբացեալ Հ. Թովմաս Կէտիկեանի հետ մեծ դժուարութեամբ կրցանք ընթեռնուլ:

29 տողէ բաղկացեալ է այն. գիրերը խրարու ընդելուզուած եւ բաւական ալ մաշած ու եղծուած, զոր բարեբախտաբար յաջողեցանք երեւան հանել ու ընդօրինակել ամբողջութեամբ: Թէեւ 1931ին հրատարակեցի զայն «Հայ Բժշկական Արձանագրաքանութեանս» մէջ (էջ 45—46) բայց հոս ալ զայն զետեղել կարեւոր կը համարիմ, զի ցոյց կու տայ այն՝ Կ. Պոլսոյ հին հայ ժողովուրդին ազգասիրական զգացումները, մանաւանդ դէպի ննջեցեալները ունեցած երկիւղած յարգանքը:

Ահաւասիկ այդ Արձանագրութիւնը, որ չգիտեմ թէ կը մնա՞յ դեռ ցարդ:

ՊԱՏՃԱՌ ԵՂԵՆ / ՀԱՆԵԼ ԱՅՍ ՔԱՂՑ / ԸՐ ԶԸՐԻ
ՏԵՂԻ / ՑԱԿՆԱՑ ԳԵՂՋԷ / ՈՐ ԱՊՈԻՉԵՂ ԱՆՈԻԽԱ- /
ՆԻ ՈՐԴԻՔ ԿԻԻՐՂԻ ԵՒ / ՄԱՐԻԱՄԻ ՄԱՐՏԻՐՈՍ /
ՅՈՎՀԱՆՆԷՍ ԳԱԲՐ / ԻԷԼԻ ԱՅԼ ԵՒ ԸՆԿԵՐ /
ՍՈՅԻՆ ՀԱՃԻ ՍԱՐ / ԳՍԻ ԾԱԽԻԻՔ ՓՈ / ՂՈՎՔ
ԻԻՐԵԱՆՑ ՀԱԼԱԼ / ԱՐԴԻԻՆՔ ՎԱՍԸՆ ԸՄՊԵԼ /
ՈՑ ՊԱՍՔԵԼՈՅԸՆ / ԾԱՐԱՒ Ի ՔԱՇԵԼՈՑ / ԶՐՈՅՍ
ԵՒ ՏԱԼ ԸՄՊԵԼ / ԿԱՄԵՑՈՂԻ· ԱՅԳԻ / ՄԻ ԱՌԵԱԼ
Ի ՂԱՐԹԱԼՆ / ԳԻԻՂԻ ՎԱՍՆ ՀԱԽ ՏԱԼՈՑ /
ՍՈՐԱ ՄՇԱԿԻ ԶՔԻՐԱ / ԱՌՆԵԼ Ի ՏԱՐԷԳԼԽԻ /
ՏԱԼ ՎԱՐՁՍ ՍՈՐԻՆ / ԸՍՊԱՍԱՒՈՐԻ ԵԹԷ ՈՔ /
ԽԱՓԱՆԷ Ի ՏԷՐ ՊԱՏ / ԺԻ ԹՎՆ ՌՃԾԵ (1706) /
ԽՆԴՐԵՄՔ ՎԵՀԻՑ ԵՒ ՀԱ / ՐՑ ՄԵՐՈՑ ԸՄՊԵ /
Լ ԶՐՈՅՍ ԱՍԷՔ ԱՍՏՈՒԱԾ / ՈՂՈՐՄԻ:

* * *

*Սոյն Արձանագրութեամբ Գարթալի Հայութեան եւ անոր աղօթատեղիին սկիզբը կրնանք տանիլ 16րդ դարու վերջերը եւ համարել թէ* Ս· Նշան *Եկեղեցին երկու դարէն աւելի հնութիւն ունի:*

*Եկեղեցւոյ շինութեան վրայ վերագրեալ յիշատակարաններէն զատ, ձեռագիր Աւետարանին մէջ կայ նաեւ՝* Ս· Նշանի մասունքին *վաւերականութեանը համար երկու յիշատակութիւն, զոր կարեւոր կը համարիմ դետեղել հոս:*

*Առանց առաջինը կը գտնուի՝ Աւետարանին 9րդ թերթին երկրորդ էջին վրայ, եւ կը սկսի 8 տող ոտանաւորով, զոր գրած է, ինչպէս կը կարդանք մէջը, Կաղզուանցի Զաքարիա Փոքուզեան Պատրիարքին Եղբօրորդին՝ Տէր Պօղոս քահանայն:*

*Ահաւասիկ այն.*

Յայտնէ
Սուրբ Նշանի
յորոյ տալն՝ մերս
Սուրբ Նշան սրբոյ եկեղեցւոյս:

Ապերջանիկ Տէր Պօղոս ին
Եղբօրորդւոյ՝ Ազգասիր ին
Եւ բարեկարգ՝ Պատրիարգ ին
Զաքարիայ՝ Տեառն վեհ ին
Փոխուզեան սեռ՝ Կաղզըվան ցին
Որ ետ ընծայ՝ զայս զանձ ան գին
Ի յիշատակ՝ իւր եւ ցե դին
Ոտա եւ Մին՝ ընդ Ծայ թւ ին (1801)

«Յորդորմամբ կենդանի նահատակի սրբոյ էջմիածնի նուիրակ Գալուստ վարդապետի, որ աքսորեցաւ Իլիմեայ կղզին, նորա որդէքիր եւ սրբոյ գահին եւ Լուսաւորչի ծառայ տէր Պաղտասար Ֆիլեանենի եւ եապի սրբոյ Աթոռոյն, չնչին քահանայի յորդորմամբն եւ ձեռօքն ամբոքեցաւ սուրբ Նշանն այս եկեղեցւոյս, խնդրէմ ձեզանից մին հոգւոյ բաւ է»:

*Յաջորդ թերթին առաջին էջին վրայ ալ կը գտնուի դարձեալ վկայականը Տէր Պօղոսին որ 1778ի մահապարտժամէն փրկուած ըլլալուն առթիւ Ս. Նշանի մասունքը կը նուիրէ Գարթալի Եկեղեցւոյն, ինչպէս կ'իմանանք գրուածէն, որ է հետեւեալը.*

.... Պատրիարգ

Ազդէ զայս գիր՝ սակս զսոյն եկեղեցւոյ սրբոյ Նշանի՝ ուստի ընծայել՝ գոլն· քանզի ի ՌՄԾ (1801) թւոջ մերում եւ ի սեպտեմբերի Ժ· եւ Ե·ին, ի տօնի սրբոյ խաչի վերացման: Եղբօրորդի Պօղոս եւեթ քահանայ Կաղզըվանցիէ:

Եւ այս՝ է Տեառն Զաքարիայ՝ ազգասէր ······է Մեծի Պոլսոյ շնորհեալ գիրն եղբօրորդի վերոյգրեալ քահանայի՝ որոյ վկայականն կայ առընթեր նորին կնքեալ: Եւ սա՝ է մասն նորին՝ եւ սորին տալոյ պատճառն՝ ո՛չ այլ ինչ է՝ եթէ ոչ՝ ի մեծի մահուանն ի ՌՄԻԷ (1778) թուականիս մերոյ՝ աստ ժամանակ ինչ եղէ հրամանաւ վերոյգրեալ Ազգասէր ծնողի մերոյ, ըստ որում Պոլիսս կարի եւ յոյժ սաստիկ մահտարաժամ գոլոյն եւ ի զերծիլ գոլն մեր Աստուծով ի մահուանէն եւ յորժամ ստացայ աստուածով զսոյն սուրբ Նշանս՝ ի մասէ նորին ետու յիշատակ յաւիտենական՝ ըստ այնմ թէ երանի որ ունիցի զյիշատակ ի Սիօն քաղաքի արդարեւ սրբոյ եկեղեցւոյս անունն սուրբ նշան գոլոյն եւ սուրբ նշան ոչ գոլոյն՝ կարի ցաւեցայ եւ յորժամ ստացայ շնորհեցի՝ հանդերձ իմս կնքով կնքեալ· որոյ վայելն բարեաւ լիցի՝ եւ նորին շնորհիւն՝ տէր Աստուած զայն սուրբ եկեղեցիս եւ զայլս հաստատ եւ անսասան եւ անխարդախս պահեսցէ մինչ ի կատարած աշխարհի· ամէն:

*Այս Յիշատակարաններէն յետոյ, Աւե–*

տարանին ամենավերջին թերթերուն վրայ կը գտնենք ձեռագրին ընդօրինակութեան Յիչատակարանը բաւական երկար, զոր կը ներկայացնեմ ամբողջութեամբ.

«Փառք ամենասուրբ երրորդութեանն եւ միասնական աստուածութեանն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Արդ եղեւ աւարտումն Աստուածախօս մատենիս եւ սրբոյ աւետարանիս Յիսուսի Քրիստոսի յամի ծննդեանն Քրիստոսի ՌՈՂԱ (1691). իսկ ի Հայոց թվականի ՌՃԽ (1140), ի հայրապետութեան սրբոյ աթոռոյն էջմիածնի Տեառն Եղիազարու սրբազան կաթողիկոսի, եւ ի թագաւորութեան ազգիս Տաճկաց որ Օսմանցիք կոչին Սուլթան Ահմէտի, ի մայրաքաղաքս Կոստանդինուպոլիս, ի դառն եւ ի դժար ժամանակիս, որ նեղութեամբ լի է ամենայն աշխարհ. զի Ժ. տարի է որ պատերազմին տաճկունք ընդ Ալամանաց ազգին, զոր գնացին խրոխտանօք թէ առցեն զերկիրս ի Նէմցէու՝ նոքա զսոսա յետս դարձուցեալ եկին առին զՊուտիմ եւ զՊէլիկրատ եւ զՆիշ մինչեւ ի Սօֆիա. զոր հերուն ամի կրկին գնացին Տաճկունք եւ առին զՆիշ եւ զՊէլիկրատ, զի զօրքն Ալամանաց ոչ գոյին անդ՝ այլ գնացեալ էին ընդդէմ Ֆռանսիզու: Բայց այսմ ամի կրկին զօրօք բազմօք գնացեալ անցին զԹունա գետ, եւ ի տեղին որ Ջէմին կոչեն դիպեալ են ճակատ առ ճակատ, եւ զօրքն Ալամանաց յաղթեալ են զօ-

րացն Տաճկաց եւ բաղում կոտորածս արա–
րեալ. մինչեւ վէզիրն որ էր Թէօփրուլուին
ողան, եւ տէֆտէրտարն, եւ հէնկիչէրի աղան
եւ այլ մեծամեծ փաշայք եւ չօրպաճիք ան–
կան ի պատերազմին. եւ մնացեալքն սա–
կաւք հազիւ ի Պէլկրատ մտեալ ապրին,
զոր տէր Աստուած խաղաղութիւն պարգեւէ:
Եւ յայսմ ամի անօրինեալ Տաճկունք առին
խարաճ[192] ի քահանայից եւ ի սեւագլխաց[193]
Հայոց եւ Յունաց. թէպէտ ողորմութեամբն
Աստուծոյ յետս բարձաւ բաղում աշխատու–
թեամբ եւ կաշառօք, բայց զառածնին յետ
չի տվլին. իսկ պատճառ առնելոյ խարաճին
Քիրլի տէֆտէրտարրն, եւ Սարի Օսմանն էր,
զոր տէր Աստուած եղեւ վրէժխնդիր, եւ
երարձ զչարքըն մերձ ընդ մերձ: Եւ եւս մի
նեղութիւն այլ ժամանակիս այս, զի փողն
ճԻրն Ա. ղուշ էր. ի խարաճն եւ ի միրին չառ–
նելնուն սակ գնաց մինչեւ Դծըն Ա. ղուշ եղեւ.
եւ պազըրկեանն զախրա չեբեր, եւ եղածն
այլ պահեցին. ամէն բան սղցաւ. Ա. հօխա
միսն Ծ բատկ եղեւ. Ա. հօխա պանիրն Զ բատկ,
Լ. տրմ հացն Ա. բատկ, եւ զայլ ամենայն բան
սոցա նման իմացիք, եւ այնք եւս անդատանե–
լիք, զոր բաղում օր խանութք եւ չուկայք
փակեցան, եւ մարդեր կախեցին թէ ճԻրն
Ա. ղուշ անցնի փողին, այլվի չեղեւ, դեռ եւս
այն դառնութեանց մէջ կամք, զոր տէր Աս–
տուած ի քաղցրութիւն փոխարկեսցէ: Արդ

[192] Տեսակ մը տուրք:
[193] Վարդապետ:

որք հանդիպիք սորա աւետարանիս տեսութեան Աստուած ողորմի ասացէք հոգւոյ գծողիս մեղաւոր Տիրատուրիս, նաեւ զաւկաւ յիշատակարանս գծագրողիս Արիստակէս իրիցուս, եւ ծնողաց իմոց եւ դաստոհմիցս եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոս»:

Յայտնի է որ այս Յիշատակարանը գրուած է ո՛չ թէ Աւետարանին ընդօրինակիչ՝ Տիրատուրէն, որ դո՛ւցէ վախճանած էր 1691ին, այլ Արիստակէս Երէցէն․ զի Աւետարանին ու այս Յիշատակարանին գիրերը բոլորովին տարբեր են իրարմէ, եւ գիտենք՝ թէ ատոնք ո՞վ էին:

* *
*

Այս Աւետարանը վերջին էջին վրայ ունի Յիշատակարան մը եւս անթուական, գրուած մահտեսի Մաթէոս անուն անձէ մը, զոր սոյն Ձեռագիրը կը նուիրէ Ս․ Նշան Եկեղեցւոյն, գրելով հետեւեալ տողերը․

«Յիշատակ է սուրբ Աւետարանս Նարվէրցի մահտեսի Եսայի որդի մահտեսի Մաթէոսին կենդանի հոգոյն որ յիշատակ ի դուղըն Խարթալ ի դուռըն սուրբ Նշան եկեղեցւոյն. ամէն:

«Օ ոք որ այս սուրբ Աւետարանս կամ գրաւ տայ կամ գողանայ կամ ծախէ յ ըզպատիժըն կայենի եւ յուդայի առցէ»:

Թէեւ թուականը, կը պակսի, բայց դիւրին է գիտնալ, թէ Աւետարանը Եկեղեցւոյն

*նուիրուած է Ս. Նշանի մատենիքին գրուելէն այսինքն 1778էն յառաջ։*

*Ինչպէս վերեւ յայտնեցի՝ այն Աւետարանը իբրեւ անպէտ ինչ մէկդի նետուած վիճակի մէջ գտնալէս յետոյ, մաքրել տուած եւ արծաթազօծ կողքերու մէջ զետեղել տուած էինք։*

*Այս կողքերուն առաջինը* խաչելութիւնը *կը ներկայացնէ վրան* Յ. Ն. Թ. Հ. *տառերով, իսկ երկրորդը՝* Քրիստոսի Յարութիւնը, *որուն ներքեւը է գիրը եւ ապա հետեւեալ յիշատակագրութիւնն է փորագրուած*[194].

«Թաւշ-արծաթի կեղեւս Ս. Աւետարանիս
շինեցաւ ծախիւք Թորգոմեան Եղբարց՝
Վահրամայ բժշկի եւ Գէորգայ Երկրագործի
յամի Տեառն 1894 յունվ. 10[195]»։

*Այսչափ են ահա Գարթալի* Ս. Նշան *Եկե-*

---

[194] Հայ Բժշկական Արձանագրաբանութիւն, *Վենետիկ* 1931, *էջ* 164—165։

[195] *Աւետարանին* 120*րդ էջին վրայ գրուած է նաեւ հետեւեալը, զոր կը կարծեմ թէ օտար գրիչ մը՝ ժամանակագրական յիշատակութեան համար յետոյ դրոշմած է հոն զայն՝ ըսելով.*

«Տէր Եղիազար Անթապցի։ Սա յամի 1680, յետ վախճանի Յակոբ կաթողիկոսի հաստատի յաթոռ իւր յԵրուսաղէմ, եւ յամի 1682 գնայ եւ նստի յէջմիածին։ Յաւուրս սորա՝ 1688 Մեծն Պետրոս թագաւորէ ի վերայ Մոսկովաց»։

*(Եղիազարի մասին մանրամասն գրած եմ Ա. հատորիս* 160—171 *էջերուն մէջ եւ Յակոբ կաթողիկոսի մասին ալ Բ. հատորիս* 604—605 *էջերուն մէջ։) Բայց գրուածին մէջ* 1680 *թուականը սխալ է. Եղիազար ինքնակոչ կաթողիկոս եղած է* 1666 *կամ* 1667*ին եւ Էջմիածին փոխադրուած է Յակոբ կաթողիկոսին մահէն յետոյ* 1683*ին չարը խափանելու համար։*

*ղեցւոյ եւ այն տեղի Հայ բնակչութեան մասին եղած տեղեկութիւնները, զորս կ՚աւանդէ մեզ այն Ձեռագիր Աւետարանը:*

* *
*

*Եկեղեցին՝* 1776*ին մեծամեծ զոհողութիւններով եւ անօրինակ դժուարութիւններով շինուելէ յետոյ, չի մոռցուիր վարժարանի պէտքը ու չա՛տ չանցած Ս. Նշանի քովիկը ժողովուրդին լումաներովը կը կանգնուի փայտաշէն տուն մը՝ իբրեւ Դպրոց, զոր քառորդ դար մը եւ աւելի վերջ,* Տիւզեան մեծանուն Յովհաննէս գրասէր Չէլէպին *վար առնել կու տայ եւ* 1812*ին տեղը կառուցանել կու տայ նոր մը, որուն աւարտումը դժբախտաբար չի կրնար տեսնալ իր մահուան պատճառաւ:*

*Այսօր զաւակները սակայն շինութիւնը յամբոկ կ՚ածեն եւ Դպրոցին մէջ կը գետեղեն հետեւեալ Արձանագրութիւնը, զոր անձամբ քաղած ու խրկած է ինձ Եղբայրս Գէորգ Թորգոմեան.*

ՅԻՇԱՏԱԿ ԱՐԴԱՐՈՑՆ ՕՐՀՆՈՒԹԵԱՄԲ ԵՂԻՑԻ,
ՅՈՐ ՄԱՐՄՆՈՎ ՄԱՀԱՑԵԱԼՆ, ԱՀԱ ԿԱՅ ԿԵՆԴԱՆԻ:
ԱԶԳԱՍԷՐ, ՄԱՐԴԱՍԷՐ՝ ԱՄԻՐԱՅՆ ՊԱՆԾԱԼԻ՝
ՏԻՒԶԵԱՆ ՎԵՀ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԳՐԱՍԷՐ ՇՆՈՐՀԱԼԻ,
ՍԱ ԱՌ ՍԷՐ ԻՒՐ ԱԶԳԻՆ ԵՒ ՄԱՆԿԱՆՑ ԱՂՔԱՏԻՆ՝
ԲԱՐՁՐԱՑՈՅՑ ԶԱՅՍ ՇԻՆՈՒԱԾ՝ «ՊԻՏԱՐԱՆ ԸՆԴՆՄԻՆ»,
ՊԻՏԱՐԱՆ, Ի ՀԱՆԳԻՍՏ ՊԵՏՈՒԹԵԱՆ ԱԹՈՌՈՅՆ
ԱՅԼ ԱԻԱ՛Ղ ՍԵԱՒ ՄԱՆԳԱՂ ՎԱՂԱՀԱՍ ՕՐՀԱՍԻՆ

ՄԻՆՉ ՉԷՐ ԱԻԱՐՏԵԱԼ ԶԹԵԱԼ ԿԵՆԱՑՆ ՀԱՏԻՆ
ՍԱԿԱՅՆ ՊԵՐՃ ՇԱՌԱԻԻԴ ՅՈՎՀԱՆՆՈԻ ԴԻԻՑԱԶԻՆ
ՍԻՐՈՎ ԵԻ ՅՕԺԱՐ ԶԱՅՆ 'Ի ԿԱՏԱՐ ԱԾԻՆ։
ԱՐԴ 'Ի ՁԵԶ՝ ՎԵՐԾԱՆՈՂՔ՝ ՆԿԱՐԵԱԼ ԶԱՅՍ ՈԳԻՆ
ԱԶԳԱՍԷՐ ԼԻՆԵԼՈՎ ՅԻՇԵՑԷ՛Ք ԶԱՅՍ ՀՈԳԻՆ։
ՍԿՍԵԱԼ 10 ՄԱՐՏԻ, ԱԻԱՐՏԵԱԼ 'Ի 25 ԱՊՐԻԼԻ 1812։

*Տիւզեան Յովհաննէս Չէլէպիի յեղակարծ մահը որուն պատճառը Չրգողութիւնը*[196] *եղած է, մեծ ցաւ ազդած է ամբողջ Ազգին*[197], *եւ մեծահամբաւ Հայազէտ Եղեկեան*

[196] Ազգաբանութիւն ազնուական տոհմին Տիւզեանց, *գրեց Հ. Գարր. Մէնէվիշեան, Վիեննա* 1890, *էջ* 22։

[197] *Տիւզեան Յովհաննէսի մահով կիսատ մնացած այս վարժարանին շինութիւնը կ'աւարտի ջանիւք անոր զաւակներուն, որոնք էին* Տիւզեան Յակոբ, Կարապետ *եւ* Պօղոս։ *Ասոնց առաջինը* Սագըզ *կղզին կ'աքսորուի՝ զոհ ըլլալով զրպարտութեան, բայց երբ հոնկէ դէպի Եւրոպա փախուստ տալու կը պատրաստուի, կը բռնուի* 1819 *Յուլ.* 12*ին* (*Պատմ. Ա. Պէրպէրեանի, էջ* 456—468) *եւ իր* Կարապետ *ու* Պօղոս *եղբայրներուն հետ արքունի փողերանոցը կը բանտարկուի*։

*Փողերանոցի բանտէն երեքը մէկ կ'աքսորուին Կեսարիա* 1820 *Փետրուար* 26*ին, բայց* 1823 *Ապրիլ* 15*ին, իրենց անմեղութիւնը հաստատուելով կը դառնան Կ. Պոլիս, եւ կը վայլեն իրենց ազգանուէր գործունէութեամբ*։

Յակոբ Տիւզեան *իր կեանքը կը կնքէ* 1847*ին*։ *Մեծանուն Հ. Արսէն Բագրատունի կ'այրէր այդ միջոցին Տիւզեանց քով, եւ ներկայ կ'ըլլայ Յակոբի վերջին վայրկեաններուն եւ յետոյ անոր յիշատակին կը տողէ սքանչելի Ողբերգ մը* («Տաղք Մխիթարեան վարդապետաց, *Վենետիկ* 1852. *Հատ. Ա., էջ* 200), Ի մահն վեհազգին Յակոբայ Տիւզեան իշխանապետի *վերնագրով, որուն վերջին տողերը իբրեւ տապանագիր սոյնս կը կրջանային*.

Արձանագիր զայս քանդակեալ յալեօք,
Աստ եւեթ հանգեաւ Յակոբ ի զոհելոյ զանձն իւր
ազգին,

Յովհաննէս Պատուելին, որ նշանաւոր Գէորգ Պալատեցիի Տապանագիրը գրած է․ կ՚ողբար անոր կորուստը սքանչելի տողերով, զորս Գ. Մանուկեան (Հնասէր) հրատարակեց 1931ին «Բազմավէպ»ին մէջ (էջ 252—253) առանց յայտնելու՝ թէ կը վերաբերէր այն Յովհաննէս Չէլէպի Տիւզեանի. մինչ հանգուցեալ Տէր Յովհաննէս Աւագ Քահանայ Հինքեարպէյէնտեանէ ստացած եմ ժամանակին մէկ օրինակը այդ ողբերգու Տապանագրին:

Յարգելու համար յիշատակը Յովհաննէս Չէլէպիին, որ 1812ին հաստատած էր նաեւ Կ. Պոլսոյ մէջ «Արշարունեաց» բարենպատակ Ընկերութիւնը պարտք ինձ կը համարիմ ներկայացունել հոս մեծանուն հայկարան Եզեկեանի գրածը՝ որ է․

ԶԻԱ՞ՐԴ ՄԹԱԳՆԻ՝ ՈՍԿԵՀԵՐ ԱՐՓԻՈՅՍ՝
ԼՈՅՍ ԱԿՆԱՊԱՐԱՐ,
ԱՌ Ի՞ՆՋ ԿՈՂՈՊՏԻ՝ ՏԱՆԸՍ ԹՈՐԳՈՄԱՅ՝
ՊԱ՛ՐԾԱՆՔ ՔԱՋԱՓԱՌ:
ԶԻ՞ ԴՈՒ ՄԱՐԴԱԾԱԽ՝ ՅԱՆՅԱԳՈՒՐԴ ՎԻՐԱԳ՝
ՕՐՀԱՍ ԱՆԱՉԱՌ,
ԶԻ՞ ԴՈՒ ԾԱՍՔԵՅԵՐ՝ ՅԱՆՀԱՄԲՈՅՐ ԺԱՆԻՍ՝
ԶՎԵՀԸՍ ՊԱՅՔԱՐ:

---

Տերութեանն եւ իմաստից ըզքաղցր արեւն ընկէց ի գին,
Մինչեւ իջեն երկնից բիբք աստեղք շողեալ ի յերկիր՝
Բեւր աչք մըտերիմք ցօղեցեն զայս դիր:

Տիւզեան Յակոբ Չէլէպի՝ ինչպէս գրած եմ արդէն (Ա. հատոր, էջ 295) գրասէր ու գրագէտ էր:

ՄԻԹԷ Ո՞Չ ԳԻՏԵՍ՝ ԶԻ ՍԱ ՀԱՅՐԵՆԵԱՑ՝
ԷՐ ՊԵՏ ԵՒ ՊԱՏՈՒԱՐ,
'Ի ՍԱ ՑԵՑԵԱԼ ԿԱՅՐ՝ ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ
ՅՈՅՍ ԹԵՐԱԿԱՏԱՐ:
Ո՞Չ ՍԱ ԱՅՆ ԻՑԷ՝ ՈՐՈՎ ՊԱՆԾԱՆԱՅՐ
ՈՂԻՄՊԵԱՆ ԿԱՃԱՌ,
ՆԱԽԱՆՁԷՐ ՈՐՓԷ՝ ՆՈՐԱԳԻՒՏ ՅԵՐԳՈՑ՝
ՔԱՂՑՐԱԼՈՒՐ ՔՆԱՐ:
Ո՞Չ ՍԱ ԱՅՆ ԻՑԷ՝ ՈՐ ԶԵՂԻԿՈՆԻ՝
ԻՄԱՍՏԱՃԵՄ ՊԱՐ
ՀՐԱՒԻՐԷՐ 'Ի ԳԱԼ՝ 'Ի ՄԵՐ ԿՈՐԹԱՑԵԱԼ՝
ՄԱՍԻՍ ԲԱՐՁՐԱԾԱՅՐ:
Օ՜Ն Ե՛Կ ՈՂՔ ԱՌԻՑ՝ ԸՆԴ ՔԵԶ ՏՈՒՆ ՏԻԵԶԵԱՆՑ՝
ԸՆԴ ՔԵԶ ՎՃՏԱՀԱՐ,
ԶԻ ՍԱ Ո՛Չ ԵՀԱՍ՝ ՄՕՏԱԼՈՒՏ ՄԱՀՈՒԱՄԲ՝
ԱՅՆԸՄ ԶՈՐ ՏԵՆՉԱՅՐ:
ՄԻ՛ ԴՈՒ ԱՆՅԱՒՈՐ՝ ԱՅՐ ԿԱՆԱՅԱԾԻՆ՝
ՄԻ՛ ԴՈՒ ԶԻՍ ՈՂԲԱՐ,
ԹԷՊԷՏ ԵՍ ՄՆԱՑ՝ ԱՅԼ ԿԱՄ ԿԵՆԴԱՆԻ՝
ՅՈՐԴԻՍ ԻՄ ՊԱՏՃԱՌ:
ՆՈՔԱ ՊՃՆԵՍՑԵՆ, ՆՈՔԱ ԿԱՆԳՆԵՍՑԵՆ՝
ԶԱԹԵՆԱՑ ՏԱՃԱՐ,
ՆՈՔԱ ԼԻՑԻՆ ՓԱՌՔ՝ ՆՈՔԻՆ ԵՒ ՊԱՐԾԱՆՔ՝
ՀԱՅՐԵՆԵԱՑ 'Ի ՍՊԱՌ:

*Վերջին չորս տողերը ակնարկութիւն են Գարթալի վարժարանին շինութեան, որ Հիմնադիրին վերահաս մահուամբը կիսատ մնացած է եւ զաւակները աւարտած են զայն:*

* * *

Ս. Նշան *Եկեղեցւոյ 1857ի վերաշինութենէն յետոյ, Թաղին վարժարանը, հիմնադիր Տիգրան Յովհաննէս Չէլէպիի մեծագործութիւնը յայտնող Արձանագրութիւնը անվթար պահելով հանդերձ, իր անունը փո–*

*խած ու եղած է* «Պէզճեան», *վասն զի Յա-րութիւն Ամիրայ Պէզճեան, որ Տիւզեանի շնորհիւ յառաջադիմած էր, վերաշինած է զայն ի յիշատակ իր մեծանուն բարերարին ինչպէս մանրամասն կերպով ատոր պատմու-թիւնը հրատարակեց Մելքոն Աստուր*[198] :

*Բարեկեցիկ գիւղ մը եղած է Գարթալ եւ տեղւոյն Հայերը մեծ մասամբ զբաղած են այգեգործութեամբ եւ գինեգործութեամբ, ինչպէս ըսի վերեւ: Ասոնք ունեցած են՝ ըստ աւանդութեան, ընդարձակ այգիներ, որոնք կը տարածուէին եղեր երբեմն, Գարթալէն մինչեւ իր ետեւը մէկ ժամ եւ աւելի հեռաւո-րութեամբ գտնուած* Նաֆանըֆ *անուն ծովա-դիտակ բլուրը, բայց այժմ այդ այգիներուն հետքը անգամ չի կայ, խոպան ու անմշակ դաշտեր են, եւ արդէն Գարթալցի Հայերն ալ շա՜տ նուազած են եւ աղքատացած՝ շնորհիւ* 1915—1916*ի տեղահանութիւններուն :*

*Գարթալի մէջ ծնած է* 1822*ին, նշանա-ւոր Սրբուհի մայրապետ Գալֆայեանը, որ իր անուանակիր Որբուհիանոցը հաստատած է* 1866*ին Խասգիւղ, եւ կը հանգչի այդ շէնքին մատուռին ձախ կողմը* (*տե՛ս Հատոր Բ.*, *էջ* 443—445) :

*Գարթալ գիւղով կը վերջանայ ահա* «Ստամպոլոյ Պատմութեան» *Է. գլուխին Ծանօթագրութիւններս :*

---

198 *Տե՛ս* Ժամանակ *թերթ Կ.Պոլսոյ*, 1934 *Յունիս :*

## ԳԼՈՒԽ Ը.

Երեմիա իր Պատոյին այս Գլուխը ամբողջովին կ'ուղղէ իւր հին Վարդապետին, եւ առաջին չորս տողովը ներողութիւն կը խնդրէ անկէ ըսելով·

Տող 1· «Ո՛վ տէր վարդապետ իմ ճան
չըրջելոյ եղեւ արդ վախճան.
Տող 2· Ըստ կարեացս եւ մի՛ մեղադրել՝
Այս եւեթ հակիրճ գըրեցան:
Տող 3· Ծանի՛ր զի այսք ընդ բոլոր՝
Արտաքոյ պարապիս տեսան·
Տող 4· Զի զմէջ քաղաքին Թողաք՝
Մեզ շատ է առել արդ դյնքան»:

Այսինքն՝ ո՛վ Տէր Վարդապետդ իմ հոգիս, ահա մեր շրջագայութիւնը վերջացաւ, կ'ըսէ, կը խնդրեմ որ ինձ մեղադրիր չըլլաս· կարողութեանս ներածին չափ այսքան մը համառօտ կերպով գրած ըլլալուս, եւ գիտցի՛ր որ այս նկարագրածներս բոլորն ալ քաղաքին պարիսպէն դուրսը տեսնուածներուն կը վերաբերին, մէջը եղածներուն մասին բան մը չգրեցի, զի պատմուածներն ալ բաւական շատ եւ երկար եղան:

5րդ տողէն սկսած մինչեւ տ. 49 կը յայտնէ թէ արքունիքին եւ պալատին խել մը սովորութիւններուն վրայ չէ խօսած, ոչ ալ՝ թէ արքային քովը մտնող ելլող պաշտօ-

նեանները ի՞նչպէս են, սպասաւորները ի՞նչպէս կը ծառայեն եւայլն, Եէնիչէրի, Պօստանճի պաշի եւ Սիպահի կոչուած զինուորներու խումբը նկատի չէ առած, եւ կը յաւելու՝ թէ տաճիկներու պատերազմները եւ գրաւած քաղաքները նիւթ չ'առներ իրեն, եւ չէ ուզած նկարագրել Թագաւորական պարտէզ–բուրաստանները, գահը, պալատը եւ քաղաքը շրջապատող ծովերը ու ցամաքը երկարող գեղատեսիլ ծովածոցները, որոնց Եւրոպացիները աչք ունին շարունակ:

Երկրին արտադրած բերքերը, պտուղները, ծուկերն եւ վաճառականութիւնը, առուտուրը չի նշանակեր, ո՛չ ալ շէնքերը, սյազմաները, մզկիթները եւ մզկիթի վերածուած յունական եկեղեցիները. չ'ուզեր իսկ խօսիլ դպրոցներու վրայ եւ այս առթիւ կ'արձանագրէ հետեւեալ տխրալից՝ բայց նշանակալից տողերը.

Տող 50. «Ոչ մէքթէպից հայեցաք՝
Ընդ որ զմանկունսն ի մարզումն տան:
Տող 51. Մեզ ո՛չ մէտրէսէք պիտոյք՝
Քանզի մերս՝ որ խափանեցան,
Տող 52. Ցաւ է մեզ դպրոց զխանել՝
Անգլուխ ազգ մեր 'ւ անիշխան»:

Ակնարկ իսկ չնետեց՝ կ'ըսէ, մէքթէպներուն (դպրոց) վրայ ուր տղաքը կրթութիւն առնելու կը խրկեն, պէտք չունինք՝ կը յարէ, անոնց մէտրէսէները (դասատուն) գիտելու, եւ կը ցաւինք որ «մերինները խափանուեցան»:

Երեմիա Չէլէպիի կենսագրութեանը մէջ (Հատոր Ա., էջ 181) զետեղած եմ անգամ մը նոյն տողերը եւ ըսած՝ թէ ատոնք կը յայտնեն, որ 17րդ դարուն Կ.Պոլսոյ մէջ Հայ վարժարաններ գոյութիւն ունէին բայց փակուած, ջնջուած են դժբախտաբար: Եւ միթէ կարելի՞ էր որ Կ. Պոլսոյ Հայ գաղութը ապրէր առանց վարժարանի երբ Երեմիա Չէլէպիի պէս գիտնական անձ մը Կ. Պոլսոյ ազգային մտաւորականութեան փայլը եւ պարծանքը կ՚ըլլար եւ իրեն հետ ուրիշ ուսումնականներ ալ հռչակ կ՚ունենային:

Բայց ո՞ր տեղն էր Երեմիայի աւարտած այդ Դպրոցը. ե՞րբ եւ ի՞նչպէս էր այն բացուած. ահա ատոր պատմութիւնը, զոր կ՚ուսանիմ Երեմիայի՝ Ամրօ Չէլէպիի վրայ գրած՝ «Վիպասանութիւն» ոտանաւոր աշխատութենէն, զոր յիշատակած եմ Բ. Հատորիս մէջ (էջ 578—580), եւ ուրկէ յայտնի կ՚ըլլայ՝ թէ այդ Դպրոցը կը գտնուէր, Կ. Պոլսոյ Հիսար-Տիպի կոչուած վայրին՝ վաղեմի «Ս. Նիկողայոս» Եկեղեցին[199]:

---

[199] Այդ մասին Երեմիայի գրածէն յառաջ կը բերեմ տողերս.

«Հազար հարիւր եւ իններ Հայոց թուական
(1109 + 551 = 1660)
Որ մեծ կրակն եղեւ ի չէնս Բիւզանդեան
Զկոծ եւ ըզվիշտ եկաց բնակաց ազգին համայն
Եւ ըզվընասըն քաղաքիս անտանական:
. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

*Այս Եկեղեցին* «Ս· Սարգիսի» *հետ կ՚այրի 1660ին եւ չա՛տ չանցած կը վերաշինուի· սակայն Կառավարութեան ականջը կը հասցընեն թէ առանց արտօնութեան եւ հրամանի է այն շինուած, որով Տաճիկները զայն քանդել կը սպառնան: Խնդիրը կը հաղորդուի Աղբօ Չէլէպի մեծ ազդեցիկ Հայուն, որ, ինչպէս պատմած եմ* (*Հատոր Բ·, էջ* 578), *անմիջապէս հրաման կը խրկէ Երեմիային, որպէս զի Եկեղեցւոյն խորանին առջեւը ամբողջովին պատ մը հիւսել տալով ծածկէ, ու դպրոցի զայն վերածէ:*

*Երեմիա անյապաղ կը կատարէ Աղբօյի յանձնարարութիւնը, խորանը պատով կը ծածկուի եւ Եկեղեցին արդարեւ կը վերա–*

---

*Յորս եւ ի դէպ զեկեղեցեաց ասել ըղձան*
*Որք ի հրրոյս բոցակիզեալ աւերեցան*
*Սուրբ Նիկօլեայ եւ Ս· Սարգսի Հայոց միայն:*

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

*Պարոնըն մեր այն Չէլէպիս որ Աբրահամ*

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

*Սա յօժարեալ սիրով սրտին հոգեգականն*
*Կամէր շինել բայց երկնչէր ի յարքունեան*

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

*Արդ, Չէլէպւոյն զսուրբ Նիկօլեայ տեղին առեալ*
*Եւ ժողովուրդք նորա հաճեալ յայն խնդացեալ*

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

*Ձնիկողոսեայ սորայն պատճառ իմ ճառեցեալ*
*Չէլէպին անդ որ օտար աշխարհ էր զնացեալ*

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

*Խրրատ վասն այսմ առ մեզ անդուստ փութացուցեալ*
*Թէ զխորանըն սրբութեան մեր յօրինեալ*
*Որով զերեսըն պահարան խրրու ծածկեալ*
*Եւ ըղյատեանն մինչ ի դրունս ի բաց թողեալ*
*Հիւսիս հարաւ բարձր ի յերկրէ բազմոց շինեալ*
*Ամս ինչ զպրոց ժողովրդեան իրր զայն ցուցեալ»:*

ծուխ Դպրոցի՝ 1662ին։ Հայ մանուկներ կը սկսին յաճախել հոն երամովին, եւ թերեւս Երեմիա ալ դասեր կու տար անոնց․ բայց այնատենի Պատրիարքը՝ Ղազար Սեբաստացին ո՞վ գիտէ ի՞նչ նպատակով կամ ակնկալութեամբ, կը գիմէ մատնութեան չար արարքին, եղելութիւնը իմաց կու տայ Կառավարութեան, որ անմիջապէս մարդ կ՚ուղարկէ եւ հիմնայատակ կործանել կու տայ շէնքը․ եւ ատոր համար է ահա, որ սրտառուչ ցաւով կը գրէ՝ «Բանզի մերս որ խափանեցաւ, ցաւ է մեզ զայլոց դիտել», ու Ղազար Պատրիարքի հացէին ակնարկութիւն ընելով կը գոչէ՝ «Անզգուշ ազգ մեր 'ւ անիշխան» [200]։

Այս տեղ էր ահա վերոյիշեալ Դպրոցը, որուն քանդումէն վերջ եւ թերեւս առաջ, եղած են ասդին անդին փոքրիկ Դպրոցներ, որոնց մասին չունինք ծանօթութիւն։

* * *

Գիտե՛նք սակայն, որ կէս դար յետոյ՝ առաջին անգամ ըլլալով Կոլոտ Յովհաննէս մեծանուն Պատրիարքը 1719—1720 Իւսկիւտար Ս. Կարապետ եկեղեցւոյն քով կը հաստատէ Դպրոց մը եւ Նալեան պատրիարք

---

[200] Կարդալ ատոր մասին Ա. Հատորիս 298—300 եւ յաջորդ էջերը. նաեւ Բ. Հատորիս 578—580 էջերը, որոնց վերջինին մէջ «Յուդա» ածականը կը դրոշմէ Երեմիա Ղազար պատրիարքին անունին քով։

Ղազարի այս չահատակութիւնը չեմ նշանակած Ա. Հատորիս մէջ, զի՝ անոր հրատարակութեան ատենը դեռ չունէի «Վիպասանութիւն յԱպրօ Չէլէպին» գրուածը։

1741ին Մայր Եկեղեցւոյ քով, եւ այդ թուականէն յետոյ ալ կը բացուին տակաւ ուրիշներ, որոնց անուանին էր՝ 1770ին կամ քիչ առաջ Գալատու մէջ՝ «Սրբոյն Յակոբայ Մծբնայ Հայրապետին» անուանը նուիրուած՝ «Մանկատունն»ը, ուր Սարգիս Դպիր Սարաֆ-Յովհաննէսեան դասախօսած է եւ հոն գրած է՝ իր «Կ. Պոլսոյ Տեղագրութիւն» հետաքրքրական գործը եւ ընդօրինակած խումբ մը կարեւոր Ձեռագիրներ[201]:

Գալատու Մանկատունէն յետոյ Զաքարիա Պատրիարք Կաղզուանցին Մայր Եկեղեցւոյ դէմ 1775ին կը բանայ նոր դպրոց մը. 1797ին կը շինուի Բուկխասար Ս. Խաչի Դպրոցը եւ հետզհետէ կ'աւելնան ուրիշներ, որոնց թիւը այսօր կրնանք յիսունէն աւելի հաշուել:

* * *

Այս պատահարը նշանակելէ յետոյ, Երեմիա դարձեալ կ'ըսէ՝ թէ չէ թուած Կ. Պոլսոյ արհեստաւորները, հոն տիրող թագաւորները՝ որոնց համար շա՛տ ճիշդ կը գրէ՝ թէ «Երազի պէս նստած ու անհետացած են[202]»:

---

[201] Այս ընդօրինակութիւնները ինձ կը պատկանին եւ են՝ իրենց թուականներու կարգով: 1. Տետրակ՝ որ կոչի պտուղ գրաջանութեան (1733ին): 2. Պատմութիւն Օսմանցոց թագաւորութեան (1771 Յունուար): 3. Եկեղեցին Բողոնիոյ (1773 Ապրիլ): 4. Կղէմէս պապի կոնդակը (1774 Օգոստոս): 5. Պայմանք գերմանաց (1792 Նոյեմբեր): 6. Իսկ որ ասենն (1793 Մարտ) եւ ուրիշներ, որոնց մասին պիտի գրեմ ուրիշ անգամ:

[202] Այսինքն տպաննուելով, արքայական դահը

*Օտար ազգերու ներկայացուցիչ դեսպան-ներն ալ չի յիշեր, ինչպէս նաեւ Կ. Պոլսոյ զանազան* թիւրպէները, թէքքէները, իմա-րէթները *ու* խանները: Խան *կոչուածը (օթե-ւան), գիտե՛նք որ ի հնումն, մեծ մասամբ կը պատկանէին Հայերու, հող չէ որ անիրաւա-բար յափշտակուած են անոնք հետզհետէ:*

*Այս խաներուն նշանաւորագոյնն էր՝* Վէ-զիր խան *յորջորջումով ճանչցուածը, որ* 1766*ին սոսկալի երկրաշարժէ մը կը կոր-ծանի, իր փլատակներուն տակ թաղելով* «Հայ ուսումնական» *մը, որու մասին Սար-գիս Դպիր Սարաֆ-Յովհաննէսեան՝ ժամա-նակագրական զանազան տեղեկութիւններու ձեռագիր ծոխ հաւաքածոյի մը մէջ կը գրէ՝ հետեւեալ Յիշատակութիւնը·*

«Յամի Տեառն 1766: Հայոց ՌՄԺԵ (1766) յամսեանն մայիսի ԺԱ, յաւուր հինգ-շաբաթի, ԺԹերորդում օրն յինանց, ի յառաւօ-տեան պահու, ժամ անցեալ մէկ ջէյրէք տասն, եղեւ շարժ իմն ի Կոստանդնուպոլիս սաստիկ որոտմամբ եւ յանկարծագեկ երեր-մամբ՝ ահաբեկ յոյժ թնդմամբ, տեւելով հա՛-գիւ թէ բօպէ երկու:

Քաղաքն լցոյց քարակոտիւք, քլուցա-նելով զմեծամեծ մզկիթսն, մանաւանդ մայր մզկիթն··· եւ զայլ մզկիթսն նմանապէս, զորն բլոյց եւ զորն կիսաքուլ··· եւ զխանսն

---

*բարձրանալու մարմաջէն բռնուած ախտաւոր զահա-ժառանգներէ:*

նմանապէս մանաւանդ զվէզիր խանն կոչե-ցեալն, զորոյ ի բլատակսն բազումք մեռան ի քրիստոնէից, որոց միոյն մանաւանդապէս էր տիրացու Գէորքն Կեսարեան, իմաստասէր յոյժ եւ դպրութեանց ոմանց ազգաց իսկ տե-ղեակ»։

*Սոյն գրուածքէն կ՚ուսանինք ահա անունը* «Գէորգ Կեսարեան» *գիտունին, որ կ՚երեւի պատմագէտ, գրագէտ էր եւ լեզուագէտ եւ գու՛ցէ պատահմամբ այդ խանին մէջ գտնուե-լով՝ զոհ գացած է Երկրաշարժին։*

*Սա ժամանակակից էր՝ ինչպէս յայտնի կ՚ըլլայ, մեծանուն Գէորգ պատուելի Պալա-տեցիի, որ ապրած է՝* 1737—1812։



*Այսպէս՝ Երեմիա Ը. Գլուխին մէջ բացի յիշատակածներէս ուրիշ բան չի գրեր, եթէ ոչ՝ անցողակի իմն պալատական – արքունի խեղկատակութիւնները, որոնք մեզ չեն հե-տաքրքրեր այսօր։ Բայց* 125*րդ տողէն սկսած մինչեւ* 130*րդը խօսքը իր հին վարդապե-տին դարձեալ ուղղելով կը գրէ.*

Տող 125. *«Մի՛ աշխատ տանէր ըզձերուկս՝*
*Եւ մի՛ եւս տացես յանդիման.*
Տող 126. *Զայլս խուզել 'ւ ի պահանջել՝*
*Զի գո՛ւցէ ձանձրութեամբ մնայցեն։*
Տող 127. *Կամ թէ մեք չեղաք տեսած՝*
*Կամ զբազմանցս եթէ մոռացան.*
Տող 128. *Ընդունել եւեթ հայցեմ՝*
*Իբր առձեռն փանաքւոյս ընծայն։*

Տող 129· Ողջ լե՛ր ի պարծանս մեր՝<br>
Եւ ասկս մեր լիցիս ի մաղթան.<br>
Տող 130· Շնորհակալութեան փոխան՝<br>
Ընդ հաստնիլ տացես պատասխան»։

Ծերունիս մի՛ յոզնեցներ ա՛յլ եւս՝ կ՚ըսէ, եւ մի՛ յանդիմաներ, պահանջելով քննել, ուրիշ կէտեր, զորս գուցէ ձանձրանալով մէկդի թողի կամ չտեսայ եւ կամ զբաղումներուս պատճառաւ մոռցայ. միայն կը խնդրեմ որ այս փանաքի աշխատանքս ընդունիլ հաճիս ընդունիլ։ Ողջ ըլլա՛ս մեր պարծանքին համար եւ մեզի համար աղօթող ըլլալով, փոխանակ շնորհակալութեան՝ ընծայիս ընդունելութիւնը ինծ իմացունես։

Այս տողերէն յայտնի է, որ Երեմիա Զէլէպի իր «Ստամպօլոյ Պատմութիւն»ը, Վարդան Վարդապետին Կ. Պոլսէն մեկնելէն բաւական ժամանակ յետոյ պատրաստած է, եւ զայն ուրիշի մը ձեռքով ուղած է իրեն խրկել, որովհետեւ յաջորդ 130րդ տողէն մինչեւ 144րդը ամենախիստ յանդիմանութիւն մ՚է՝ ուղղուած Մխիթար անուն Վարդապետի մը, որուն յանձնուած ըլլալու է Երեմիա իւր աշխատութիւնը, տանելու առ Վարդան վարդապետն իւր սիրական։ Բայց այդ Եկեղեցականը հաւատարիմ չէ գտնուած խոստումին. յանձնարարութիւնը չէ կատարած, որուն համար գիրքը Երեմիա «Մխիթար» անունը կրելու անարժան կը համարի, Ուխտադրուժ զայն կ՚անուանէ իրաւամբ։

Կ՚արժէ կարդալ հոս այդ տողերը (տ. 130 —143).

«Ա՛յ ուխտադրուժ Մխիթար՝
Վարդապետ կոչմամբ պերճական,
Ըստ անուամբ չեղեր մխիթար՝
այլ զգիմակն ինձ պատահման։
Ջեան իմ խնդրել փութացար՝
Մինչ քո գործդ ի կատար ըլնան.
Ուր սէր քո պատրուակեալ՝
Եւ խոստմունքն քո անհիման։
Միթէ վարձս ուխտեցեր ինձ՝
կամ առ քեզ յիշեալ եղէ զայն.
Ընդէր չառէր զհայցելիդ՝
Ցվարդապետ տարեալ զայս ընծայն
Միթէ սերմանեալ տեղիդ՝
հիւթն չունէր ըստ առակն տէրունեան.
Զի ոչ եկիր ոչ տեսեր՝ ՚ւ ոչ
յիշեալ թէ կայ ողջ մարդն այն։
Մեզ չէ փոյթ քննել զայդպիսիդ՝
զի համակ բարուց են նշան.
Զի չատ եմ տեսեալ քան զքեզ՝
՚ւ իմ վաստակս չէ ի նանրութեան։
Տի՛ վարդապետին խաղրին թողից՝
Քեզ զայլ չատ պատասխան,
Առակ ՚ւ օրինակ զըրել՝ քեզ ըստ
Քոյդ թողուլ զայն արժան։
Ափսոս կամ չես հասկացեալ՝
կամ ծանեար եւ չես կատարման,
Զէ նիչ անդ չահիլ զքանքարն՝
ոչ գիտեմ թէ բարքդ հեղձուցման»։

Այն տողերուն իմաստը սապէս է. Վա՛յ ուխտադրուժ Մխիթար, որ վարդապետի մեհ կոչումը ունիս, բայց անունիդ համաձայն մխիթարիչ չեղար, դիմակաւոր մ՚ես եղեր, մինչեւ գործիդ կատարումը իմ միջամտու–

թիւնս փութացիր խնդրել, բայց պատրուակեալ է եղեր սէրդ եւ անհիմն եղան խոստումներդ: Միթէ վա՞րձք մը ինձ խոստացար, կամ ես քեզի զայն առաջարկե՞ցի, եթէ այդպիսի բան մը կար, ինչո՞ւ չուզեցիր, նախ քան զընծայն վարդապետին տանելդ: Արդեօք կարծեցի՞ր թէ սերմանած տեղդ հիւթ պիտի չունենա՞ր՝ ըստ Տէրունական առակին[203]: Զեկար զիս տեսնել, ըսելու համար թէ այդ մարդը ո՞ղջ էր թէ ոչ. տեսնել բաներ փոյթս չէ քննել, զի բնաւորութեանց կ՚ապացուցանեն: Քեզմէ չա՛տ աւելի գիտեմ, եւ իմացի՛ր որ իմ աշխատութիւնս ի զուր տեղ չինուած չէ. Վարդան վարդապետին նկատմամբ ունեցած սիրոյս համար, քեզի ուրիշ պատասխան չեմ տար, այլապէ՛ս կրնայի տասակ-օրինակ չափելով խայտառակել քեզ՝ եւ այդու՝ քու անճահ ընթացքիդ արժան յիշատակին յօրինել: Կ՚ափսոսամ, որ դուն կամ զիս չհասկցար, կամ հասկցար ու դիտմամբ առաջարկս, յանձնարարութիւնս չկատարեցիր. այդ տեսակ միջոցներով քանքար չի շահուիր, եւ բարուցդ թերութիւններն ալ չեն ծածկուիր:

— Այս է վեր ի վերոյ իմաստը կամ նշանակութիւնը վերոյգրեալ տողերուն, որոնց իբրեւ շարունակութիւն կը գրէ դարձեալ դառն խօսքեր եւ 145րդ տողէն մինչեւ 150րդին

---

203 Եւ այլն անկաւ յապառաժի եւ ընդ բուսանելն չորացաւ առ ի չգոյէ հիւթոյ»: *Ղուկաս*, *Ը.*, 4 *եւ* *Մատթէոս ԺԳ.*, 1:

մէջ այպանելով կ'այպանէ կարգ մը բաքուն–ներ՝ իմա՛ վարդապետներ՝ զորս կը նմանեցնէ բռունցքով հաց կոտրող սնափառներուն, վասն զի ատոնք սովորութիւն ունին եղեր քամահրել իր աշխատութիւնը, զինքը համարել բան–գործ չունեցող մէկը եւ զրաբանել իրեն համար թէ ապարդիւն կեանք անցնող մ'է եւ թէեւ աշխատող՝ բայց ոչինչ չահող:

Երեմիա իրաւամբ կը ծիծաղի ասոնց վրայ, ըսելով, որ երբ իր գրածներուն մէջ անոնք իմաստալից բաներ մը տեսնեն, զարմանքով կը բացագանչեն թէ ուստի՞ սորված եմ, եւ կ'ենթադրեն թէ՝ ուրիշ տեղէ մը զայն անշուշտ վերցուցած եմ, ի՛նչ որ ապացոյց է իրենց խոր տգիտութեան (տող 150):

Յաջորդ ինը տողերուն մէջ Երեմիա չի քաշուիր յարելու, թէ ոմանք՝ իրեն համար «շատ բան գիտցող չէ» ըսած են, եւ ոմանք ալ գրածները «երկար ու խրթնիմաց յայտաբարած են», եւ մինչեւ իսկ զինքը զէվզէկ (թեթեւսօլիկ) համարելու աստիճան համարձակած են, սակայն ինքը մազի չափ կարեւորութիւն չի տար անոնց (տող 153), զի ուրիշ մեծերու ալ այդպիսի յարձակումներ տեղի ունեցած են՝ կ'ըսէ: Բայց տ. 154 կը գրէ·

Զայս վիշտ կրեմք ի սուտ եղբարց,
վասն որոյ մնացեալ անիշխան·

այսինքն թէ՝ կեղծ եղբայրներու երեսէն է, որ այսպիսի վիշտեր կը կրենք եւ այդ պատ–

ճառաւ խակ է՝ որ անիշխան (խմա՛ սորուկ) մնացած ենք:

Ինչպէս պատմած եմ Ա. Հատորիս մէջ (էջ 132), Երեմիա կարեւորութիւն բնա՛ւ չի տար այդ տեսակ մարդերու (որոնց նմանները կան դեռ մեր մէջ դժբախտաբար), եւ կը վերջացնէ իր գիրքը ըսելով (տ. 157—158).

Բաւ է գիտնոց խմաստնոց՝
գվերդգրեալս որ թէ խմանան.
Հայ Թուականօք դա՛ «Ձի՞ՆՁ է»,
Երեմիաս յանդեալ գիւր ընծայն:

Հերիք է՝ որ գիտուն եւ խմաստուն մարդիկ գրածներս հասկնան ու ազգային անկեղծ սիրով գտնեն թէ ի՞նչ է այն, եւ ահա Երեմիաս իր ընծայն կը վերջացնէ:

Վերջին տողին մէջ զի՞նչ է բառերը կը յայտնեն աշխատութեան թուականը՝ 1684, ինչպէս նշանակած եմ արդէն (Հատոր Ա., էջ 120), բայց կը թուի ինձ թէ բառախաղ մը ըրած է հոն Երեմիա. «Հայ թուականօք» ըսելովը արդեօք նաեւ «հայ զգացումով» խմաստը զգացունել չուզե՞ր:

*   *
*

Այս վշտալից յայտարարութիւններէն յետոյ «Յիշատակարան ընծայիս երգողի» վերնագրով ունի 22 տող գրուած մը, զոր կը կարդանք առաջին Հատորիս 120—121 էջերուն վրայ եւ որով իր աշխատութիւնը կը նուիրէ Վարդան վարդապետին՝ զայն անուանելով Մեծ Բաբունի:

Այս ընծայագրին մէջ Երեմիա գոհունակութիւն կու տայ որ Տէրը շնորհեց իրեն աւարտել զայն՝ «Կաֆայի գունով, իբր Կորուսեալ ոչխար», որով ըսել կ'ուզէ թէ իր ստանաւորին չափերը Խաչատուր Կեչառեցւոյ հետեւողութեամբ շարադրած է, իմա՛ 2—5—3—5, ինչպէս լուծած է այս հանելուկային տողին իմաստը Հ. Ներսէս Ակինեան[204]:

Իր սիրական Վարդապետէն կը խնդրէ նաեւ՝ որ Աշխարհաբար գրած ըլլալուն համար չմեղադրէ զինքը եւ իր փանաքի մտքին ու մատներուն իբրեւ մէկ ծաղիկը հաճի ընդունիլ, զի կը յարէ՝ թէ 1661ին սկսաւ զայն գրել ու զանազան պատճառներով մէկդի թողուլով վերստին ձեռք առած է զայն 1681ին ու աւարտած երեք տարիէն, այսինքն 1684ին, ինչպէս կը յայտնէ այս «Երեմեան» բառով, փոխանակ «Եռամեայ» ըսելու, որպէս զի այդու իր անունն ալ նշանակած ըլլայ:

Ըստ այսմ՝ Հ. Ակինեանի այն վարկածը թէ Ստամպօլոյ Պատմութիւնը աւարտած է 1689ին, չի համապատասխաներ իմ ընդունած 1684 թուականին. ես միայն «Զինչ է» բառը կը համարիմ ճիշդ թուականը, մինչ Հ. Ակինեան «Դա Զինչ է» բառերը[205]:

Երեմիա իր Յիշատակարանը կը վերջացնէ կարգ մը գովեստներ հիւսելով Վար-

---

[204] Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան, գրեց Հ. Ներսէս Ակինեան, Վիեննա 1933, էջ 71:
[205] Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան, գրեց Հ. Ներսէս Ակինեան, Վիեննա 1933, էջ 88:

դան վարդապետին եւ կը կնքէ զայն, երկար տարիներ իրեն մաղթելով եւ աղօթքը չմոռնալ հայցելով:

* * *

Երեմիա Չէլէպիի այս Յիշատակարան — ընծայով կ՚աւարտի Ստամպօլոյ Պատմութիւնը, որուն իբրեւ վերջակէտ կը կարդանք ընդօրինակիչին՝ այսինքն անոր Եղբօրը՝ Նահատակ Տէր Կոմիտաս Քահանային մասնաւոր գծուած վեց տող համեստունակ, պարզունակ Յիշատակարան մը, զոր թէեւ անգամ մը գետեղած եմ Առաջին Հատորիս, 134 էջին վրայ, բայց այս անգամ ալ կարեւոր կը համարիմ ներկայացունել անոր խոկական ձեռագրին լուսանկար պատկերը որ է՝ հետեւեալը.

Այս վեց տողով Տէր Կոմիտաս կը յայտնէ աչա, թէ Ստամպօլոյ Պատմութիւնը խմբագրուած է իր երէց եղբօրմէն, թէ նա՝ «Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան կը յորջորջուէր», եւ կը յաւելու՝ թէ այժմս ալ անի ընդօրինակուեցաւ անոր կրտսեր Եղբօրը ձեռքով, Քէօմիւրճեանց ընտանիքին ամենէն յետին ու աննշան անդամ «Երէց Կոմիտասէն»: Վերջընթեր տողին «Զմիջի» բառը կը յայտնէ՝ ընդօրինակութեան թուականը, այսինքն 1146 + 551 = 1697: Ինչպէս յայտնած եմ արդէն (Հատոր Ա., էջ 122):

* * *

*Տէր Կոմիտաս՝ Երեմիայի մահէն* (1695) *երկու տարի վերջը եւ իր նահատակութենէն* 10 *տարի առաջ է՝ որ այս ընդօրինակութիւնը կատարած է: Մտադրած էի Տէր Կոմիտասի մասին՝ երկար գրել եւ անոր սուրբ յիշատակովը կնքել Ծանօթագրութիւններուս այս երկար շարքը. այլ սակայն ետ կը կենամ այսօր այդ որոշումէս նկատի ունենալով՝ որ* 1929—1930 *երկու ընտիր աշխատութիւններ հրատարակուեցան այս սրբանուէր մեծանուն Քահանային վրայ:*

*Առաջինն էր՝ Արհիպատիւ Նազլեան Սրբազան Արքեպիսկոպոսին* 1929 *յունիս* 23*ին Պէյրութի մէջ արտասանած գեղեցիկ* «Բանախօսութիւնը» (*հրատարակուած՝ Վիեննա*)*. Երկրորդը՝ բազմահմուտ եւ բազմավաստակ գրագէտ բարեկամիս՝ Տիար Առաքէլ Սարուխանի* «Յարգանք Հայ Նահատակին» *սքանչելի գործը, որ նախապէս* 1929*ին* «Հանդէս Ամսօրեայ»*ի մէջ մաս առ մաս երեւալէ յետոյ, առանձին հատորով ալ հրատարակ ելաւ Վիեննայի Վանքէն՝* 1930*ին:*

*Երկուքն ալ ընթերցման արժանի, գնահատելի գործեր, Նահատակ* Տէր Կոմիտասի *կեանքը մանրամասն կերպով կը պատմեն ու այդ Քահանային Սուրբերու դասակից հռչակուիլը յիշատակելով, անոր դրուատիքը ու գովքը կը հիւսեն պերճախօս տողերով:*

*Տիար Ա. Սարուխանի երկը սակայն՝ սա առաւելութիւնը ունի, որ Հայ եւ օտար վաւերական աղբիւրներու եւ փաստերու վրայ է*

այն հաստատուած, եւ Հեղինակը անձամբ ներկայ եղած է այն փառաւոր հանդիսութեան որ տեղի ունեցաւ 1929 Յունիսին՝ Հռոմի Ս. Պետրոս Եկեղեցւոյն մէջ Նախագահութեամբ Սրբազան Քահանայապետին՝ Պիոս ԺԱ.ի:

Հայ Քահանայ մը Սուրբ կը հռչակուէր այդ օրը, Երանութեան փառքին կ'արժանանար եւ Սրբազան Պապը ամենագեղեցիկ ու պերճախօս ճառով մը, նոյն պահուն ո՛չ միայն Տէր Կոմիտասը սրբութեան արժանի կը հրատարակէր՝ այլ եւ՝ Հայ Ազգին բիւրաւոր նահատակները, որոնք մարտիրոսացան 1915—1916 Թուականներուն:

* * *

Սոյն երկու գերազանցապէս կարեւոր՝ Հրատարակութիւններէն յետոյ կը մնայ ինձ ոչինչ գրել, ու յանձնարարել զանոնք մասնաւոր ուշադրութեանը ընթերցողներու, որոնք յուսամ թէ ինծի հետ լացող են Տէր Կոմիտասի պէս ներհուն ու մաքուր Քահանայի մը վիճակուած անիրաւ եւ տխուր վախճանին վրայ:

Այս առթիւ չեմ վարանիր եւ պարտականութիւն իսկ կը համարիմ հրապարակաւ յայտնել իմ խորին ու անկեղծ շնորհակալութիւններս Արհիապատիւ Նազլեան Սրբազան Արքեպիսկոպոսին եւ Տիար Առաքել Սարուխանի այն գերազնիւ վերաբերումին համար, զոր ունեցած են ինծի հանդէպ, պատիւ ընե-

լով յիշատակել իրենց պատկառելի Երկասի-րութիւններուն մէջ ակար գրչէս՝ բայց սրտէս բղխած տողերս, զորս Տէր Կոմիտասի համար շարադրած եմ Ծանօթագրութիւններուս Ա. Հատորին 133—134 էջերուն մէջ, Երեմիա Չէլէպիի կենսագրութիւնը ներկայացուցած պահուս:

Նալեան Արքեպիսկոպոսին եւ Առաքել Սարուխանի հրատարակութիւնները ողբացեալ Տէր Կոմիտաս Նահատակին յիշատակի կոթողներն են խիկալէս[206]:

Տէր Կոմիտաս, որու անունը միշտ «Կոմիտաս» գրուած կը գտնենք, ծնած էր Գում-Գաբու 1656 Ապրիլ 22 (Հ. Տ.), եւ մկրտուած է քանի մը օր յետոյ, 27 Ապրիլին, ինչպէս իր Եղբայրը Երեմիա Չէլէպի նշանակած է իր Օրագրութեանը մէջ, եւ ես ալ հրատարակած եմ արդէն նոյնութեամբ (տե՛ս Հատոր Բ., էջ 719):

Քահանայ ձեռնադրուած է 1683ին. լու կրթութիւն եւ դաստիարակութիւն առած է շնորհիւ իր Տէր Հօր: Տիպար Եկեղեցական մը եղած է. բայց ենթակայ դառն հալածանքներու, եւ վերջ ի վերջոյ խժդժաբար գլխատուած է՝ 1707 Հոկտեմբեր 25ին: Թաղուած է նա Պալըքլըի Ազգ. Գերեզմանատունը՝ ո՛չ

---

206 Բանախօսութիւն Տեառն Կոմիտասայ Քահանայի, խօսեցաւ Յովհաննէս Արքեպ. Նալեան, 29 Յունիս 1929 ի Վերիտոն, Վեննետիկ Ս. Ղազար 1930, էջ 12, 22, 23 եւ Յարգանք Հայ Նահատակին, Ա. Սարուխան, Վիեննա 1930, էջ 3:

*չափ Հեռի Կիլիկիոյ Թորոս կաթողիկոսի Գե– րեզմանէն :*

*Ունի փառաւոր շիրիմ , որուն վրայ բո– լորագիր փորագրուած է հետեւեալը ․*

ԵՐԱՆԵԼԻ ՏԷՐ ԿՈՄԻՏԱՍ ՎԿԱՅԻՆ

ՏԱՊԱՆ ՏԵՆՉԱԼԻ ԱՌՆ ԲԵՄԱԿԱՆ.
ԵՐԻՑՈՒ ՄԵԾԻ՝ ՏՈՀՄԻՆ ՔԷՕՄԻՒՐՃԵԱՆ.
ՔԱՂԱՔԱՒ ԲՆԻԿ ՇԻՆԻՆ ԲԻՒԶԱՆԴԵԱՆ
ԿՈՄԻՏԱՍ ԱՐԳՈՅ ԱՆՈՒՆ ՎԱՐՍԱՄԵԱՆ։
ՀԱՍԱԿ ՈՒՂՂԱԲԵՐՋ՝ ԴԻՄՕՔ ԶՈՒԱՐԹՈՒՆ
ԼԵԶՈՒԱՒ ԳԵՐԱՊԱՆԾ՝ ՄԸՏՕՔ ԻՄԱՍՏՈՒՆ
ՏԱՂԸՍ ՅՕՐԻՆԵԱՑ ՏՈՂԻՒ ՓԱՂՓԱՂՈՒՆ
ԿՈՄԻՏԱՍ ԱՐԳՈՅ ԲԱՆԱՍՏԵՂԾ ՆԵՐՀՈՒՆ։
ԱՆՍՏԳԻՒՏ ՎԱՐՈՒՑ ՄԱՐՄՆՈՎ ՎԵՐԲԵՐԻՉ
ՄԿՐՏԵԱԼ Ի ԽԱՉ՝ ԲԱԺԱԿԻՆ ԱՐԲԻՉ
ԶՄԱՀ ԻՒՐ ԱՐԵԱՄԲ ՅԱՌԱՋՆՄԷ ՊԱՏՄԻՉ
ԿՈՄԻՏԱՍ ԱՐԳՈՅ ԱԽՈՅԵԱՆ ՎԱՆԻՉ։
ՎԱՍՆ ՀԱՒԱՏՈՅ ՄԱՏՆԵՑԱՒ ՊԵՏԱՑ
ԴԱՏԱՊԱՐՏԵՑԱՒ ԶԷՏ ՄԱՀԱՊԱՐՏԱՑ·
ԶԱՐԵԱՆ ԻՒՐ ԾՈՐԱՆ Ի ՎԸՃՌՈՒՆ ԽՆԴՐԵԱՑ
ԿՈՄԻՏԱՍ ԱՐԳՈՅ՝ ՔԱՒԻՉ ԼՈՒՍԱԶԳԵԱՑ։
Ի ՊԱՐՄԱԽԱՓՈՒՆ ԱՌ ՊԱՅԱԶԻՏԱՒ
ԴԵՄԵՏՐԵԱՑ ՏՕՆԻՆ ԳԼՈՒԽ ԻՒՐ ՀԱՏԱՒ
ՅՕՐ ԵՐԿՇԱԲԹԻ ՅԱՅՍ ՏԱՊԱՆ ԵԴԱՒ
ԿՈՄԻՏԱՍ ԱՐԳՈՅ՝ ՎԿԱՅ ՀՌՉԱԿԱՒ։
ՅՈՒՅԱԿՔ ՀԸՐԱՇԻՑ ԲԱԶՄԱՑԱՆ ԹՈՒՈՎ
ԶՈՐՈՑ ՎԿԱՅԷ ՈՒԽՏԱՒՈՐԱՑ ԾՈՎ,
ՀՈՍԵԱԼ ՀԱՆԱՊԱԶ ԶՍՐԲՈՑՆ ՇԻՐՄՈՎ
ԿՈՄԻՏԱՍ ԱՐԳՈՅ՝ ՎԿԱՅ ՄԵԾԱԳՈՎ։
ԵՂԵՒ ԿԱՏԱՐՈՒՄՆ ՅԱՄԻՆ ՔՐԻՍՏՈՍԻ
ՀԱԶԱՐ ԵՕԹՆԵՐԻՒՐ՝ ԵՕԹԸՆԵՐՈՐԴԻ
ԶՈՒԽՏ ԵԿԱՑՆ ԸՆԿԱԼ ԸՆԴ ՔՈՅԴ ՏԱՂՈՐԴԻ
ԿՈՄԻՏԱՍ ՎԿԱՅ ԼՈՒՍՈՑՆ ՆԱԽՈՐԴԻ։

ՌՃ ԹԻՒՆ ՀԱՅՈՑ ԷՐ ՃԱՌԵԼԻ ԻԶ ՀՈԿՏԲԵՐ։ ԾԶ

Տէր Կոմիտասի այս Տաղանդիրը, զոր ուրիշներ ալ հրատարակած են եւ զոր ես անձամբ ընդօրինակած եմ ժամանակին, հարկ համարեցի վերստին ներկայացնել, վասն զի դիտած եմ՝ որ արդէն հրատարակուածներուն մէջ քանի մը սխալներ սպրդած են: Վերջին տողի «Ճառեդի» բառը Հայ Թուականը ցոյց կու տայ՝ ՌՃԾԶ = 1707:

Տէր Կոմիտասի Գերեզմանը ուխտատեղի եղած է, շիրմին պատկերը հրատարակած է Հ. Յովհ. Տ. Վ. Թորոսեան[207], դրուատալից տողեր նուիրելով անոր անմահ յիշատակին:

Ճիշտ չէ այն ենթադրութիւնը, թէ մարմինը այլուր փոխադրուած է. Պալըգլըի Գերեզմանատունը կը հանգչի այն մինչեւ այսօր:

Գերապատիւ Նաչլեան Արքեպիսկոպոս երբ Կ. Պոլսոյ մէջ Պատրիարքական պաշտօն կը վարէր, 1922ին բանալ տուաւ թէեւ հարկաւոր չէր, Հանգուցեալ Քահանային գերեզմանը եւ մէջը գտնուած կմախքը բժիշկներու քննութեան ենթարկեց, եւ հաստատել տուաւ թէ անոնք իրօք Տէր Կոմիտասի նշխարներն են. բայց ներուի ինձ այս տեղ ըսել թէ Քննիչ բժիշկները ամենամեծ սխալը գործած էին իրենց տեղեկագրին մէջ ըսա՛ւ ծի յիշատակելով գանկին ներքեւի մասը, այսինքն դաժիճէն կտրուած տեղին, հատուած ողնասիւնին ու չլինքին նկարագրութիւնը.

207 Վարք Մխիթարայ Աբբայի, Վենետիկ, էջ 230 եւ 231—232:

նոյնպէս անճիշդ կը համարիմ ծնօտին երկու-տասմին չգոյութենէն հետեւցնել՝ թէ Տէր Կոմիտասինն է այն, եւ ըսել՝ թէ օրուան պատրիարքին ապտակահարութեամբը ինկած են այդ երկու ակռաները · ապտակ մը որչափ ալ ուժգին ըլլայ չի կրնար ատամներ տեղէն հանել :

Ինչ եւ իցէ, եղածն եղած է, ու չ'արժեր խօսել անոր վրայ, բաւ է՝ որ Տէր Կոմիտաս իւր մաքրակրօն կենցաղին արժանի փառաւորումն մեծահանդէս ունեցաւ՝ Յաւիտենական Քաղաքին մէջ, եւ դասեցաւ Սուրբերու երանաւէտ դասը · ուստի յարգելով անոր նուիրական յիշատակը, կ'աւարտեմ ա՛յլ եւս Ծանօթագրութիւններս եւ անկեղծօրէն երկիւղած համբոյր մը կը դրոշմեմ անոր Ձեռագրին վրայ, պիտի ըսէի՝ մասներուն վրայ, որոնք ընդօրինակեցին Երեմիա Չէլէպիի Ստամպօլոյ Պատմութիւնը եւ առիթ ինձ ընծայեցին Կ . Պոլսոյ Հայ գաղութի պատմութեան էջերը պրպտելու : Տէր Կոմիտասի հետեւեալ գիրը թո՛ղ ըլլայ աշխատութեանս կնիք վերջակէտը :

## ԵՐԵՄԻԱ ՉԷԼԷՊԻԻ ՍՏԱՄՊՕԼՈՅ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՁԵՌԱԳԻՐԸ

*Աշխատութեանս Ա. հատորին մէջ* (*էջ* 126) *խոստացած էի, որ Ծանօթագրութիւններուս վերջը պիտի տամ նկարագրութիւնը իմ սեպհական ձեռագրիս, որուն վրայէն կատարած եմ Ստամպօլոյ պատմութեան հրատարակութիւնը: Այստեղ կը կատարեմ խոստումս:*

ԹՈՒՂԹՔ՝ 185 (370 էջ): — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 21 × 15,5 հմ.: — ՆԻՒԹ՝ բամբակեայ թուղթ: — ԳԻՐ՝ Նոտր: — ԿԱԶՄ՝ սեւ կիսակաշի (տես Ա. հտր., էջ 126): — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ լաւ: — ԴԱՏԱՐԿ՝ թղ. 1—3, 53, 73, 78, 91—93, 99, 102, 107, 112—113, 179—185: — ՆԿԱՐ, ԽՈՐԱՆ, ԶԱՐԴԱԳԻՐ եւս չկան: — ԳՐԻՉ՝ 4—52 թղթերու՝ Տէր Կոմիտաս Քէօմիւրճեան: — ԺԱՄԱՆԱԿ՝ 1697: — ՏԵՂԻ՝ Կ. Պոլիս: Այժմեան ստացիչ Տօքթ. Վահրամ Յ. Թորգոմեան ի Բարիզ:

*Մատեանս է* Երեմիա Չէլէպիի Ստամպօլայ Պատմութիւն *եւ ուրիշ զանազան գրուածքներու հաւաքածոյ, հետեւեալ բովանդակութեամբ.*

1. *Թղ.* 4*ա*—50*բ*. *Երեմիա Չէլէպիի Ստամպօլոյ Պատմութիւն, զոր հրատարակեցինք:*

2. *Թղ.* 50*բ*—52*բ*. Այլ խմն Բան Հրէի կնոջն Քէրայի, *Երեմիայի հեղինակութիւնը, գրուած Տէր Կոմիտասէն: Այս կտորը ես դուրս թողած եմ հրատարակութենէս նիւթին անպատշաճ հանգամանքին համար:*

3. *Թղ.* 54*ա*—72. *Պատմութիւն Օսմանեան թագաւորներու, Երեմիայի հեղինակու-*

*թիւն, որ կը սկսի սուլթան Օսման Ա. Ղազիով (1229—1325) եւ կը հասնի մինչեւ Սէլիմ Գ. (1788—1808) ուստի 1695—1808 շարունակուած է ուրիշ գրչէ:*

4. *Թղ. 74—77. Երեք ոտանաւոր Գրիգոր պատուելի Փէշտիմալճեանէ, ինքնագիր, գրուած 1817 Դեկտեմբեր 23ին. որոնք կը սկսին այսպէս.*

ա. *Ի յանարժան տէր Քերովբէէ առ սիրելի եղբարս ազգին Հայոց:*

բ. *Յանարժան տէր Քերովբէէ առ սիրատարս սիրելի Սիմոնի վարդապետ:*

գ. *Ի Փէշտիմալճեան տիրացու Գրիգորէ առ տէր Քերովբէ:*

*Այս երեքն ալ Գրիգոր պատուելի գիմառնաբար կը գրէ անունովը Տէր Քէրովբէի մը, որ կ՚երեւայ դաւանափոխ եղած է: Առաջին երկու ոտանաւորները ծաղրական են. իսկ վերջինը յանդիմանութիւն մը Տէր Քերովբէի:*

5. *Թղ. 79—88. «Կղէմէս պապ չորեքտասաներորդ ի մշտջենաւոր յիշատակութիւն». որ կ՚աւարտի. «Տուաւ ի Հռոմ ի սրբոյն Մարիամ Մաճիոռէն մատանեաւն ձկնորսին: Ի 21 յուլիսի եւ ի յամի 1773»: Տե՛ս Յիշատակարան 2:*

6. *Թղ. 89—90. «Ըստ խնդրոյ, զոր խնդրեաց յինէն Գերազանցութիւնն քոյին, որ տայ մեզ զրով զվերջին կամքն Ռուսսոյի րակին, ընկալնում զպատիւ ի յայտնելս զնոյն վերջին կամքն քեզ մի ըստ միոջէ...»:*

*Գրուածքս* 1773 *թուականը կը կրէ եւ կը հայի ռուս-օսմանեան պատերազմին, որով կը ներկայացուին Ռուսներու կողմէն կառավարութեան առաջարկուած հաշտութեան պայմանները:*

7. *Թղ*. 94—98. «*Օրինակ թղթոյն Բօնաւոլեցն Իզմիրու՝ գրեալ առ բարձրութիւնն քօնթէ Աղէքսանդրի Օռլովին առաջին հրամանատար իշխանին Տօնանմային Ռուսաց այսինքն Մոսկովու, որ էր ի կողմանս Սախրզ Կղզւոյն եւ Միտիլլիու, կամ Իլիմիային, յամի* 1770 *յուլիսի* 21»: *Գիրը Սարգիս դպիր Սարաֆ-Յովհաննէսեանի է: Տե՛ս Յիշատակարան* 3:

8. *Թղ*. 100—101. «*Ողբերգութիւն ժամանակիս, խթանք սրտիս, լալումն անձինս, վիպասանական ասացուածք նարդեան չրջանիս*»: *Ընդամէնը* 13 *տուն տանաւոր: Գրութեանս ոչ ժամանակն եւ ոչ ալ հեղինակը յայտնի է: Կ՚ողբայ ժամանակին դառնութիւնները, մասնաւորապէս բարոյական կողմէն նկատուած:*

9. *Թղ*. 103—106. *Հրովարտակ Կատարինէ Բ. Կայսրուհիին եւ Ինքնակալուհիին ամենայն Ռուսաց, գրուած* 1763*ին ի Սանկտ Պեթէրպուրկ, որով օտարներու մեծ արտօնութիւններ եւ ազատութիւններ կը շնորհուի Ռուսաստանի սահմաններու մէջ:*

10. *Թղ*. 108—111. *Եկատարինէ Կայսրուհիին հրովարտակը գրուած Սիմէոն Կաթողիկոսին, որով գոհացում կը տրուի Հայոց*

Եկեղեցւոյ խնդրանքներուն։ Հրովարտակը հրատարակուած է Մեղու Հայաստանի թեր-թին մէջ 1858, Թիւ 45, էջ 356 եւ յետոյ Գ. Մսերեանցի «Պատմութիւն կաթողիկո-սաց էջմիածնի» գործին մէջ (էջ 161). եւ ամէնէն վերջը Գիւտ Քահանայ Աղանեանցի «Դիւան Հայոց Պատմութեան» մէջ (Յիշա-տակարան Սիմէոն կաթողիկոսի. Թիֆլիս 1894, էջ ճԻԸ—ճԼԱ)։

11. Թղ. 114—142. Յաղագս երկպառա-կութեանցն որ ի յեկեղեցիսն Բոլոնիայի։ Ինքնագիրը տպագրուած է Սաքսոնիայի մէջ 1768ին, իսկ «թարգմանեցեալ ի հայկա-կան բարբառ ի Մելքիսեդեկէ յամի Տեառն 1771 եւ յունիսի 20 ի Կոստանդնուպօլիս»։ Օրինակութիւնս կատարուած է «ի վերայ թարգմանչի գաղափարի, առ մերումս վար-ժարան, ի յամի Տեառն... ապրիլի ամսոյ։ Ի Մանկատան սրբոյն Յակոբայ Մծբնայ հայ-րապետի»։

12. Թղ. 142ա—149. «Պատասխանի Աս-տուծոյ եւ վասն Աստուծոյ. որ արգելեալ զ՚Իսկ որք ասենն,, զոր ասացեալ են ի վերջն Հաւատամքին. ի նուաստ յԵրեմիայէ»։ Երե-միա Չէլէպիի գրութիւնն է. տե՛ս սոյն մա-սին Հ. Ն. Ակինեանի Երեմիա Չէլէպի Քէօ-միւրճեանի կեանքն եւ գրական գործունէու-թիւնը (Վիեննա 1933), էջ 126—127։

13. Թղ. 150ա—155. Ճառ «ի Պօղոսէ արքեպիսկոպոսէ եւ պատրիարքէ Կ. Պօլսոյ ասացեալ», Թուրքերէն լեզուով։ Ագրիխա-

*նուպօլսեցի Պօղոս պատրիարքն է սա, որ ազգային միութեան եւ սիրոյ հրաւէր կը կարդայ: Այս ճառին հայերէն խմբագրութիւնն է այն Անենաբանութիւնը, զոր նոյն պատրիարքը 1817ին արտասանած է եւ զոր Աւետիս Պէրպէրեան հրատարակած է իւր Պատմութեան մէջ* (*էջ* 84—92):

14. *Թղ.* 156*ա*—178. *Ժամանակագրութիւն մը այբուբենական կարգով, ուր կը նշանակուին կաթողիկոսներու, պատրիարքներու եւ զանազան դէպքերու եւ նահատակներու թուականները: Կը վերջանայ այսպէս.*

*«Քէօմիւրճի օղլու Երեմիա Չէլէպին՝ եղբայրն տէր Կոմիտասին հանգեաւ ՌՃԽԴ»* (1695) (*հմմտ. հատոր Ա.*, *էջ* 189): *Այս ժամանակագրութեան հեղինակն ըլլայ թերեւս Տէր Կոմիտաս. բայց կան հոն ուրիշ ձեռքերէ մուծուած յաւելուածներ ալ:*

*ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐ*. 1. *Թղ.* 52*բ*. *Յիշատակարան Տէր Կոմիտասի. յառաջ բերուած է վերը, Ա. հատոր, էջ* 121—122:

2. *Թղ.* 88*բ*. *Օրինակեցաւ եղեւ կոնտակս այս փափական* (*վասն արտահալածման ճիզվիթեան փաթերայից ի միջոյ իւրեանց*) *ի* 1774 *յամին Քրիստոսի եւ ի ՌՄԻԳ թուին մերոյս տումարի յամսեանն օգոստոսի Ա. յաւուր ուրբաթու վարդավառի այլակերպութեան տօնի ներ շաբաթու: Ի Մանկատան որդոյն Յակօբայ Մծրնայ հայրապետի:*

3. Թղ. 98բ. Ի Մանկատան սրբոյն Յակոբայ Մծբնայ հայրապետի ի յուղիղ օրինակաց, ի 1770 դեկտեմբեր ամսոյ:

4. Թղ. 149բ. Գրեցաւ օրինակութեամբ յամի Տեառն 1793 եւ ի ՌՄԽԲ թուին Հայոց, մարտի Բ: Ի Մանկատան Ս. Յակոբայ Մըծբնայ հայրապետի ի Պալատ:

Ձեռագրիս վրայ խօսած եմ գործիս Ա. հատորի մէջ, էջ 125—126:

Ինծ կը թուի թէ Ձեռագիրս այլ եւ այլ ձեռքերէ անցնելէ ետքը նաեւ սեպհականութիւն եղած է Սարգիս դպիր Սարաֆ-Յովհաննէսեանի, որ լեցուցած է զայն կարեւոր ընդօրինակութիւններով: Այս պատկանած է Փէշտիմալճեան Գրիգոր անուանի պատուելիին, զի սա զետեղած է մէջը իր ձեռքովը գրած իր մէկ երկու ոտանաւորները:

1933ին Բարխուդարեան Պ. Զաւրիէվ բանաւէր բարեկամս ինծ ցոյց տուած է Ձեռագիր մը փոքրիկ, որ Երեմիա Չէլէպիի Օրագրութեան մէկ մասը կը պարունակէր, բայց ուրիշէ մը ընդօրինակուած. սոյն Ձեռագրին մէջ տեսայ Երեմիայի գրած 10 տող մէկ Ոտանաւորը, զոր արտագրելով զետեղեցի «Ստամպօլոյ Պատմութեան» վերջին թերթին վրայ:

Իբր իմաստալից նշանակութեանը համար, կարեւոր կը համարիմ ներկայացնել զայն այս տեղ ալ, ահաւասիկ.

Մէր արմատոյն լայն եւ հաստատ՝
տե՛ս զպտուղն ո՛րչափ առատ
Թանն ի մտաց, մարդն ի գործոյն,
ծառն ի պտղոյն ճանաչի՝ յայտ։
Ձեռն իմ երթայ դառնայ ի հող՝
բանն առ Աստուած վերընթերցող
Մտադիւրութեամբ դու վերծանող՝
ժտեմ[1] լե՛ր ինձ յիշատակող։
Կայ լաւութիւն Թ. կենաց զորս
ի կորուստ չեն հաշուեալ
(*Բալըք պիլմէզսէ խալըգ պիլիր սերեայէ սալ:*)
Թէ իմաստնոյ չէ սա յախորժ,
մտաց մանկանց սա բացող է
Ի գիտ ըստ այսց ո՛վ ոք մըտցէ՝
ինքն եւս զգիրսն յառաջ բերցէ
Թէ՛ չես սիրող որ ուսանիս
կամ չախորժիս իսկաբանիս,
Մի՛ մոռանար զնանրաջանս
զՆրեմիաս մտաց գիրիս։

*Երեմիայի այս Ոտանաւորովը կը վերջացնեմ Ծանօթագրութիւններս, երկիւղած յարգանք մը ընծայելով անոր յիշատակին, որ ունի իր անմահութեան էջերը Հայ Մատենագրական Պատմութեան մէջ:*

---

[1] *«Ժտել» = աղաչանօք խնդրել:*

ՎԵՐՋ

## ՅԱՒԵԼՈՒԱԾԱԿԱՆ ՄԱՍԵՐ

*Ծանօթագրութիւններուս իբրեւ շարայարութիւն, անհրաժեշտ կը համարիմ նշանակել կարգ մը կարեւոր տեղեկութիւններ, զորս ձեռք անցուցած եմ աշխատութեանս՝* «Հանդէս Ամսօրեայ»*ի մէջ լոյս տեսնալէն յետոյ :*

*Բայց նախ՝ Երեմիա Չէլէպիի երկու նամակները, Յառաջաբանիս մէջ յիշուած, զորս Երուսաղէմէն յղած է ինծ՝ ինչպէս յայտնած եմ արդէն, լուսարարապետ Գէորգ · Մեսրոպ Արքեպիսկոպոս Նշանեան : Ասոնք տարբեր են այն նամակէն՝ զոր Երեմիա իր մէկ աղջկան մահուանը առթիւ ուղղած է էջմիածին իւր դաւկին՝ Գրիգորիս վարդապետին (տե՛ս Հատոր Բ ·, էջ* 726—727) :

### ՆԱՄԱԿ ԵՐԵՄԻԱ ՉԷԼԷՊԻ ՔԷՕՄԻՒՐՃԵԱՆԻ ԻՒՐ ՈՐԴԻՈՅՆ ԳՐԻԳՈՐԻՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՄԱՀՈՒԱՆ ԱՌԹԻՒ

*«Սրբազան եւ երջանիկ . . . զփարեալ դառնալից ողբովք եւ կսկծագին հառաչմամբ, յորդ արտասուօք եւ կական աղէտիւ գրեմ զօթ վախճանի անդրանիկ իմոյ սիրեցելոյ՝ մանկամեռ եւ ճղակատար Տեառն Գրիգորիս վարդապետ կոչեցելոյ, զոր նախասահմա-*

նութեամբ խրով Ամենարարն ընծայեաց մեզ պատուօք, փառօք եւ ճոխութեամբ եւ այնքան եւս դարձեալ զգետնեալ գլորեաց ի հող գրաւելով, ուստի որ ետեղծն, եւ գրանականութեան հոգին, զոր շնորհօք զանազանիւք զարդարեալ փայլեցոյց, արդ է առ եւ յանմահ եւ յանդառնալին կեանսն վիճակեցոյց:

Այլ մեզ չուն ու չարէ եօքտըր. նի՞ չուն[1] եօք, զի եւ չատ իմաստունք խելօք մնացեր են մաթ եւ ի հիացումն պակուցման թաճուպաթ. տխու հարկի թէ լռութեամբ պատուեսցուք եւ սասացուք. պուստա պեօյլէ օլսուն: Թանրինըն սըըրնա էվլիա վէ էնպիա էրմէտի, պիզ խուստ օնլարըն պիր էտնա սէկպանի: Ցասաըըըս ո՞վ չինեաց իւր տուն եւ հանդեաւ սրտովն ի վերայ, Ադա՞մ, Սողոմո՞ն, Դաւի՞թ, Աղեքսա՞նդր, Կոստանդի՞ն, Տրդա՞տ եւ նմա՞նքն: Թէպէտ ի սոցանէ ոմանք կամակորք՝ յԱդամայ սերեալ ապստամբութիւնն առ մեզ՝ ապերախտ գտանելով առ Ստեղծողն, որպէս Սողոմոն եւ Աքաար եւ Սեդեկիա, Արշակ եւ Վարազդատ եւ նմանքն սոցուն: Բայց զի կրակն որ նոր լցաւ ի սիրտս ի նետէ բարկութենէ Բարձրելոյն՝ առաջի ծնողիս մահացուցեալ զորդիս եւ բորբոքումն սորա անշիջանելի մինչեւ յելս շնչոյս իմոյ, ըստ Յոբայ կողկողելով նարդենիս՝

---

[1] Աւելորդ կը համարիմ Թուրքերէն բառերն ու խօսքերը թարգմանել զի դժուար չէ անոնց նշանակութիւնը իմանալ:

կարօտիմ գերեզմանի եւ ոչ հասանիմ, տառապիմ աշխատել, եւ զի՞նչ գործեցից: Ցորն ունէր զլոյս նորոգման առողջութեան, տեսլով առ Ասպենիադն. կարող ես զիս յարուցանել՝ նոր մորթ ձգելով ի վերայ խոցոտեալ մարմնոյս, եւ այնպէս նորոգեցաւ ի մարմնի եւ ի թագաւորութեան իւրում բարձրացեալ՝ ստացաւ զորդիս եւ դստերս: Այլ ինձ զի՞նչ ասելի, զի հոգի որ ելանէ՝ այլ ոչ դառնայ, եւ Քրիստոս չեւ եւս է յաշխարհի նարդենիս, եթէ անկեալ յոտս նորա լամք եւ զնա լացուցանեմք՝ տանելով ի գերեզման, որպէս երբեմն ի վերայ Ղազարու՝ ասիցէ. Գրիգորի՛կ, արի ե՛կ արտաքս: Քանզի զրոհք ժողովոյն մեծ կոծ արարին որպէս ի վերայ անդրանկան մանկամեռի՝ ասելով. Արդ մեք զո՞րն լացցուք, զեղեա՞լն ի դագաղին՝ թէ զթալիթլեալ միջաբեկեալ ծնողն ի վերայ գլխին:

Պիր զէման սալընուպ ալէմ իչրէ մուհթէրէմ խալի տէսինլէր, չիմտի դարէ թօփրաքլէրտէ մէքեան թումուշ տէյու՝ մաթէմ օքուսունլէր, տօստլարի դարէ եասլէրէ կիրուպ՝ էֆսուս ու հա՛յֆ եազըք էվա՛հ տէյու աճըբընլէր: Պագիլէրըն եէրի կէնիշ օլտըղի իչուն՝ ալլար կիյինուպ, գընալանուպ, պաշլէրինէ ըէյհան թաքընուպ՝ հօրօզ թէփսընլէր: Ուլուլէրըն սաղի տըր՝ պու թութուն հէր օճաքտան թութէճէք. նէչէ՛ փատիշահ ճիհանկիրան ալէմփէնահլէրէ օղրատի, նէչէ՛ ագիդլէր, նազէնինլէր, խուպլէր, կիւզէլլէր

*պու փէրտէտէն կէչտիլէր: Իսքէնտէրտէն իլէրի, Օղոստոստան ուստուն, Տրդատտէն տիլավէր, Սուլէյմանտէն ալիմ, Եուսուֆտէն կիւզէլ օլմայաք: Մարմինն դառնայ ի հող եւ հողին...: Իմտի մալում քի՝ օլ ճէվհէրին սուի շաշասի, ճիլասի, հասիէթի ճանընըմըշ քի, օլ թաճուպաթլը լիսանի փաք, օլ հիյպէթլի միրի քէլամէթ, օլ հըքմէթ էլֆազի տուզ, օլ խպրէթ փասիհէթ խատիլլահ, օլ նէզաքէթ խպարէթ մահվ օլտի, կեօրունմէզ օլտի, իշիտիլմէզ օլտի, մունիր մունէվէր պէրաթի մում սօնտի, օլ լաթիֆ րէյհա վէրտի՝ խէնտանըըր սօլտի:*

*Նա ապառեցաւ ի կենցաղական զբաղմանց, արդ տեսէ՛ք զկսկիծ հօրն տառապելոյ. նա վճարեաց զպարտս մեռելութեան, այժմ լսեցէ՛ք զհուր ծնողին բորբոքման. նա փրկեցաւ ի սուտ եւ նանիր տաղտապանաց աշխարհիս, այժմ ողբացէ՛ք զգլուխ հօրն եղկելոյս»:*

ՆՈՐԻՆ ՎԱՍՆ ՄԱՀՈՒԱՆ ՈՐԴԻՈՑՆ

*«Սուրբ աջիդ ողջունիւ համբուրի յայտ լիցի, զի հարկեցար ի բան Առաքելոյն սրբոյ՝ վշտանալ ընդ վշտացեալս թղթիւ առ ի մխիթարել, որպէս եւ դոյն կոչեցարդ, որպէս եւ զայդ յԱրեւելից եւ յԱրեւմտականաց հասուցին, զորոց զբազմիցն ոչ բացի եւ ոչ ընթերցայ, զի գրեցան եւ քարոզեցան ի մէնջ ի չափ Յայսմաւուրքի գողեալ ի Պալըքլին անյագ, որ գիտէ զամենայն ի ծոց*

իւր դարձուցանել ի հող՝ ըստ անդրադարձ վճռի Արարչին ամենայնի՝ վասն ի ստուգանելոյ նախահօրն մեր առաջին մարդոյն: Եւ ես նպատակ նմա եւ նա՝ ինձ, որով եւ զմեզ եւս ի նոյն քարշեալ սպասէ անկարծ ժամու, ըստ Տեառն հրամանի եւ ըստ ասից Խորենացւոյն: Եւ զի յոյս տեսանելի չէ յոյս, ըստ քարոզութեան Առաքելոյն, ի հանդերձեալն յուսամք առ յոյն ամենեցուն խոստացեալ բարիսն, եւ այն՝ յաւիտենական, յորժամ նորոգեսցէ զհողացեալս ի փառս իւր, ըստ իւրաքանչիւր գործոց վարձս, եւ ըստ ուխտին՝ թէ յԱստուած եւ յիս հաւատացէք, ի տան հօր իմոյ օթեւանք բազումք են:

Եւ վերոյգրեալն Պալըքլի լցան լուրք իբրեւ ճեմարանի լսարանի, ուր ամբոխք զմեօք պատեալք՝ ոչ միայն ազգք մեր, ոչ միայն ի վերայ բարձանց վարդապետաց եւ կաթողիկոսին (Թորոս) գերեզմանի բարձրացան, այլ եւ ի ծառս ելին՝ ի լուր նորոգ բանից բողոքից, յԱղամայ սկսեալ՝ յԱբելէ, Յակոբայ, Հեղեայ, յԱբխօլոմէ, ի Բրիամոսէ, ի հնոց եւ ի նորոց՝ ճապաղեալ սփռեալ յունկն եւ ի սիրտ ժողովոյն: Մինչեւ ցայսօր ի մեծամեծ աւուրս, ըստ կարի դեգերեալ անձինս թալկացելոյ, երես ի քարշ զաւազանաւ եւ ծովով ժամանեալ անդ՝ ի վայրն ողբարանաց եւ աշխարանաց, զուժի եւ լալականաց: Արդ, չափեա զայս՝ թէ քանի՛ցս եթէ հոգի մեր չաղկապեալ իցէ ի մարմին

մեր՝ փութայ զխրոյ խղճն կատարել, որով եւ ինք իցէ բարք իւր եւ աջմտայ։ Եւ մեծութիւնդ եթէ մխիթարել կամիցիս զսիրելին քո՝ այս եւեթ սփոփանք ընտրեա՛, զոր եւ կարիցես եթէ կամիս։

Նախ զպատմագրին Աջպան Տիւանին, զի յանուն քո առաքեալ յիշատակն ի մէնջ պիտանին ծաղկաքաղեսցի եւ նորա եւս լիցի յիշատակ։ Լաւ մտածեա՛։ Եւ վասն մեծութեանդ ի Նահապետ կաթողիկոսն եւ յԱմթայ թղթեր գրեալ էին ի վերայ Սարու պատրիկիս[1]՝ ձեռամբ էքմէքճիօղլի խօճայ Ղազարին։ Նա մեզ ծանօթ գոլով, հարկեալ յինէն բան՝ արգիլեցի զթղթերն եւ ոչ ետու թոյլ յայտնել առ աղճատումն անուան մեծութեանդ ի լեզու եւ ի սիրտ զխտնոց եւ անզխտաց։ Եւ զայլն ինքեանք զխտասցեն, մեր կարն այսքան։ Եւ զայլ աՀվալ մեծութեանդ ծանուցանէ ծեր երէցն, որ եւ ծանօթացաւ վասն քո ԵՐԵՄԻԱՅԻՍ։

(Մատենադարան Երուսաղէմի, Ձեռ. 1058, Թղ. 37ր—39բ։)

[1] Մատթէոս Կեսարացի Սարը, որ 1692—1694 եղած է պատրիարք Կ. Պոլսի եւ 1694—1701 կաթողիկոս Սսոյ։

Գրիգորիս վարդապետ Բէօմիւրճեանի մահը տեղի ունեցած է 1692 տարւոյ երկրորդ կիսուն, ըստ Երուսաղէմի պատրիարք Մինաս Ամթեցւոյ Օրագրութեան Հետեւեալ Հատուածին.

«Նոյեմբեր ԻԳ. (ՌՃԽԱ = 1692) օրն չորեքշաբաթի, գիշերս քունս փախաւ, զի լուայ զպյրումն Ըստամպօլու Հրեշտակապետ եկեղեցյն եւ զմահ Բոմուրճի Գրիգոր վարդապետին»։

Այս առթիւ մէկ երկու ճշդումներ ալ:

1·

Ա. Հատորիս 151րդ էջին Ծանօթութեանս մէջ գրած եմ, թէ «Տէր Կոմիտասի թոռն էր՝ Կոզմաս Քէօմիւրճեան» (խալ. Carboniano), իսկ Բ. Հատորիս 593րդ էջին Ծանօթութեանս մէջ այս անձը կը նշանակեմ իբրեւ Տէր Կոմիտասի Որդին: Այս երկրորդ յիշատակութիւնս սխալ է. որովհետեւ Տէր Կոմիտաս Քահանայն երկարատեւ հալածանքի ու բանտարգելութեան մատնուելէ յետոյ, գլխատութեամբ կը նահատակուի 1707ին. ուստի տրամաբանական է ընդունիլ, թէ Կոզմաս Քէօմիւրճեան, որ 1794ին է գրած իր խալաբարբառ Պոլսական Տեղագրութիւնը, պէտք է Տէր Կոմիտասին զաւկին զաւակը ըլլայ:

2·

Բ. Հատորիս 501րդ էջին Ծանօթութեան 6րդ տողին՝ «Երուսաղէմի» բառիս քով մոռցուած է «Եսայի» անունին տպագրութիւնը:

3·

Դարձեալ՝ Բ. Հատորիս 539րդ էջին Ծանօթութեան 18րդ տողին «Եաւ—ղի»ն կարդալու է՝ «Ե·աւ—ելի» այսինքն՝ «հինգ (5) աւելի»:

4·

Օրմանեան Սրբազան իր Ազգապատումին Բ. Հատորին 2484րդ էջին մէջ Անտոն Զէլէպիի մասին գրած միջոցին, կը կարծէ թէ՝

*սա Երեմիա Չէլէպիի ըսած* «Անտոն Կեավուր»*ը չէ, բայց կը սխալի ըստ իս. որովհետեւ՝ կարելի չէր որ միեւնոյն ատեն միեւնոյն անունը կրող, երկու հարուստ Անտոն գոյութիւն ունեցած ըլլայ Կ. Պոլսոյ մէջ:*

## ԳԼՈՒԽ Է.

Տող 37: «Պէյխոզ» *գիւղին համար: Ծանօթ բանասէր Պ. Արշակ Ալպօյաճեան 1935 Մայիս 30 թուակիր՝ Եգիպտոսէն գրած մէկ նամակովը կ'իմացունէր ինծի, թէ ինքը Կ. Պոլսոյ Ազգ. Պատրիարքարանի Տոմարներուն մէջ կարդացած է, որ,* Պէյքօզի Եկեղեցին շինուիլ սկսած է 1833ին եւ նախ՝ «Ս. Աստուածածին» կոչումով, բայց 1834 Սեպտ. 16ին օծուած ատենը «Ս. Նիկողայոս» անունով է մկրտուած, եւ շինութեան գործին այ հսկած է Ճանիկ ամիրայ: *Ալպօյաճեան այս առթիւ հրատարակութիւն մ'ալ ունի եղեր Կ. Պոլսոյ* «Արեւելք» *թերթին 1932 տարւոյ 238րդ թիւին մէջ, որ կը ցաւիմ, աչքէս վրիպած ըլլալուն:*

*Անհաւանական չի կրնար ըլլալ այս տեղեկութիւնը, միայն թէ՝ ո՛չ Հ. Ղուկաս Ինճիճեան, ո՛չ ալ Սարգիս Դպիր Սարաֆ Յովհաննէսեան, որոնց առաջինը 1794ին է գրած իր* «Ամարանոց Բիւզանդեան» *գործը, եւ Երկրորդը 1800ին, իր* Կ. Պոլսոյ Տեղագրութիւնը, *բնա՛ւ յիշատակութիւն մը չեն ըրած այս մասին եւ Պէյքօզի Հայոց Եկեղեցին*

միշտ «Սուրբ Նիկողայոս» անունով կը ծանօթացունեն :

Այս տեղ հարկ կը համարիմ յաւելուլ, թէ Ազգային Սահմանադրութեան տարեկան Հանդէսներուն Պէյօղէն Ազգ. Հիւանդանոցի դէմի պարտէզը փոխադրելու ողորմելի գաղափարը, առաջին անգամ հրապարակ նետած է Կարապետ Իւթիւճեան 1864ին իր «Մասիս» լրագրին մէջ, գաղափար՝ որ իւր գործադրութիւնը դժբախտաբար ունեցաւ 1875ին, եւ պատճառ եղաւ, որ այդ ազգային փառաւոր Հանդէսը հետզհետէ կորսնցնէր իր շուքը, եւ մեռնելով մեռնէր ի սպառ, ինչպէս պատմած եմ այս Հատորիս 8րդ էջին վրայ :

Տող 74 : «Գանտիլլի»ի համար : Դարձեալ Արշակ Ալպօյաճեան ինձ կը գրէր, թէ՝ ինքը 1902 յուլիս 17/30ի Կ. Պոլսոյ «Մանզումէի էֆքեար» թերթին 385րդ թուով հրատարակած է յօդուած մը «Գանտիլլիի Ս. Առաքելոց Եկեղեցին» վերնագրով, որուն մէջ անոր Հիմնարկութեան թուականը ճշդելով՝ կը ջրէ Աւետիս Պէրպէրեանի ընդունած 1846 Սեպտ. 22ը եւ կը յայտնէ՝ թէ այդ եկեղեցին հաստատուած է 1841 թուին, եւ այս տեղեկութիւնը քաղած է եղեր եկեղեցւոյ մէջ պահուած խղաբերից Աւետարանի մը պահպանակին վրայ նշանակուած Արձանագրութենէն, որ է՝

ԱՐՁԱԹԱԳԱՏ ԱԻԵՏԱՐԱՆՍ ԵՂԵԻ ՅԻՇԱՏԱԿ
Ի ԽԱԹՈՒՆ ՄՕՐԷ ՄԵԼՔՈՆ ԱՂԱՅԻ ԽՕՆՋԷԿԻՒԼԵԱՆ
Ի ԴՌՒՌՆ ԱՌԱՔԵԼՈՑ ԵԿԵՂԵՑԻՆ ԽԱՆՏԻԼԼԻ ԳԻՒՂԻ
ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1841

*Նաեւ Արծաթեայ Սկիհի մը Յիշատակարանէն, որ կ'աւանդէ, թէ՝*

«Յամի Տեառն, 1841, Առաքելոց Եկեղեցւոյն Ս. Սկիհ ի նուէր Տառեան տոհմին Տիկին համեստ այն Իսկուհին հոգեսէր, տայ յիշատակ ննջեցելոյն. ո՛վ Տէր Յիսուս յիշող լեր, ծարաւ հոգիս մարմնով եւ արեամբ կերակրեսցես խաչեալ Տէր»:

*Այն կարեւոր տեղեկութիւններուն հետ, Ալպօյաճեան կը գրէր նաեւ թէ՝*

«Հայերը ըստ աւանդութեան 18րդ դարու վերջերէն սկսած՝ բնակութիւն ունեցած են Գանտիլլի. եւ թէ արդի Եկեղեցւոյն տեղին վրայ ժամանակաւ վրանաքակ սեղան մը գոյութիւն ունեցած է եղեր, առանց կայուն շէնքի»:

*Վերոյիշեալ երկու Յիշատակարաններու աւանդած 1841 թուականը, թերեւս կը պատկանի այս անկայուն մատուռին, որուն տեղ 1846ին Աշնանեան Պօղոս Ամիրային նախաձեռնութեամբը կը կառուցուի նոր մը, եւ այս շինութեան հրովարտակը յաջողած է եղեր ձեռք բերել Օտեան Պօղոս աղային, Հայր մեծանուն Օտեան Գրիգորի:*

*Ալպօյաճեան կը գրէ նաեւ թէ 1845ին Գանտիլլի ազգային Դպրոց մ'ալ ունեցած է,*

եւ թէ Ստեփաննոսեան անուն մարմին մ՚ալ կազմուած է անոր մատակարարութեանը հողատար, ինչպէս կը կարդանք արդէն Ս. Փրկչեան Ազգ. Հիւանդանոցի 1901ի Տարեցոյցին մէջ (էջ 231):

Գանտիլլիի Եկեղեցին վերատին կը նորոգուի 1893ին Սօղաճի Բարսեղ աղայի նախաձեռնութեամբ եւ կ՚օծուի նոյն տարուան Յունիսի 28ին:

Գանտիլլիի եկեղեցւոյն գլխաւոր բարերար եղած է (ինչպէս ես ալ յիշած եմ Հատորիս 13—14 էջերուն վրայ), Կ. Պոլսեցի Երեմիա Եպիսկոպոս մը, որ շատ մը զարդեր ու մասունքներ նուիրած է եկեղեցւոյն: Ալպօյաճեան ինձ ուղղած նամակին մէջ իր վերյիշեալ յօղուածէն կը հաղորդէր ուրիշ քաղուածներ՝ յայժ կարեւոր որոնք են հետեւեալները.

«1871 Դեկտեմբեր 29ին, Կոյս Եպրաքսէ Պետրոսեան իր Եղբօրը Յովսէփին հետ եկեղեցւոյն կը նուիրէ. 1. Արծաթեայ սկիհ մը: 2. Արծաթեայ պահարան մը եւ 3. Կիւլապտան–Պուհուրտան (Խնկաման) մը, որոնց մասին գրուած է եղեր սա Յիշատակութիւնը.

«Յիշատակ է հանգուցեալ Եպրաքսէ խաթունին արծաթեայ սկիհս խանտիլլիի Երկոտասան Առաքելոց եկեղեցւոյն եւ կիշառքն 3 հարիւր երեսուն երկու տիրհէմ. 1871 Դեկտ. 29»:

Այս երկու նուիրատուներուն մարմինները կը հանգչին եղեր նոյն գիւղին Գերեզմա–

Նատունը, ունենալով իրենց առանձին Տա– պանագիրները մէկ քարի վրայ փորագրուած, զորս Ալպօյաճեան ինձ հաճած է հաղորդել․ եւ են՝

1․

ՏԱՊԱՆ ՀԱՆԳՍՏԵԱՆ
ՅՈՎՍԷՓԱՅ ՊԵՏՐՈՍԵԱՆ

*Աշխարհ եկայ քեզի պէս*
*Գիշեր ցորեկ հողնեցայ*
*Եօթնասուն հինգ տարի*
*Ջուր ունայն կեանք ունեցայ*
*Խորշակ զարկաւ գլխ խամրեց*
*Վարդի նման թօշնեցայ․*
*Բայց Աստուծոյ հրամանն էր*
*Նախ հող էի եւ հող դարձայ*

1858 *Հոկտ․* 10։

2․

ՏԱՊԱՆ ՀԱՆԳՍՏԵԱՆ ԻՓՐԱՔՍԵԱՅ

*Իփրաքսէ քոյր Յովսէփայ*
*Թշուառ արգանդէս ծնայ*
*Այս աշխարհ ոչինչ գտայ*
*Կեանքիս մէջ կոյս ապրեցայ*
*Ողջ գալով պատրաստեցի*
*Ինծի հանգստեան տեղի*
*Յիշէ դուն մարդոյս վախճան*
*Ուշ թէ կանուխ գերեզման*

18․․․․․

*Կ՚երեւի տանց անունով նուէր եղած եկեղեցական սպասները Իփրաքսէ կոյսին մա– հէն յետոյ փոխադրած են Եկեղեցին, որով կ՚ենթադրեմ թէ Իփրաքսէի մահը տեղի ու– նեցած ըլլալու է* 1871—1872*ի միջոցին։*

*

Անխոնջ գրիչ մ՚է եւ ներհուն պատմագէտ Արշակ Ալպօյաճեան, որուն տուած այն տեղեկութիւններուն համար իմ խորին շնորհակալութիւններս կը յայտնեմ իր անմոռաց բարեկամութեան քաղցր յիշատակը սրտիս մէջ ունենալով միշտ :

Տող 89 եւ 90 : «Գուզկունճուքի» առթիւ : Հատորիս 14րդ էջին վրայ Սարգիս Դպիր Սարաֆ–Յովհաննէսեանի գործէն քաղած տողերուս մէջ կը յիշուի ճարտարապետ Սէրգիս խալֆա մը, որ Գուզկունճուքի մէջ նկարակերտ կերպասներու խիստ անուանի գործարան մը ունեցած է . այս Սարգիս խալֆայի մասին, Պ. Պիմէն Զարդարեան Կ. Պոլսէն 28 մայիս 1935 թուակիր նամակ մը ինձ ուղղելով, կը տեղեկացունէր՝ թէ, անոր հօրը անունն է՝ Մահտեսի Յովհաննէս, եւ մօրը անունը Մահտեսի Հեղինէ («Պատմ. Երուսաղէմի», 1931, էջ 1223 եւ 1733) : Սարգիս խալֆայ ունեցած է եղեր որդի մը Աբրահամ անուն, մեռած 1747ին եւ թաղուած Իւսկիւտարի Գերեզմանատունը :

Երկրորդ զաւակ մ՚ալ ունեցած է Գէորգ անունով որու որդին՝ Պասմաճի Յովհաննէս, շարունակած է իր Հօրը հետ, Մեծ Հօրը Գուզկունճուքի մէջ հաստատած «Կերպասի նկարակերտ գործարանը» երբ զայն Իւսկիւտար կը փոխադրեն, ինչպէս գրած է Սարգիս Դպիր Սարաֆ Յովհաննէսեան (տես էջ 15 այս Հատորիս) :

Պ. Պիմէն Զարդարեանի այն նամակէն

*ուրախութեամբ կ՚իմանայի նաեւ, թէ ինքը սկսած է* «Հին եւ նոր Հայ ճարտարապետ»*ներու կենսագրութիւնը պատրաստել: Ահա աշխատութիւն մը որ Հայ բանասիրական պատմութեան պիտի ընծայէ խիստ կարեւոր էջեր:*

Տող 133—160: «Իւսկիւտարի Ս. Կարապետ Եկեղեցւոյն առթիւ»: *Հ. Ներսէս Ակինեան 3 յուլիս 1937ի մէկ նամակովը Ս. Կարապետ Եկեղեցւոյն շինութեանը մասին կը հաղորդէր ինձ խիստ կարեւոր տեղեկութիւն մը, զոր քաղած է Սիւրմէեան Արտաւազդ Արքեպիսկոպոսին հրատարակած* (Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Քառասուն Մանկանց Եկեղեցւոյ Հալէպի) *կարեւոր գործին* 194 *էջէն, եւ որ է հետեւեալը.*

«Գրեցաւ սուրբ Աղօթամատոյցս ի թուականիս հայկազան Տումարի ՌԽԲ (= 1042) Փետրվար ամսոյ Բ. օրն ուրբաթ առաջաւորաց բարեկենդանին:

Բայց գրեցաւ ձեռամբ... ապիկար Տօնէր... սարկաւագիս Թօխաթցոյ, ի մայրաքաղաքն ըստամբօլու, ի դէմն ի ծովափն ի յՈւսկուտարն, ի գաւառն, նորաշէն եկեղեցւոյն Սուրբ Կարապետին եւ Սուրբ Ստեփաննոսի նախավկային... Այլ եւ յիշեցէք զստացող Սուրբ Աղօթամատուցիս զԿաամացի պարոն Սարգիսն, որ եդ յիշատակ ի դուռն Սուրբ Ստեփաննոսի նախավկային»:

*Ուստի՝ յայտնի կ՚ըլլայ այս Յիշատակարանին շնորհիւ, թէ* Սուրբ Կարապետի *Եկեղեցւոյն շինութիւնը* 1593 *թուականէն քիչ ա-*

*ռաջ տեղի ունեցած ըլլալու է. եւ թէ՝ Զաքարիա պատրիարք վանեցին անոր երկրորդ վերաշինողն եղած է 1617ին :*

*Սոյն եկեղեցին 1727ին Կոլոտ Յովհաննէս Պատրիարք Գ. անգամ վերաշինել կու տայ, եւ այս առթիւ հարկ կը համարիմ յիշատակել հոս Հաննէ վարդապետին գրած հետեւեալ տողերը, զորս նախապէս մոռցած էի :*

«Եւ ի սոյն թուականութեանս (1727), քրտնաջան եւ յոլովերախտ վարդապետն Ազգիս մերոյ Տէր Յոհաննէս Աստուածաբան վարդապետն, կոչեաց առ ինքն զմահտեսի Սարգիս խալփայն, զճարտարապետն արքունական շինուց, զի զո՛նէ յարքունուստ զհրամանն իմն հանցէ վասն Սրբոյ Կարապետի Եկեղեցւոյն որ հնացեալ կայր յՈւսկուտար, որ է հանդէպ Կ. Պոլսոյ ի յարեւելեան կողմն... :

Զկնի երից աւուրց՝ ել հրամանն արքունական, ուստի սկսաւ վարդապետն շինել եւ ի հիմանէ նորոգել զԵկեղեցին այն, եւ Աստուածով կատարեաց զնա զարմանաքանչ շինուածովք ներքոյ եւ արտաքոյ, որոյ ձեռակերպօղ ճարտարապետն էր նոյն ինքն Սարգիս խալփայն, զոր Աստուածն համայնից, զինքն եւ զորդիս իւր օրհնեսցէ[1]» :

*Քանի՛ մեծ պատիւ են սոյն տողերը արքունի ճարտարապետ* Սարգիս խալփային, *որ*

---

[1] Գիրք Պատմութեան Սրբոյ եւ մեծի քաղաքիս Աստուծոյ Երուսաղեմիս: *Տպագր. Կ. Պոլիս* 1734, *էջ* 164: *Շարադրեալ յումեմնէ Յովհաննէս Հաննայ վերաձայնեալ ծառայէ :*

անմահ անուն թողած է պանծալի յիշատակներով, ինչպէս տեսանք Ծանօթագրութիւններուս ընթացքին:

Հաննէ (Յովհաննէս) վարդապետ իւր աշխատութիւնը պատրաստած է 1727ին ի Ս. Երուսաղէմ, բայց անոր տպագրութիւնը տեղի ունեցած է իր մահէն յետոյ 1734ին Կ. Պոլսոյ մէջ: Երկրորդ տպագրութիւն մը եւս ունեցած է այն 1767ին եւ Երրորդ մ'ալ 1782ին՝ դարձեալ Կ. Պոլիս:

Սոյն գրութեան մէջ յիշուած Սարգիս խալփայն Գուզկունճուքինն է, Արքունի ճարտարապետ տիտղոս ունեցողը, որ ինչպէս գրած եմ արդէն (էջ 16), եւ դարձեալ կը կրկնեմ, շինած է 1719ին Գում-Գաբուի Մայր եկեղեցին: 1727ին Իւսկիւտարի Սուրբ Կարապետը, եւ 1733ին ալ Ղալաթիոյ Սուրբ Լուսաւորիչը:

Այս Սարգիս Խալֆայն՝ ինչպէս նշանակած եմ Հատորիս 152—153 էջերուն վրայ, Իւսկիւտարի Գերեզմանատունին մէջ փորել տուած է Ջրհոր մը, որուն արձանագրութեան թուականն է ՌՃԻԸ (խմա՛ 1728), ըստ այսմ՝ սխալ է Տէր Հմայեակ Էքսէրճեանի այն վարկածը (էջ 76. Յոբելեան Իւսկ. Ս. Խաչ Եկեղեցւոյ) թէ՝ այս Սարգիս խալփայն Ագուլեցի էր, եւ թէ՝ ջրհորը կը կրէ 1827 թուականը: Սարգիս Խալֆայն Կեսարացի էր, նաեւ Հայրը Յովհաննէս, ինչպէս կ'աւանդէ Ջրհորին Արձանագրութիւնը (էջ Հատորիս 153). եւ իմ «Հայ բժշկական Արձանագրաբանութիւն»ը, էջ 52:

Ս. Խաչի վարժարանին համար։ Այնիւ բարեկամս գրագէտ Պրն. Արամ Անտոնեան ինծ ցոյց տուաւ իր քով եղած նամակ մը, որ կը յայտնէ թէ 1896ին Իւսկիւտարի Սելամիէ թաղին մէջ հաստատուած է «Արարատեան Մեղուաց» անուն ընկերութիւն մը, որուն նպատակը, Ս. Խաչի վարժարանին յառաջադիմութեամբը զբաղիլ է։

Այս նամակին ներքեւը դրուած է բաւական մեծկակ կնիք մը, երեք շրջանակով որուն մէջտեղինը կը ներկայացնէ խոշոր Ժ. գիրը, որուն նշանակութիւնը չի կրցանք գիտնալ Անտոնեանի հետ[1]։

Ժ.ին շուրջի շրջանակին մէջ կը կարդանք «Ընկերութիւն Արարատեան մեղուաց» արձանագրութիւնը, իսկ բոլորովին դուրսը շուրջանակի՝ «Խոհեմութիւն Սէր Միութեան խոնարհութիւն» բառերը։

Բաւական հետաքրքրական երեւցան ինծ այս կնիքը, ինչպէս նաեւ այդ առթիւ գրուած Յակոբ Պատրիարքին նամակը. որոնց համար իմ շնորհակալութիւնս կը յայտնեմ հոս Արամ Անտոնեանի։

Ամենապատիւ բարձր Սրբազան Տ. Յակոբ Արքեպիսկոպոս եւ Պատրիարք Տէր մեր վեհափառ։

Ձեր Մեծութեան գրած նամակը ընդունեցինք, որն որ պատուելի Գրիգոր Վարժապետին անելիքին համար հոգալ կը պատուիրէ։

Ձեր Մեծութիւնը գիտէ որ այս ընկերութեանս

---

[1] Հաւանօրէն իմանալու է ԺՐԱՋԱՆՈՒԹԻՒՆ, ինչպէս կը համարի Հ. Ն. Ակինեան։

*տուաջին պայմաններէն մէկն էր Սր. Խաչի Դպրատան հին անհելիքին ու տալիքին չի պատասխանէ: Բայց այս անգամ Ձեր Մեծութեան յատուկ պատուէրին հնազանդելու պարտաւորութիւննիս գիտնալով, մեր կարեացը չափ եւ աշխատութեամբ՝ նամակիս մէջի պարունակած ցուցակը կրցանք հաստատել. զորն որ Ձեր վեհափառութեան կը ներկայացընեմք: Այս ցուցակին տուողութիւնը՝ մեք Արարատեան Մեղուաց ընկերութեան անդամք եւ Թաղիս զանուող Ազգայք եւ Եկեղեցւոյ աէֆթէրներն ալ կը վկայեն. բայց այն առնելիքները առնուլ եւ պատուելին տալիքը տալը Ձեր Մեծութեան մարդասիրական Տնօրէնութեան կը կարօտի:*

*Մնամք Ձերդ Սրբազնութեան*
*ծառայք ընկերութեանս ժողովականք:*

*Ի 22 Յունուարի 1856,*
*յԻւսքիւտար:*




*Արտաքին երկու օղակները սեւ յատակով են, գիրերը եւ աստղերը սպիտակ: Մէջտեղի շրջանակը սպիտակ յատակ ունի եւ լոկ Ժ. տառը սեւ է:*

*Բնական մեծութեամբ:*

Ա. ԱՆՏՈՆԵԱՆ

*Հատորիս 142րդ էջին վրայ Իւսկիւտարի Գերեզմանատունին յիշատակութիւնը ըրած պահուս, գրած եմ թէ՝* «Կրնանք աներկբայ կերպով անոր սկիզբը 1615—1620 թուականներուն մէջ ընդունիլ», *հարկ կ'ըլլայ այժմ այս թուականները փոփոխել ու աւելի հնացունել, համաձայն* Տօներ Սարկաւագին *ընդօրինակած* «Ժամագիրք»*ին ցոյց տուած թուականին՝ որ է 1593 ինչպէս յիշեցի վերեւ:*

*Այս Գերեզմանատունին համար ըսած եմ (էջ 158), թէ մեր պատանեկութեան ժամանակ Դասարան մը ըրած էինք մեզի եւ երեկոյեան արձակուրդէն յետոյ խմբովին կ'երթայինք հոն՝ կարդալ ուշի ուշով ու ընդօրինակել տապանագիրներ, ոտանաւոր գրելու վարժութեան համար, որովհետեւ այդ Գերեզմանատունը շա՛տ հարուստ էր այդ մասին:*

*Այն ատենները գերեզմանատան տապանագիրներուն կարգին ես հանդիպած էի, կիսով հողածածուկ փոքրիկ քարի մը, որուն ճակատը փորագրուած էր* «Պալըքճը Մուսիկ» (Ձկնորս կամ Ձկնավաճառ Մուսիկ) *անունը եւ ներքեւը հայատառ Թուրքերէնով հետեւեալ չորս տողերը.*

*Բի՛մաւէ տէ՛մէսին քի պէն իմ*
*Պէն սէօյլէտիմ քի պէն իմ*
*Հէր քիմ քի տէրսէ քի պէն իմ*
*Օլուր նիճէ՛քի պէն իմ:*

1841:

Շա՜տ իմաստալից մանաւանդ խրատական ինձ երեւցած էին սոյն տողերը, որոնք հպարտութեան, գոռոզութեան դէմ գեղեցիկ քարոզակ էին՝ այսինքն.

Ո՛չ ոք չ՛ասէ թէ ես՝ «ԵՍ ԵՄ»
Ես ասացի թէ ես՝ «ԵՍ ԵՄ»
Ո՛վ որ ասէ, թէ ես՝ «ԵՍ ԵՄ»
Կ՚ըլլայ ա՛յնպէս ինչպէս ԵՍ ԵՄ:

«Ես եմ»ը հոս, անձնագովութիւն կը նշանակէ եւ համաձայն է Սաղմոսին այն նշանաւոր խօսքին՝ թէ «Տեսի զմեծատունն իբրեւ զմայրսն Լիբանանու ամբարձեալ. անցի ընդ երէկս եւ ահա ոչ եւս էր»:

*

Ես սկսայ ընդօրինակել «Պալըքճը Մօսիկին» այս յոյժ գեղեցիկ տապանագիրը. գիրերը ոտից կոխան եղած գրեթէ աւրուած էին, բայց կարողացայ ամբողջովին կարդալ եւ միտքս կը պահեմ ցարդ: Ընդօրինակած միջոցիս ծերուկ մարդ մը եկաւ քովս. «ի՞նչ կը գրես՝ տղաս», ըսաւ. «սա տապանագիրը կ՚ընդօրինակեմ», ըսի. «գիտե՞ս թէ ո՞վ էր տակը քնացողը», հարցուց. «ո՛չ» պատասխանեցի. «ըսեմ քեզի միտքդ պահէ՛» կրկնեց: «Պալըքճը Մօսիկը, Իւսկիւտարի ամենէն զօրաւոր եւ քաջ տղան էր, 30 տարեկան չի կար երբ մեռաւ, քարը ուտէր կը մարսէր, բայց շա՜տ կը խմէր օղի, ‘ես չեմ մեռնիր,, ‘չի պիտի մեռնիմ,, կ՚ըսէր, եւ օրին մէկը ճանչ

մը ճիտը խածաւ ու հինգ–վեց օրուան մէջ մեռաւ. ընկերներն այս քարը դրին վրան»։

Օրեր յետոյ երբ սոյն Գերեզմանատան մէջ կը պտտկէի, պատահեցայ ուրիշ Տապանաքարի մը աւելի հին, որ կը կրէր վերոգրեալ նոյն վերտառութիւնը։ Եւ երբ Հ. Ղ. Ալիշան իւր «Սիսական»ը հրատարակեց, անոր 474րդ էջին վրայ տեսայ՝ Տապանագիր մը, որ վերյիշածիս գրեթէ նման էր փոքր ինչ տարբերութեամբ, զոր կը նշանակեմ քիչ յետոյ։

Ըստ այսմ յայտնի կ'ըլլայ, թէ բաւական հին առենի հեղինակութիւն մ'է այս Տապանագիրը եւ շատերու կողմէ գործածուած իր գեղեցիկ նշանակութեանը համար։

Բերա–Շիշլիի Ազգային Գերեզմանատունին մէջ ալ տեսած եմ նոր շիրիմ մը, որուն վրայ «Պալըքճը Մօսիկ»ին Տապանագրին Հայերէնը փորագրուած է, ինչպէս նշանակած եմ վերեւ։

*

Ալիշանի յիշատակածը կը վերաբերի Պետրոս Ոսկանեան մեծահարուստ բարերարի մը որ Մատրասի մէջ մեռած է ԺԸ. դարուն, եւ որու մասին Սիսականի Հեղինակը կը գրէ հետեւեալը (էջ 474).

«Մխս ես Պետրոս մականուն Ոսկան՝ ազգաւ եւ խորագիտագոյն ըստ աշխարհի, նշանաւոր եղեւ փարթամութեամբ եւ մեծագործութեամբ ի Հնդկաստան, ի կէս ԺԸ. դարու վախճանեալ ի Մատրաս, այն՝ որ արկ անդանօր կամուրջ ի վերայ գետոյն, եւ զ133 ա–

*տրձանեայ քարեղէն սանդուղսն չիննայ ի Մամլան գեղջ։ Սա չատ ի մեծէ գումարէ ստացուածոցն՝ կտակեաց 60·000 ռուփի կաթուղիկէին Ս. Պետրոսի Հռովմայ, նոյնքան եւ էջմիածնի. 50·000 Երուսաղէմի Ս. Փրկչին, 30·000 Մշոյ Ս. Կարապետին, այլ եւ՝ 30·000 Մէքքէի մոլիմանաց, եւ ի հարցանել խոստովանահօրն եթէ ընդէ՞ր առնես զայդ՝ վասն այլադենիցն. ասաց.* ՙԵս այդ (գերեզմանից) կռնըկով միլիոն մի վաստըկեր եմ, թող այս ալ անոր,․ *եւ ի վերայ տապանին եա արձանագրել այսպէս, ի գկծանս նախանձորդաց իւրոց.*

*Ես կ'ասէի՝ Ես եմ եմ, դու ալ կ'ասես՝ Ես եմ.*
*Արա՛ ընդ որ Ես եմ, դու ալ կ'ըլնաս զոր Ես եմ»։*

*Այս Անձի մասին ես ալ գրած եմ, իմ* «Հայ բժշկական Արձանագրաբանութիւն» *անուն աշխատութեանս մէջ (Վենետիկ* 1931, *էջ* 57—61) *կարեւոր տեղեկութիւններ քաղելով, Կալկաթայի Հայ եկեղեցւոյն Քահանայ՝ Տէր Գարեգին Յ. Կիրակոսեանի* «Տաթեւ» *Տարեցոյցի* 1928*ի Հատորին մէջ ըրած Հրատարակութիւնէն։ Գեղեցիկ է այն՝ իր կարեւոր նշանակութեամբը։*

*Երկրորդ Հատորիս* 816—817 *էջերուն վրայ Մադաքիա Դպիր ճէվահիրճեանի Օրագրութենէն քաղածս նահատակներու ցուցակին վրայ կարեւոր կը համարիմ յաւելուլ եւ հետեւեալները։*

1. *Երուսաղէմի* «Սիոն» *ամսագրի* 1934 *Ապրիլի թիւին մէջ (էջ* 122—123) *Մեսրոպ Արք. Նշանեան՝ Մինաս Ամդեցի պատրիարքին ինքնագիր ու ձեռագիր Օրագրութենէն քաղելով կը յիշատակէ, թէ* «Գրիգոր Կանցի նահատակը Կարնոյ կան գիւղէն էր, 20 տա–

րեկան, որ հաւատքի համար Կ. Պոլսոյ մէջ կը գլխատուի 1682 Մայիս 19ին: Հետեւեալ օրը՝ Մայիս 20ին Պետրոս վարդապետ 30 դրուշ տալով Հասասպաշիին (Դահիճ) կը յաջողի ծովը նետելէն փրկել նահատակին մարմինը, զոր կը տանի կը թաղէ Պալըքլը, իսկ անոր Գլուխը Մինաս Ամդեցին կ'առնէ ու Սամաթիոյ Ս. Գէորգ եկեղեցիին աջակողմեան խորանին սեղանին ներքեւ իր ձեռքով խորշ մը փորելով յատուկ արկղի մը մէջ զայն հոն կը թաղէ»:

*Սամաթիոյ եկեղեցիին պատմութեանը համար յոյժ կարեւոր է Մինաս Ամդեցիի այս յուշագրութիւնը: Այս նահատակի մասին Հրաչեայ Աճառեան ալ գրած է բայց ոչ՝ Ամդեցիի պէս («Հայոց նոր վկայներ», Բ. Հատոր, էջ 174). ինչպէս նաեւ Մկրտիչ Արք. Աղաւնունի իր* «Միաբանք եւ այցելուք Ս. Երուսաղէմի» *աշխատութեանը մէջ (էջ 286)*:

2. *Սարգիս Դպիր Սարաֆ-Յովհաննէսեան ալ կը յիշատակէ նահատակներ, գրելով.*

1. «Մալղարացի Աստուածատուրն նահատակեցաւ Հայոց թուին ՌՃԾԹ յունվար Ժ. Երեքշաբթի (*այսինքն* 1159 + 551 = 1710), որոյ զպատմութիւնն գրեաց Տիրացու Պաղտասարն ճառապէս եւ երկար զովք ասաց վերան՝ չափեալ ոտիւք»:

2. «Մահտեսի Եաղուպ ամիրային խղճալի մահն, Հայոց թուին ՌՄԱ յուլիս 9 (*որ է* 1201 + 551 = 1752)»:

*

Գատրգիւղի Ծանօթագրութիւններուս կարգին հարկ է յաւելուլ, թէ այդ գիւղին մէջ կը բնակէր նաեւ երեւելի օրէնսգէտ եւ Թուրք պետական բարձրաստիճան պաշտօնեայ Շահպազ Կարապետ Էֆէնտին, որ ամուսնացած էր Նուսուֆեաններու աղջկան հետ եւ ունէր զաւակներ :

Տիկին Շահպազ եսամոլ, ինքնահաւան, մանաւանդ իր մայրական պարտականութիւններուն մէջ յոյժ թերացող, կ'ամնէ կը քալէ օրին մէկը եւ կը քաշուի ծնողացը քով : Ամուսինը շատ կ'աշխատի կարգի բերել կինը, բայց չի յաջողիր, որով ճարահատ կը ստիպուի դիմել օրուան Պատրիարք՝ Յարութիւն Արք. Վեհապետեանի, եւ պահանջել ամուսնալուծում, որ տակաւին արտօնուած չէր էջմիածնի կաթողիկոսին կողմէ :

Յարութիւն Պատրիարք իր բնածին խիստ բնաւորութեամբը «ո՛չ, ո՛չ, չըլլար» կը պատասխանէ :

Շահպազ Կարապետ կը պնդէ, Պատրիարքն ալ կը պնդէ ա՛յն աստիճան որ խնդիրը երկուքին միջեւ կռուի ձեւ կ'առնէ :

Շահպազ Կարապետ դուրս կ'ելլայ Պատրիարքին քովէն, ըսելով որ չի կրնար իր զաւակները անխնամ մեծցունել, ուստի պիտի երթայ Թոյլատու ուրիշ կրօնքի մը դիմել վերամուսնութեան համար : Այս խօսքին վրայ Յարութիւն Պատրիարք կրակ կը կտրի, ու նոյն շաբթուան կիրակի օրը հրաման կ'ար–

ձակէ բոլոր եկեղեցիները ու հրապարակաւ բանադրել կու տայ Կարապետ Շահպազը :

Կարապետ Շահպազ խորապէս ազդուած ազգային այս անլուր եւ խայտառակ որոշումէն (որուն գլխաւոր պատճառը եւ թելադիրը օրուան քաղաքական ժողովին Ատենապետը եղած է կ'ըսեն), կ'երթայ կը Թրքանայ եւ կոչուի Ալի Շահպազ :

Այս յիմարական արարքը տեղի ունեցած է 1887ին, եւ Ազգը Կարապետ Շահպազով կորսնցուցած է մեծ անձ մը, որ (արդար ըլլալու համար պէտք է խոստովանիլ թէ) մինչեւ վերջը Հայ մնաց, եւ մինչ ուրիշ Հայեր 1895 եւ 1896 Հայկական աղէտներու ժամանակ ունեցան շատ վատ, կեղտոտ ընթացքներ, Ալի Շահպազ մնաց թունդ հայասէր եւ ձեռքի տակէ ալ օգուտներ ունեցաւ Հայաջարդը կասեցնելու համար :

Կարապետ Շահպազ Հօրեղբայրն էր՝ մեր գրագիտուհիներէն Տիկին Զարուհի Գահրիի : Աշակերտ եղած է Փարիզի Հայկազեան վարժարանին :

*

Ծանօթագրութիւններուս վերջակէտին հասած կը ստիպուիմ ներողութիւն խնդրել, այն յարգոյ Հեղինակներէն, որոնք իրենց Յոբելինական Երկասիրութիւններուն մէջ Ծանօթագրութիւններէս մասեր առած ու յիշած են եւ ես Յառաջաբանիս մէջ անոնց

*Հրատարակութիւնները չեմ կրցած նշանակել, որովհետեւ չունէի զանոնք:*

*Անոնք են՝ բացի արդէն յիշածներէս.*

1· Une page tragique de l’Histoire religieuse du Levant. Par le Père H. Riondel, Paris 1929.

2· 90ամեայ Յոբելինական Յիշատակարան Պաքըր Քէօյի Ս. Աստուածածին Եկեղեցւոյ եւ Տատեան վարժարան: *Գրեց Պետրոս Կարապետեան Կ. Պոլիս* 1934:

3· Հարիւրամեայ Յոբելեան Մայր Եկեղեցւոյ: *Գրեց Յակոբ Վարժապետեան, Կ. Պոլիս* 1938:

4· Յիշատակարան Հարիւրամեայ Յոբելեանի Պօղոսեան–Վառվառեան վարժարանի Գում–Գաբուի: *Պետրոս Կարապետեան*, 1933:

5· 120ամեայ Յոբելեան Ս. Յովհաննէս Եկեղեցւոյ Նարլը–Գաբուի: *Գրեց Արիստակէս Քահանայ Հիսարլեան, Կ. Պոլիս* 1929:

6· «Հարիւրամեայ Յոբելեան Պէզճեան Մայր Վարժարանի»: *Խմբագրեց Թ. Ազատեան, Կ. Պոլիս* 1930:

*Իբրեւ վերջաբան այս երկարաբան Ծանօթագրութիւններուս, պէտք կը զգամ յայտարարել թէ՝ երբ աշխատութեանս Ա. Հատորը լոյս տեսաւ* 1913*ին, փութացի՝ Պարոն Առաքել Սարուխան Բարեկամիս խորհուրդովը, զայն ներկայացնել Թիֆլիսի Ղուկասեան Մրցանակին, եւ առ այս՝ հինգ օրինակ յղեցի Թիֆլիսի Առաջնորդ Մեսրոպ Արքե–*

պիսկոպոսին[3] որ իր 12 Մայիս 1913 թուական նամակովը կը յայտնէր թէ զայն պիտի ներկայացունէ Մրցանակի Յանձնաժողովին։ Սակայն վերահաս դէպքեր արգելք եղան սոյն մրցանակաբաշխութեան։

Նոյն ատեն գործս ներկայացուցի նաեւ Կ. Պոլսոյ Իզմիրեանց Մրցանակի Յանձնաժողովին, որ զայն յանձնած էր Գէորգ Ասլանեանի քննութեան։ Մրցանաբաշխութիւնը տեղի չունեցաւ սակայն, ընդհանուր պատերազմի պատճառաւ։

---

[3] Մեսրոպ Արք. տակաւին Վարդապետ, Սաթունեան Գարեգին Արքեպիսկոպոս եւ Աշոտ Եպիսկոպոս ու Բարգէն վարդապետ 1909ին եկան Պոլիս իբրեւ պատգամաւոր՝ Մատթէոս Կաթողիկոս Իզմիրլեանը էջմիածին առաջնորդելու, եւ չորսն ալ քանիցս հիւր եղան ինձ մօտ։



# ՑԱՆԿ ԱՆՈՒԱՆՑ

